# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10**

ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ

# ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական ղեկավարությունը անհրաժեշտ է համարում սովետական մարդկանց, մյուս ժողովուրդների և բոլոր նրանց, ովքեր պատասխանատու են պետությունների քաղաքականության սահմանման համար, ի գիտություն հայտնել միջազգային գործերում ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմի վարած կուրսի իր գնահատականը:

Եթե կարճ ասենք, ապա դա միլիտարիստական կուրս է, որը լրջորեն սպառնում է խաղաղությանը: Դրա էությունն է՝ հաշվի չառնելով մյուս պետությունների ու ժողովուրդների շահերը, փորձել Ամերիկայի Միացյալ Նահանգների համար աշխարհում ապահովել գերիշխող դիրքեր:

Այդ իսկ նպատակին են ենթարկված ԱՄՆ-ի ռազմական պոտենցիալի չտեսնված մեծացումը, զենքի բոլոր տեսակների՝ միջուկային, քիմիական, սովորական զենքերի արտադրության լայնամասշտաբ ծրագրերը: ԱՄՆ-ը պլանավորում է սպառազինությունների անզուսպ մրցավազքը այժմ տարածել նաև տիեզերքում:

Ամեն կարգի մտացածին պատրվակներով ընդլայնվում է ամերիկյան ռազմական ներկայությունը ԱՄՆ-ի տերիտորիայից հազարավոր կիլոմետրերով հեռու շրջաններում: Պլացդարմներ են ստեղծվում զինված ուժի միջոցով ուրիշ պետությունների գործերին ուղղակի միջամտելու, Վաշինգտոնի թելադրանքը մերժող ամեն մի երկրի դեմ ամերիկյան զենքն օգտագործելու համար: Դրա հետևանքով աճել է լարվածությունը աշխարհի բոլոր շրջաններում՝ Եվրոպայում, Ասիայում, Աֆրիկայում, Մերձավոր Արևելքում, Կենտրոնական Ամերիկայում:

Վաշինգտոնի այս բոլոր վտանգավոր պլանների իրականացման մեջ ավելի ու ավելի մեծ չափով են ներքաշվում ՆԱՏՕ-ի մյուս երկրները: Ավելին, ջանքեր են թափվում վերածնելու ճապոնական միլիտարիզմը և այն միացնելու այդ բլոկի ռազմաքաղաքական մեքենային: Այդ բանն անելով՝ ջանում են մարդկանց ստիպել մոռանալու անցյալի դասերը:

Ժողովուրդներն այս կամ այն կառավարության քաղաքականության մասին դատում են նախ և առաջ ըստ նրա գործողությունների: Ուստի, երբ ԱՄՆ-ի պրեզիդենտը ՄԱԿ-ի ամբիոնից վերամբարձորեն հայտարարում է խաղաղության, ժողովուրդների ինքնորոշման ու սուվերենության գործին նվիրվածության մասին, ապա այդ դեկլարատիվ հայտարարությունները ոչ ոքի չեն կարող համոզել:

Եթե նույնիսկ ոմանք պատրանքներ են տածել ներկայիս ամերիկյան վարչակազմի քաղաքականության դրական էվոլյուցիայի հնարավորության առթիվ, ապա վերջին ժամանակների իրադարձությունները դրանք վերջնականապես հօդս ցնդեցրին: Հանուն իր կայսերական նպատակներին հասնելու, վարչակազմը այնքան հեռու է գնում, որ անկարելի է չկասկածել, թե Վաշինգտոնը արդյոք առհասարակ որևէ արգելակ ունի, որը թույլ չտար անց-

նելու այն սահմանագիծը, որին հասնելով պետք է կանգ առնի ամեն մի խոհ-
հող էակ:
Քաղաքականության մեջ ծայրահեղ արկածախնդրության օրինակ է նաև
այն մանրակրկիտ պրովոկացիան, որ ԱՄՆ-ի հատուկ ծառայությունները
կազմակերպեցին՝ օգտագործելով հարավկորեական ինքնաթիռը: Այդ քայլի
փաստական կողմը մենք լուսաբանել ենք հանգամանորեն և ստույգ կերպով:
Դրա կազմակերպիչների մեղքը, նրանք ինչպես էլ որ խորամանկեն, ինչպի-
սի կեղծ վարկածներ էլ որ առաջ քաշեն, ապացուցված է:
Սովետական ղեկավարությունը ափսոսանք հայտնեց մարդկային զոհերի
կապակցությամբ, որոնք այդ աննախադեպ, հանցավոր դիվերսիայի հետե-
վանքն էին: Այդ զոհերը ծանրացան նրանց խղճի վրա, ովքեր կուզենային
յուրացնել պետությունների սուվերենության ու նրանց սահմանների անձեռն-
մխելիության անտեսման իրավունքը, ովքեր մտահղացել էին և կատարեցին
այդ պրովոկացիան, ովքեր տառացիորեն հաջորդ օրը անապարեցին կոնգրե-
սի միջոցով հաստատել ռազմական վիթխարի հատկացումներ, իսկ հիմա էլ
ձեռքերն են շփում գոհունակությունից:
Եվ այսպես, այն գործիչների «հումանիզմը», ովքեր ճգնում են ինքնա-
թիռում եղած մարդկանց կորստյան համար մեղքը բարդել ուրիշների վրա,
վերածվում է զանգվածային ոչնչացման զենքի նոր սարերի՝ սկսած «MX»
հրթիռներից մինչև նյարդակազմալուծիչ գազապարունակներ:
Իրենց վտանգավոր, մարդատյաց քաղաքականությունը մի կերպ հիմ-
նավորելու նպատակով նրանք նաև լեռնակուտակ զրպարտություններ են
տեղում Սովետական Միության, սոցիալիզմի՝ որպես հասարակարգի, հաս-
ցեին, ընդ որում, տոնն է տալիս ինքը՝ ԱՄՆ-ի պրեզիդենտը: Հարկավոր է
ուղղակի ասել. տհաճ տեսարան է, երբ նպատակադրվելով վարկաբեկել սո-
վետական ժողովրդին, մի այնպիսի երկրի ղեկավարներ, ինչպիսին է ԱՄՆ-ը,
կոխնիփոխ դիմում են գրեթե փողոցային հայհոյանքների և բարոյականու-
թյան, մարդկայնության վերաբերյալ փարիսեցիական քարոզների:
Բարոյականության այդպիսի քարոզի գինը աշխարհը լավ գիտե: Վիետ-
նամում բարոյականությունը, ինչպես այն ըմբռնում են վաշինգտոնյան գոր-
ծիչները, քարոզում էին նապալմի ու թունաքիմիկատների միջոցով, Լիբանա-
նում այն սերմանում են ռազմանավերի հրանոթների համազարկերով, իսկ
Սալվադորում այդ բարոյականությունն արմատավորում են ցեղասպանու-
թյամբ: Եվ ոճրագործությունների այս ցանկը կարելի է շարունակել: Այնպես
որ ԱՄՆ-ի քաղաքականության բարոյական կողմի մասին ևս մենք շատ բան
ունենք ասելու, ինչպես պատմությունը վերհիշելով, այնպես էլ այսօրվա մա-
սին խոսելով:
Այժմ Վաշինգտոնում բարոյականության հետ միասին ոտնահարում
են նաև քաղաքավարության տարրական կանոնները, անհարգալից վերա-
բերմունք ցուցաբերելով ոչ միայն պետական գործիչների ու պետությունների
նկատմամբ, այլև Միավորված ազգերի կազմակերպության նկատմամբ: Սո-
վորական հարց է ծագում. խաղաղությունն ու անվտանգությունը պահպա-
նելու կոչված միջազգային կազմակերպությունը արդյոք կարո՞ղ է գտնվել
մի երկրում, որտեղ սերմանվում է միլիտարիստական սանձարձակ մոլուցք և
վիրավորանքներ են հասցվում այդ կազմակերպության բարի անվանը:
Աշխարհի բախտը տնօրինողների դերի հավակնորդները հակակոմու-
նիզմի քողի տակ ջանում են իրենց համար հաճելի կարգեր սերմանել ամե-
նուրեք, որտեղ հակահարված չեն ստանում:
Այն ըմբռնումները, որոնցով փորձում են հիմնավորել այդ գործելակեր-
պը, ինքնստինքյան ուշադրության արժանի չէին լինի, եթե չլիներ այն փաս-
տը, որ դրանք քարոզվում են խոշոր տերության ղեկավարների կողմից և այն
էլ ոչ թե սոսկ քարոզվում են խոսքով, այլ իրագործվում են պրակտիկայում:
Գաղափարախոսական հակասությունները միջպետական հարաբերու-
թյունների ոլորտ փոխադրելը երբեք ոչ մի լավ բան չի տվել նրանց, ովքեր
արտաքին գործերում դիմել են այդ քայլին: Իսկ հիմա՝ միջուկային դարում,
դա պարզապես անհեթեթ է և անթույլատրելի: Գաղափարների հակամար-



տությունը ռազմական հակամարտության վերածելը չափազանց թանկ կնըս-
տեր ողջ մարդկությանը:
Բայց նրանք, ովքեր կուրացած են հակակոմունիզմով, ըստ երևույթին
ի վիճակի չեն կշռադատելու այդ բանը: Սկսելով «սովետական ռազմական
սպառնալիքի» խրտվիլակից, նրանք այժմ հասել են սոցիալիզմի՝ որպես հա-
սարակական սիստեմի, դեմ «խաչակրաց արշավանք» հայտարարելուն: Ջա-
նում են մարդկանց ներշնչել այն միտքը, թե սոցիալիզմը աշխարհում առհա-
սարակ տեղ չունի: Ճիշտ է, բացեիբաց չեն ասում, որ խոսքը այն աշխարհի
մասին է, որպիսին կցանկանար տեսնել Վաշինգտոնը:
Բայց ցանկությունները ու հնարավորությունները ամենևին էլ նույն բանը
չեն: Պատմության ընթացքը ոչ ոք չի կարող ետ շրջել: ՍՍՀՄ-ը, մյուս սո-
ցիալիստական երկրները կապրեն և կզարգանան իրենց օրենքներով՝ ամե-
նաառաջավոր սոցիալական կարգերի օրենքներով:
Իր գոյության վեցունես տասնամյակի ընթացքում սովետական պետու-
թյունը հաջողությամբ է անցել բազում փորձությունների, այդ թվում դաժան
փորձությունների միջով: Նրանք, ովքեր ձեռք են բարձրացրել մեր պետու-
թյան ամբողջականության, նրա անկախության, մեր կարգերի վրա, պատմու-
թյան աղբակույտ են նետվել: Ժամանակն է, որ բոլորը, ում սա վերաբերում
է, հասկանան, որ մեր երկրի անվտանգությունը, մեր բարեկամների ու դաշ-
նակիցների անվտանգությունը մենք կկարողանանք ապահովել ամեն պա-
րագայում:
Սովետական մարդիկ կարող են վստահ լինել, որ մեր երկրի պաշտպա-
նությունը գտնվում է այնպիսի մակարդակում, որ ոչ ոքի խորհուրդ չէինք
տա ուժերի փորձարկում սարքել:
Իսկ մենք ուժերի այդպիսի փորձարկում չենք փնտրում: Մեզ խորթ է
այդ միտքն անգամ: Մեր ժողովրդի բարօրությունը, սովետական պետության
անվտանգությունը մենք չենք զատում և, մանավանդ, չենք հակադրում մյուս
ժողովուրդների, մյուս երկրների բարօրությանն ու անվտանգությանը: Միջու-
կային դարում չի կարելի աշխարհին նայել եսամոլական նեղ շահերի ճեղքի
միջով: Պետական պատասխանատու գործիչներն ունեն միայն մեկ ընտրու-
թյուն՝ ամեն ինչ անել միջուկային աղետի կանխման համար: Ուրիշ ամեն
մի դիրքավորում կարճատեսություն է, ավելին՝ ինքնասպանություն:
Սովետական ղեկավարության մեջ հարց չի ծագում, թե միջազգային
գործերում ինչ գիծ պետք է վարել նաև ներկայիս սուր իրադրության մեջ:
Մեր կուրսը առաջվա պես նպատակամղված է խաղաղության պահպանմանն
ու ամրապնդմանը, լարվածության թուլացմանը, սպառազինությունների մըր-
ցավազքի սանձահարմանը, պետությունների համագործակցության ընդլայն-
մանն ու խորացմանը: Այսպիսին է Սովետական Միության կոմունիստական
կուսակցության, ողջ սովետական ժողովրդի անշեղ կամքը: Այսպիսիք են,
մենք համոզված ենք, նաև բոլոր ժողովուրդների իղձերը:
Իհարկե, Սովետական Միության հասցեին չարամիտ հարձակումները
մեր մեջ զայրույթի բնական զգացում են հարուցում, բայց մեր նյարդերն
ամուր են, իսկ մեր քաղաքականությունը մենք հույզերի վրա չէ, որ կառու-
ցում ենք: Դրա հիմքում դրված են ողջամտությունը, ռեալիզմը, խաղաղու-
թյան բախտի համար խոր պատասխանատվությունը:
Մենք ելնում ենք այն բանից, որ մարդկությունը կործանման չի դատա-
պարտված: Սպառազինությունների մրցավազքին պետք է ու կարող է վերջ
դրվել: Մարդկությունն արժանի է ավելի լավ վիճակի, քան կոնֆլիկտներով
բզկտված աշխարհում ապրելը, շնչահեղձ լինելով մահաբեր զենքի բեռի
տակ:
Առաջ քաշելով Եվրոպայում ինչպես ստրատեգիական, այնպես էլ միջին
հեռավորության միջուկային սպառազինությունների սահմանափակումների և
կրճատումների վերաբերյալ հեռուն գնացող առաջարկություններ, մենք հո-
գում ենք ոչ միայն ՍՍՀՄ-ի, սոցիալիստական ընկերակցության պետություն-
ների անվտանգության մասին, այլև մյուս բոլոր երկրների անվտանգության
մասին:

Իսկ ինչ վերաբերում է ԱՄՆ-ի քաղաքականությանը, ապա նրա հարաճուն ռազմականացումը դրսևորվում է նաև նրանով, որ նա չի ցանկանում գոնե ինչ-որ չափով լուրջ բանակցություններ վարել, պայմանավորվածության գալ սպառազինությունների մրցավազքի սանձահարման հարցերի շուրջը:

Ահա արդեն երկու տարի է, ինչ տեղի են ունենում սովետաամերիկյան բանակցություններ շատ սուր պրոբլեմի՝ Եվրոպայում միջուկային սպառազինությունների կրճատման շուրջը: Սովետական կողմի դիրքավորումը նպատակ ունի գտնել փոխադարձաբար ընդունելի լուծումներ ազնիվ, արդարացի հիման վրա, ոչ մեկի օրինական շահերին չդիպչող լուծումներ: Միևնույն ժամանակ այդ երկու տարվա ընթացքում պարզ դարձավ նաև այն, որ Ժնևում վարվող բանակցությունների գծով մեր պարտնյորները այնտեղ են գտնվում բնավ էլ ոչ պայմանավորվածության հասնելու համար: Նրանց խնդիրն այլ է՝ ձգձգել ժամանակը, իսկ այնուհետև ձեռնամուխ լինել Արևմտյան Եվրոպայում «Փերշինգ—2» բալիստիկ հրթիռների և մեծ հեռավորության թևավոր հրթիռների տեղաբաշխմանը: Այդ բանը նրանք առանձնապես չեն էլ թաքցնում:

Նրանք միայն քողարկվում են Ժնևի բանակցություններում ԱՄՆ-ի հանդես բերած ինչ-որ ճկունության մասին դատողություններով: Հենց նոր էր, որ այդպիսի «ճկունության» հերթական բաժինը նյութականացավ: Այս անգամ էլ պարզ դարձավ դրա մեջ դրված խաբեությունը: Եթե մի կողմ թողնենք մանրամասները, ապա ամերիկյան դիրքավորման մեջ, այսպես կոչված, նոր քայլի էությունը, որը տարփողվում է որպես «հիմնալի» քայլ, հանգում է առաջվա պես այն բանի շուրջը պայմանավորվածության գալու առաջարկությանը, թե միջին հեռավորության ինչքան սովետական հրթիռներ պետք է կրճատվեն և Եվրոպայում ինչքան ամերիկյան նոր հրթիռներ պետք է տեղաբաշխվեն ի լրումն այն միջուկային պոտենցիալի, որ արդեն ունի ՆԱՏՕ-ն:

Կարճ ասած, մեզ առաջարկում են խոսակցություն վարել այն մասին, թե ինչպես ՆԱՏՕ-ի բլոկին օգնել՝ իր օգտին խախտելու միջին հեռավորության միջուկային միջոցների գծով եվրոպական գոտում գոյություն ունեցող հաշվեկշիռը: Եվ ահա այդ քայլը, աչք չթարթելով, ինչ-որ նոր բանի տեղ են հրամցնում:

Եվրոպայում ամերիկյան միջուկային այդ հրթիռների տեղակայման օպերացիան վաշինգտոնյան կամրջակից դիտվում է իբրև անսահմանորեն պարզ և ԱՄՆ-ի համար առավել ձեռնտու գործողություն, ձեռնտու՝ Եվրոպայի հաշվին: ԱՄՆ-ի եվրոպական դաշնակիցները դիտվում են իբրև պատանդներ: Անհայտ քաղաքականություն է, բայց լկտի: Բայց ահա թե ինչն է իսկապես անհասկանալի. այդ մասին արդյոք խորհում են եվրոպական այն քաղաքական գործիչները, որոնք, անտեսելով իրենց ժողովուրդների շահերը, խաղաղության շահերը, օգնում են ԱՄՆ-ի վարչակազմի հավակնոտ միլիտարիստական պլանների իրականացմանը:

Այստեղ թերասածության համար տեղ չպիտի մնա: Եթե արևմտաեվրոպական երկրների բնակչության մեծ մասի կամքին հակառակ ամերիկյան միջուկային հրթիռներ երևան եվրոպական մայրցամաքում, ապա դա խաղաղության գործի նկատմամբ թշնամական սկզբունքային մասշտաբի քայլ կլինի ԱՄՆ-ի ղեկավարների և նրանց հետ համատեղ գործող ՆԱՏՕ-ի մյուս երկրների գործիչների կողմից:

Մենք չենք տեսնում, որ ամերիկյան կողմը ցանկություն ունենար ինչպես հարկն է զբաղվելու նաև ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման և կրճատման պրոբլեմի լուծմամբ: Այժմ ամերիկյան մայրաքաղաքում զբաղված են այլ բանով. կոնվեյերի վրա են դնում նաև այդ սպառազինությունների նորանոր սիստեմների արտադրությունը: Իսկ հերթի են դրված դրանց այնպիսի տեսակներ, որոնք առհասարակ արմատապես կարող են շրջել պատկերացումները ստրատեգիական կայունության մասին և միջուկային սպառազինությունների արդյունավետ սահմանափակման ու կրճատման բուն հնարավորության մասին:



Սովետական Միության բարի կամքը, պայմանավորվածության հասնելու նրա ցանկությունը ոչ ոք չպիտի ընդունի իբրև թուլության նշան: Ռազմաստրատեգիական ստեղծված հաշվեկշիռը խախտելու ամեն մի փորձի Սովետական Միությունը կկարողանա պատշաճ պատասխան տալ, և նրա խոսքի ու գործի մեջ խզում չի լինի:

Բայց մենք զանգվածային ոչնչացման զենքի արտադրության և կուտակման բնագավառում մրցության սկզբունքային հակառակորդներ ենք: Դա մեր ուղին չէ: Դա չի կարող հանգեցնել մարդկության առջև կանգնած պրոբլեմներից՝ պետությունների տնտեսական զարգացման, շրջակա միջավայրի պահպանման, պարզապես մարդկանց տարրական կենսապայմանների, նրանց սննդի, առողջության, կրթության համար տարրական պայմանների ստեղծման պրոբլեմներից որևէ մեկի լուծմանը:

Սպառազինությունների մրցավազքի համար անիմաստորեն ծախսվող նյութական ռեսուրսների ազատում, մարդու անսպառ ստեղծագործական հնարավորությունների բացահայտում՝ ահա թե ինչը կարող է միավորել մարդկանց, ահա թե ինչը պետք է որոշի պետությունների քաղաքականությունը XX և XXI դարերի սահմանագծում: Որպեսզի այդ ամենը իրականանա, պահանջվում է կանգնեցնել միլիտարիզմի ուժերին, համատեղ ջանքերով աշխարհը ետ պահել դեպի անդունդ գլորվելուց:

Բոլոր ժողովուրդները, մեր մոլորակի յուրաքանչյուր բնակիչ պետք է գիտակցեն սպառնացող վտանգը: Գիտակցեն, որպեսզի միավորեն իրենց ջանքերը սեփական գոյության համար մղվող պայքարում:

Մարդկությունը չի կորցրել և չի կարող կորցնել բանականությունը: Դա ամբողջ ուժով դրսևորվում է նաև եվրոպական մայրցամաքում և մյուս մայրցամաքներում ծավալված հակահրթիռային, հակապատերազմական շարժման թափի լայնությամբ, շարժում, որին մասնակցում են տարբեր սոցիալական, քաղաքական, կրոնական պատկանելության մարդիկ:

Բոլոր նրանք, ովքեր այսօր իրենց ձայնն են բարձրացնում ընդդեմ սպառազինությունների խելահեղ մրցավազքի, ի պաշտպանություն խաղաղության, կարող են վստահ լինել, որ հենց այդ նպատակների իրագործմանն է ուղղված Սովետական Միության, մյուս սոցիալիստական երկրների քաղաքականությունը: ՍՍՀՄ-ը ուզում է հաշտ ու խաղաղ ապրել բոլոր երկրների, այդ թվում ԱՄՆ-ի հետ: ՍՍՀՄ-ը ագրեսիվ պլաններ չի նյութում, ոչ ոքի սպառազինությունների մրցավազք չի պարտադրում, ոչ ոքի իր սոցիալական կարգերը չի պարտադրում:

Մեր խոհերն ու ձգտումները մարմնավորվում են կոնկրետ առաջարկությունների մեջ, որոնց նպատակն է միջազգային իրադրության մեջ դեպի լավը վճռական շրջադարձի հասնել: Սովետական Միությունը այսուհետև էլ հնարավոր ամեն ինչ կանի աշխարհի խաղաղությունը պաշտպանելու համար:

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

## Ընկեր Մ. Վ. ԶԻՄՅԱՆԻՆԻ զեկուցումը ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում 1983 թ. հուլիսի 29-ին

*Ընկերնե՛ր։*

*80 տարի առաջ կայացավ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության II համագումարը։ Այն ժամանակ՝ XX հարյուրամյակի արշալույսին, քչերը կարող էին ըստ արժանվույն գնահատել այդ իրադարձության խոր իմաստը։ Բայց մեկուկես տասնամյակ էլ չանցած, համագումարում կոփված բոլշևիկ լենինյանների կուսակցությունը Ռուսաստանի բանվոր դասակարգին, աշխատավորներին առաջնորդեց դեպի առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխություն, որը նոր դարագլուխ բացեց համաշխարհային պատմության մեջ։*

*Բոլշևիկների կուսակցությանը ինչպե՞ս հաջողվեց նախապատրաստել ու գլխավորել թե՛ իր մասշտաբներով և թե իր խորությամբ աննախադեպ սոցիալական հեղափոխությունը, որը հիմնիվեր ցնցեց բռնության ու ճնշման հին հասարակությունը, դրեց նոր, սոցիալիստական քաղաքակրթության հիմքը։ Այս հարցի պատասխանը արդի պայմաններում ոչ միայն տեսական, այլև գործնական հետաքրքրություն է ներկայացնում։ Դա ամենաանմիջական առնչությունն ունի մարդկության սոցիալական պրոգրեսի համար մղվող պայքարի պրոբլեմների հետ։*

*«Մասնավոր սեփականության գաղափարի ոչնչացման համար,— նշել է Կ. Մարքսը,— միանգամայն բավական են կոմունիզմի* գաղափարները: *Իսկ ռեալ իրականության մեջ մասնավոր սեփականության ոչնչացման համար պահանջվում է* իսկական *կոմունիստական գործողություն»։ Երկրորդ համագումարում Լենինի ստեղծած կուսակցությունն էլ իսկապես դարձավ կոմունիստական գործողության կուսակցություն։ Նա այդպիսին է մնում նաև այսօր։*

*Հեղափոխական հաջորդայնության անխզելի թելը ՍՄԿԿ-ի գործունեությունը կապում է իր գաղափարական ու կազմակերպական հիմունքների, հիրավի հեղափոխական քաղաքականությունից անբաժանելի բոլշևիկյան, լենինյան էթիկայի սկզբունքների հետ։*

*Այս ամենը սովետական կոմունիստների համար միշտ էլ եղել է հսկայական էներգիայի ու ստեղծագործության աղբյուր, նրանց մասսայական հերոսությանն է ոգեշնչել մեր երկրի կյանքի առավել լարված պահերին։ Այժմ էլ, դեմ առնելով սկզբունքորեն նոր խնդիրների ու պրոբլեմների, մենք մեր հայացքը հառում ենք նրանց փորձին ու սխրանքին, ովքեր դրել են մեր կուսակցության հիմքերը, ովքեր Ռուսաստանի պրոլետարիատին ցույց տվեցին սոցիալիզմի համար պայքարելու միակ ճիշտ ուղին։*

*Մեծագործություններով հարուստ, դինամիկ ու նպատակասլաց է ՍՄԿԿ-ի կյանքը։ Հետևողական ու պարզ է գիտականորեն ստուգված նրա լենինյան կուրսը։ Կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումների որոշումներում վավերագրված այդ կուրսը հետագա*



*զարգացում ստացավ Կենտրոնական կոմիտեի 1983 թվականի հունիսյան պլենումում, որի որոշումներն արժանացան կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց միահամուռ պաշտպանությանը, երկրում առաջ բերեցին քաղաքական ու աշխատանքային բուռն խանդավառություն։ Կուսակցության ու ժողովրդի ջերմ հավանությանն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրվելը։*

*Քաղաքական այս կարևոր իրադարձությունները վերստին համոզիչ կերպով ցուցադրեցին կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնությունը, նրանց համախմբվածությունը ՍՄԿԿ-ի լենինյան Կենտրոնական կոմիտեի, նրա՝ ընկեր Յու. Վ. Անդրոպովի գլխավորած քաղբյուրոյի շուրջը։ Դրանք մեկ անգամ ևս ցույց տվեցին մեր կուսակցության ստեղծարար ուժը, նրա անսասան հավատարմությունը Լենինի գործին, Լենինի դրոշին։*

### 1. ՆՈՐ ՏԻՊԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

*Ընկերնե՛ր։ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատների II համագումարը տեղի ունեցավ պատմական բարդ պայմաններում։ Կապիտալիզմն արդեն թևակոխել էր իր վերջին՝ իմպերիալիստական փուլը։ Նրա ներքին հակասությունները հասել էին չտեսնված սրության, խիստ աճել էր համաշխարհային պատերազմով հղի միջիմպերիալիստական մրցակցությունը։ Դրա հետ մեկտեղ զորեղանում, ավելի ու ավելի մեծ թվով երկրներ էին ընդգրկում պրոլետարիատի զանգվածային ելույթները։ Հասունանում էր պայթյունը գաղութային ու կախյալ երկրներում։ Մարդկությունը կանգնած էր պատմության նոր փուլի՝ կապիտալիզմից հեղափոխական ճանապարհով սոցիալիզմին անցնելու շեմին։*

*II ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները չկարողացան ըմբռնել այդ պրոցեսների էությունը, բանվոր դասակարգին վճռական պայքարի հանել կապիտալիզմի դեմ։ Նրանք շատ խոր էին մխրճվել օպորտունիզմի ու ռեֆորմիզմի ճահիճը։ Հարկավոր էր այնպիսի կուսակցություն, որը, Լենինի բառերով ասած, ունակ լիներ ճիշտ արտահայտելու իսկապես հեղափոխական պրոլետարիատի գաղափարներն ու քաղաքականությունը։ Հենց այդպիսի կուսակցություն դարձավ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը։ Այդ բանը համոզիչ կերպով ցույց տվեց ՌՍԴԲԿ II համագումարը։*

*Այն, որ նոր տիպի անդրանիկ պրոլետարական կուսակցությունն առաջացավ Ռուսաստանում, պատահականություն չէր։ Մոնոպոլիստական կապիտալիզմի սուր հակասություններն այստեղ միախառնված էին նահապետականության ու ֆեոդալիզմի մնացուկներին, ցարիզմի քաղաքական ճնշմանը, ազգային ծայրամասերի գաղութային ենթարկվածությանը։ Բուն Ռուսաստանում՝ իմպերիալիզմի այդ առավել թույլ օղակում էր հասունանում, ինչպես և կանխատեսել էր Մարքսը, մեծագույն սոցիալական հեղափոխությունը։ Այստեղ հեղափոխական պայքարի ասպարեզ դուրս եկավ բանվոր դասակարգի հզոր ջոկատը, որն աչքի էր ընկնում բարձր համակենտրոնացմամբ, վճռականությամբ, հարաճուն կազմակերպվածությամբ։*

*Ռուսաստանի պրոլետարիատն իր կողմում հենվում էր Ռադիշչևի ու դեկաբրիստների, Գերցենի ու Չեռնիշևսկու, նարոդովոլեցների ու պլեխանովյան «Աշխատանքի ազատագրություն» խմբի հեղափոխական հարուստ ավանդույթների վրա։ Ռուսաստանի ազատագրական շարժման մեջ, իհարկե, կային սխալներ ու մոլորություններ, բայց և կային անհամար սխրանքներ ազնիվ ու խիզախ հոգու տեր մարդկանց, որոնք կրքոտ կերպով տենչում էին ժողովրդի երջանկությունը և զոհաբերում իրենց կյանքը։ Ռուսաստանը հիրավի տառապանքով է վաստակել նոր աշխարհի օրրանը դառնալու իրավունքը։ Բայց, որպեսզի պրոլետարիատի հեղափոխական ուժը վերածվեր շահագործողների համար խորտակիչ հզորության, այն պետք է ղեկավարվեր առաջավոր գիտական տեսությամբ։*

Ռուսաստանի բանվորական շարժման հետ գիտական սոցիալիզմի միացման ճանապարհին կատարված վճռական քայլը անբաժանելի է պրոլետարիատի մեծ առաջնորդ, Մարքսի ու Էնգելսի գործի հետևողական շարունակող, հանճարեղ տեսաբան ու քաղաքագետ, անվեհեր հեղափոխական Վլադիմիր Իլյիչ Լենինի անունից։ Անցյալ դարի 90-ական թվականների սկզբից ծավալվեց նրա տեսական, պրոպագանդիստական և կազմակերպչական գործունեությունը։ Նա դարձավ «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության»՝ նոր տիպի կուսակցության այդ նախատիպի ստեղծողը։ Հեղափոխական պայքարի, կուսակցական բոլոր ուժերի հավաքման ու համախմբման անխոնջ մարտիկի էստաֆետը ըստ արժանվույն շարունակեց լենինյան «Իսկրան»։ Ամուր հենվելով մարքսիզմի տեսության վրա, Լենինն առաջադրեց և պաշտպանեց պրոլետարիատի քաղաքական կազմակերպության նոր, բարձրագույն ձևի բոլոր արմատական սկզբունքները, ստեղծեց կոմունիստական կուսակցության մասին իր կուռ ուսմունքը։

Նոր տիպի կուսակցության հիմնական առանձնահատկությունը հեղափոխության, հասարակության սոցիալիստական վերակառուցման նրա նպատակադրումն է։ Կուսակցությունը այդ պայքարում որպես բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների ավանգարդ է հանդես գալիս շնորհիվ այն բանի, որ առաջնորդվում է հեղափոխական տեսությամբ՝ մարքսիզմով, կենսագործում է հեղափոխական սկզբունքային ստրատեգիա և կիրառում ճկուն տակտիկա։ Նա միշտ հենվում է մասսաների վրա, մշակում է իր ներքին կյանքի այնպիսի նորմեր և ձևավորում է կուսակցության անդամի այնպիսի տիպ, որոնք ապահովում են կոմունիստների միասնական ու միաձույլ գործողությունները։ Նոր տիպի կուսակցության այդ բոլոր գլխավոր հատկանիշները մարմնավորվեցին բոլշևիկների կուսակցության մեջ։

ՌՍԴԲԿ II համագումարի պատմական ծառայությունը հետևողական մարքսիստական ծրագրի՝ մեր կուսակցության առաջին ծրագրի, ընդունումն է։ Դրանում, ի տարբերություն արևմտաեվրոպական բոլոր բանվորական կուսակցությունների ծրագրերի, բացեիբաց հռչակվում էր պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունը սոցիալական հեղափոխության իրագործման համար։ Ծրագրի ագրարային մասում պարզորոշ արտահայտված է աշխատավոր գյուղացիության հետ պրոլետարիատի դաշինքի լենինյան գաղափարը, իսկ ազգերի ինքնորոշման իրավունքի պահանջի մեջ՝ Ռուսաստանի ճնշված ժողովուրդների հետ նրա դաշինքի կուրսը։ Համագումարը կուսակցությանը հաստատուն կերպով ամրապնդեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերում, հայտարարելով, որ ՌՍԴԲԿ-ն պրոլետարիատի համաշխարհային բանակի ջոկատներից մեկն է։

Հեղափոխական պայքարի բուն տրամաբանությունը հուշում է, որ բանվոր դասակարգի քաղաքական ու գաղափարական իսկական առաջնորդը կարող է դառնալ կենտրոնական ղեկավարություն ունեցող մարտական կուսակցությունը միայն։ Այս խնդրի լուծումը ուղղակիորեն կախված էր կուսակցական շարքերի որակից։ Այստեղից էլ այն սկզբունքային դիրքը, որ Լենինն ու լենինյանները ՌՍԴԲԿ II համագումարում գրավեցին կուսակցության անդամության հարցի առթիվ։ Գիտակից, կարգապահ քաղաքական մարտիկ և ոչ թե յուրօրինակ «հոժարակամ զինվոր», ինչպես առաջարկում էին Մարտովն ու նրա կողմնակիցները։ Ահա թե կուսակցության անդամը ինչպիսին պետք է լինի Լենինի կարծիքով։ Լենինյան տեսակետը շուտով անդառնալիորեն հաստատվեց մեր կանոնադրության մեջ։

Կուսակցության II համագումարից սկսվում է նրա անդուլ, պատմության հետագա ողջ ընթացքում մղած պայքարը հանուն այն բանի, որ ավելի ու ավելի վեր բարձրացնի, ինչպես կոչ էր անում Լենինը, «կուսակցական կազմակերպության, կուսակցական տոկունության ու պատվի, կուսակցական դրոշի հասկացությունները»։ Լենինի, նրա կողմնակիցների գործունեությունն ակնբախ օրինակն է այն բանի, թե երբ խոսքը վերաբերում է հիմնարար սկզբունքներին, ինչպես պետք է անսասանորեն ու վճռականորեն, մինչև վերջ պաշտպանել մարքսիզմի հեղափոխական գաղափարները, հակահարված



հասցնելով թերահավատներին, ռևիզիոնիստներին, բուրժուական նացիոնալիստներին։ Ամեն երանգի օպորտունիստների դեմ մղված անհաշտ պայքարում բոլշևիզմը առնականանում, կոփվում ու ամրապնդվում էր, իր կողմն էր գրավում հեղափոխական, ազատագրական շարժման մեջ եղած ողջ ազնիվը, ողջ մտածողը։

Երկրորդ համագումարում մենշևիկների և մյուս օպորտունիստների գրոհները փաստորեն կատարվում էին կուսակցության բուն գաղափարական ու կազմակերպական հիմքերի և, առաջին հերթին, այն սկզբունքների դեմ, որոնք այնուհետև ձևակերպվեցին որպես դեմոկրատական ցենտրալիզմի հստակ սկզբունքներ, որպես մեր կուսակցական կյանքի անսասան նորմեր։

Բոլշևիկների հասցեին ուղղված այն մեղադրանքների մեջ, թե նրանք իբր ստեղծում են «բլանկիստական» կազմակերպություն, ամեն ինչում կուսակցականության պահպանումը մերժելու մեջ փաստորեն թաքնված էր մեկ բան՝ վախը հեղափոխության ավանգարդի դժվարին պարտականության ստանձնումից, ձգտումը՝ թուլացնելու կուսակցության հարվածային, կազմակերպված հզորությունը։

Մենք տեսնում ենք, որ օպորտունիստներն ու ռևիզիոնիստները այսօր ևս չեն դադարեցնում հարձակումները մարքս-լենինյան կուսակցությունների հիմնական կազմակերպական սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի դեմ։ Նրանք փորձում են այն ներկայացնել որպես գլխավոր խոչընդոտ ներկուսակցական լայն դեմոկրատիայի զարգացման գործում, կուսակցության և ժողովրդական զանգվածների միջև ճիշտ փոխհարաբերությունների հաստատման գործում։ Այս հարցում նրանք բնավ չեն զանազանվում դարասկզբի Ռուսաստանի օպորտունիստներից, որոնց հայացքները դեն շպրտեց կյանքն ինքը։

ՌՍԴԲԿ II համագումարը մնայուն նշանակություն ունի ոչ միայն կուսակցության ծրագրային ու կազմակերպական հիմունքների մշակման, այլև նրա պրակտիկ հեղափոխական ստրատեգիայի ու տակտիկայի մշակման տեսանկյունից։

Լենինը, բոլշևիկները համագումարում հետևողականորեն պաշտպանում էին գլխավորը՝ պրոլետարիատի հեգեմոնիայի հաստատումը, որն ապահովում է հեղափոխական պայքարի հաջողությունը։ Կուսակցությունը համարելով բանվոր դասակարգի ավանգարդը, նրանք միևնույն ժամանակ հաստատում էին նրա դերը՝ որպես բոլոր շահագործվողների, բոլոր աշխատավորների պաշտպանի, նրանց պայքարը կազմակերպողի։ Դրանով իսկ բոլշևիկներն իրենց առաջին իսկ քայլերից նախապատրաստում էին այն զանգվածային բանակը, որը երեք հեղափոխությունների բոցերի միջով նրանց ետևից գնաց գրոհելու ինքնակալության ու կապիտալիզմի ամրոցները։

Բոլշևիկների կուսակցության պատմական արդարացիությունն ապացուցվել է այն ամենաբարդ ու խիստ ստուգումով, որպիսին կարող էր լինել հասարակական պրակտիկան՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Մեր գաղափարախոսական հակառակորդները փորձում են Հոկտեմբերի փառահեղ հաղթանակը պատկերել մերթ որպես «հանգամանքների պատահական զուգադիպում», մերթ որպես հեղափոխականների մի նեղ խմբի կողմից կատարելապես մշակված «դավադրություն»։ Ճշմարտությունից ավելի հեռու ուրիշ բան չկա, քան նման շահատակությունները։

Սոցիալիստական հեղափոխությունը, ինչպես և առհասարակ սոցիալիզմը, կարող է լինել միայն իր՝ ժողովրդի գործը։ Մասսաների ստեղծագործական հանճարին անսահմանորեն հավատացող, իրոք ժողովրդական առաջնորդ Լենինը անդուլ շեշտում էր այս միտքը։ Կուսակցությունն անպարտելի է, եթե նա ոչ միայն սովորեցնում է աշխատավորներին, այլև սովորում է նրանցից։ Բոլշևիկների ուժն այն է, որ նրանք օժտված էին մասսաների ձայնը միշտ լսելու, նրանց արմատական շահերն արտահայտելու և նրանց իրենց ետևից տանելու ունակությամբ։ Ոչ մի բարեխիղճ քաղաքագետ, եթե նա ձեռնամուխ է լինում ուսումնասիրելու բոլշևիկների գործունեությունը, չի կարող անտեսել այն փաստը, որ մեր կուսակցությունը, ընդառաջ գնալով պրոլետարական հեղափոխությանը, հիմնավոր կերպով նախապատրաստված էր դրան։

Կուսակցությունը նախապատրաստված էր նախ և առաջ քաղաքականապես և գործնականորեն։ Թե՛ փետրվարյան հեղափոխության, թե՛ 1917 թվականի Հոկտեմբերյան հեղափոխության համար, Լենինի բառերով ասած, «գլխավոր փորձ» հանդիսացավ 1905—1907 թվականների հեղափոխությունը՝ իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխությունը։ Մասսաները դրա բարիկադներում ձեռք բերեցին մարտական անգնահատելի փորձ։ Այդ հեղափոխության ընթացքում մասսաների նախաձեռնությամբ ստեղծվեցին սովետներ։ Այստեղ միահյուսվում էին հեղափոխության գիտությունն ու արվեստը, հղկվում պայքարի զենքը, մշակվում այն գործողությունների ձևերն ու մեթոդները, որոնք անհնար էր կանխատեսել վաղօրոք։

Հոկտեմբերին նախորդած երկու դեմոկրատական հեղափոխությունների ընթացքում իսկ բոլշևիկյան համոզմունքներն աստիճանաբար վերածվեցին աշխատավոր ժողովրդի ամենալայն խավերի համոզմունքների։ Այդ ժամանակ իսկ կուսակցությունը գործնականում սովորեց և լավ սովորեց օգտագործել հեղափոխության զարգացման ամեն մի՝ թե՛ խաղաղ, թե՛ զինված ուղի, դասեր առնելու ոչ միայն հաղթանակներից, այլև ժամանակավոր պարտություններից։

Հոկտեմբերի հաղթանակը բոլշևիկների կողմից նախապատրաստված էր նաև տեսականորեն։ Սոցիալիստական հեղափոխության տեսության և ոչ մի խոշոր հարց չկար, որ մշակած չլինեին կուսակցությունը, Լենինը, մշակած չլինեին խորապես և ժամանակին. բուրժուադեմոկրատական հեղափոխության վերաճում սոցիալիստականի և պրոլետարիատի դասակարգային դաշնակիցների ստրատեգիա, մեկ, առանձին վերցված երկրում հեղափոխության հաղթանակի հնարավորություն, իմպերիալիստական պատերազմի վերածում քաղաքացիականի, հեղափոխական իրադրություն, ապստամբությունը որպես արվեստ. սովետները որպես պրոլետարական պետականության ձև՝ այս բոլոր և մյուս կարևորագույն պրոբլեմները հեղափոխական մարքսիզմի տեսության ու քաղաքականության լույսով մշակվել էին նախքան պրոլետարիատի կողմից իշխանության գրավումը։

Պրոլետարիատի պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի գործում Լենինի ավանդն անբաժանելի է փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի ստեղծագործական զարգացման հետ կապված նրա գաղափարների ողջ հարստությունից։ Լենինն ամենքից լավ էր հասկանում մարքսիզմի տեսության մշտական հարստացման բացառիկորեն կարևոր նշանակությունը։ Խորապես իմաստավորելով մարդկության կյանքում տեղի ունեցած նոր երևույթները, գիտության ու տեխնիկայի բուռն զարգացմամբ առաջադրվող պրոբլեմները, ընդհանրացնելով Ռուսաստանի և ողջ միջազգային բանվորական շարժման փորձը, Լենինն առաջ մղեց մեր այն մեծ ուսմունքի բոլոր բաղկացուցիչ մասերը, որ մենք իրավամբ անվանում ենք մարքսիզմ-լենինիզմ։

Հեղափոխության հաղթանակից հետո կուսակցությունն արտակարգ թափով ձեռնամուխ եղավ այն իդեալների իրականացմանը, որ ինքը պաշտպանել էր իր ստեղծման պահից ի վեր։ Քաղաքացիական պատերազմի տարիներին ջախջախելով ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ուժերին, մեր երկրի աշխատավորները կուսակցության ղեկավարությամբ ձեռնամուխ եղան սոցիալիզմի կառուցմանը։

Առջևում, մինչև պատերազմական հաջորդ ահեղ փորձությունը, մեր հայրենիքն ունեցավ խաղաղ աշխատանքի ընդամենը երկու տասնամյակ։ Եվ չի կարելի չխոնարհվել ժողովրդի վեհության ու հերոսության առջև, նրա ստեղծարար եռանդին ուղղություն տվող կուսակցության իմաստության առջև։ Նրանք կարողացան այդ կարճ ժամանակամիջոցում հաղթահարել հարյուրամյակների հավասար ճանապարհ։

## 2. ՍՄԿԿ-Ն ՈՐՊԵՍ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍՏԵՂԾԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ

Ընկերնե՛ր։ Որքան ավելի ենք խորամուխ լինում պատմական փաստերում, այնքան պարզորոշ ենք գիտակցում Լենինի, կոմունիստական կուսակ-



ցության գործունեության տիտանական մասշտաբները, որոնք կարողացան տեսականորեն հղկված ձևով ներկայացնել նոր հասարակության կառուցման գլխավոր փուլերը և ուղիները, կազմակերպել միլիոնավոր զանգվածների հեղափոխական վերափոխիչ նպատակասլաց գործունեությունը։ Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը մեր երկրի կոնկրետ պայմանների նկատմամբ գիտական կոմունիզմի հիմնարար սկզբունքների իրոք ստեղծագործական կիրառման մի հանճարեղ օրինակ է։

Այդ պայմանների յուրօրինակությունը Լենինն ինքն է արտահայտել իրեն հատուկ խոր ընդհանրացմամբ ու ռեալիզմով։ «...Մենք, Ռուսաստանի պրոլետարիատը,— նշել է նա,— մեր քաղաքական կարգերով, բանվորների քաղաքական իշխանության ուժով առաջ ենք ամեն մի Անգլիայից, ամեն մի Գերմանիայից և միաժամանակ արևմտաեվրոպական ամենահետամնաց պետությունից ետ ենք բարեկարգ պետական կապիտալիզմի կազմակերպությամբ, կուլտուրայի բարձրությամբ, սոցիալիզմ «ներմուծելու» նյութական-արտադրական պատրաստության աստիճանով»։

Սակայն խոր մոլորության մեջ են նրանք, ովքեր, պատճառաբանելով այն ժամանակվա Ռուսաստանի հետամնացությունը, ժխտում են ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության փորձի ինտերնացիոնալ նշանակությունը, պնդում են, թե այդ փորձն իբր պիտանի չէ «բարձր զարգացած Արևմուտքի» համար։ Չէ որ մեր փորձի առանցքը հաջող լուծումն է այն հիմնարար խնդիրների, որ անխուսափելիորեն ծառանում են սոցիալիստական վերափոխումների ուղին թևակոխող յուրաքանչյուր երկրի առջև։ Եվ, լուծելով այդ խնդիրները, կուսակցությունը հենվում էր ամեն մի կապիտալիստական երկրի հանդեպ Սովետական Ռուսաստանի սոցիալ-քաղաքական առաջնության ծնունդը հանդիսացող հզոր ստեղծարար ուժերի վրա, բանվորագյուղացիական իշխանությանը աշխատավոր ժողովրդի ցուցաբերած հզոր աջակցության վրա։

Աներևակայելի բարդ գործ էր այն բարձունքների նվաճումը, որոնց հասավ մեր երկիրը։ Ցարիզմից ժառանգություն մնացած տնտեսական հետամնացության, պատերազմական ավերմունքի, անգրագիտության հաղթահարումը տեղի էր ունենում տապալված շահագործողական դասակարգերի կատաղի դիմադրության, ժողովրդական իշխանությունը խեղդելու իմպերիալիստների չդադարող փորձերի պայմաններում։ Ոմանց թվում էր, թե նման պայմաններում սոցիալիզմի կառուցումն անհուսալի գործ է։ Աջ և «ձախ» օպորտունիստները քանիցս փորձեցին կուսակցությանը շեղել լենինյան կուրսից, նրան պարտադրել կապիտուլյանտական կամ արկածախնդրական կողմնորոշումներ։ Բայց ոչ մի բան չէր կարող թուլացնել իր մեծ հիմնադրի կանխագծումները կենսագործելու նրա վճռականությունը։

Ինդուստրացում, կոլեկտիվացում, կուլտուրական հեղափոխություն, ազգային ծայրամասերի վերելք... Մենք միշտ հուզմունքով ենք արտասանում այս բառերը։ Դրանցում բաբախում է սովետների երկրի սոցիալիստական պատանեկության զարկերակը, լսվում է առաջին հնգամյակների խանդավառությամբ լեցուն հաղթական քայլքը, դրանցում մեր սոցիալիստական առաջնեկության գիտակցումն է։

Իհարկե, ոչ ամեն բան և ոչ միշտ էր մեզ մոտ այնպես ստացվում, ինչպես մտահղացվում էր, պատահում էին նաև սխալներ։ Բայց կուսակցությունը կարողանում է լենինաբար համարձակորեն և բացեիբաց ընդունել սխալները, բացահայտել ու վերացնել դրանց պատճառները, աշխատավորներին ոտքի հանել նոր խնդիրների լուծման համար։

Լենինյան կուսակցության ղեկավարած սովետական մարդկանց հերոսական ջանքերով տակավին 30-ական թվականներին մեր երկրում սոցիալիզմը հիմնականում կառուցվեց։ Ստեղծվեց հասարակության բարոյաքաղաքական ամուր միասնություն, բոլոր ազգերն ու ազգությունները համախմբվեցին համերաշխ, անխախտ ընտանիքում։

Այդ ամենը սովետական պետությանը հնարավորություն ընձեռեց տոկալու և հաղթելու ծանրագույն պատմական փորձություններում։ Դրանցից առավել դաժանը Հայրենական մեծ պատերազմը եղավ։ Կուսակցության ղեկավա-

րությամբ քաջարի սովետական բանակը և ժողովուրդը ֆաշիստ ագրեսորի հետ կենաց ու մահու գոտեմարտում ո՛չ միայն պաշտպանեցին հայրենիքի ազատությունը, պատիվն ու անկախությունը, այլև վճռական ավանդ ներդրեցին նացիզմի ստրկացումից մարդկության փրկության գործում։ Մեր հայրենիքի որդիներն ու դուստրերը հերոսաբար կռվեցին ռազմաճակատներում և պարտիզանական ջոկատներում, անձնվիրաբար աշխատեցին թիկունքում, համատեղ կոփեցին մեծ հաղթանակը։ Համաժողովրդական սխրագործություն եղավ նաև թշնամու ավերած տնտեսության վերականգնումը շատ կարճ ժամանակամիջոցում։

Վիթխարի է հետպատերազմյան տասնամյակներում սովետական հասարակության ձեռք բերած սոցիալ-տնտեսական և հոգևոր պրոգրեսը։ Դրա գլխավոր արդյունքը զարգացած սոցիալիզմի կառուցումն է, որը մարմնավորում է մարդկության սոցիալական առաջընթացի արդի բարձրագույն աստիճանը։

Այժմ, երբ հեղափոխական պրակտիկան հարստացել է Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում սոցիալիզմի կառուցման բազմապիսի փորձով, ամենայն ակներևությամբ հավաստվեց, որ սովետների երկրի զարգացման որոշ առանձնահատկություններ չեն վերացնում, ինչպես կանխատեսում էր Լենինը, սոցիալիստական շինարարության այն հիմնական օրինաչափությունները, որոնք առաջին անգամ երևան եկան հենց մեր երկրում։ Պրոլետարիատի դիկտատուրայի պետության հաստատում, որը ինչպես ցույց է տալիս մեր փորձը, աստիճանաբար վերաճում է համաժողովրդական պետության, մարքս-լենինյան կուսակցության կողմից հասարակության զարգացման ղեկավարում, արտադրամիջոցների հանրայնացում, ժողովրդական տնտեսության պլանաչափ վարում, հասարակական և պետական գործերի կառավարմանը լայն մասսաների մասնակցություն, աշխատավորների կոմունիստական դաստիարակում— սոցիալիզմ տանող մեր առաջընթաց շարժման այս և մյուս ուղիներն ու միջոցները ապացուցել են իրենց ինտերնացիոնալ նշանակությունը։

Ահա թե ինչու սոցիալիստական շինարարության լենինյան գիտությունը, Սովետական Միությունում, մյուս եղբայրական երկրներում դրա կենսագործման փորձը եղել են ու մնում են հուսալի կողմնորոշիչներ բոլոր հեղափոխական ուժերի համար։ Դրանք նախազգուշացնում են այն փորձերից, որոնց նպատակն է նոր հասարակական երևույթների խորը գիտական վերլուծությունը փոխարինել մտահայեցողական ուտոպիաների հորինումով, իսկ դեպի խորը սոցիալիստական վերափոխումներ տանող ստրատեգիայի մշակումը՝ սոցիալիզմի այսպես կոչված «այլընտրական մոդելների» որոնումով, որոնք ոչ մի տեղ և ոչ ոքի իրագործել չի հաջողվել։

Ռեալ սոցիալիզմը քաղաքակրթության գանձարանը ներդրեց համամարդկային նշանակություն ունեցող խոշորագույն նվաճումներ, հօգուտ աշխատավոր մարդկանց հաջողությամբ լուծեց այնպիսի պրոբլեմներ, որոնք կապիտալիզմի ուժերից վեր են։ Դինամիկ, ճգնաժամից և գործազրկությունից զերծ էկոնոմիկա, ժողովրդի բարեկեցության անշեղ վերելք, իսկական դեմոկրատիա, որը մարդու հիմնական իրավունքներն ապահովում է ոչ թե խոսքով, այլ գործով, ազգային հարցի արդարացի լուծում, ընդհանուր անվճար կրթություն և առողջապահություն, ժողովրդին ի սպաս դրված առաջավոր գիտություն, զարգացած բազմազգ մշակույթ— մեր կյանքի այս բոլոր կողմերը հսկայական ձգողական ուժ ունեն ամբողջ աշխարհի աշխատավորների աչքում։

Սոցիալիզմը ծնում է այնպիսի հասարակական մթնոլորտ, որտեղ տիրապետում են կոլեկտիվիստական ոգին և ընկերական փոխօգնությունը, բարոյական առողջությունը և սոցիալական լավատեսությունը։ Սոցիալիզմն ստեղծում է նյութական և հոգևոր պայմաններ անհատի ավելի ու ավելի լիակատար, բազմակողմանի զարգացման և նրա ստեղծագործական ուժերի ու ընդունակությունների գործադրման համար։ Այն ապահովում է կյանքի սկզբունքորեն նոր որակ, որն ամենևին չի հանգում նյութական լիությանը, այլ ներառնում է մարդկային լիարյուն կեցության ողջ հարստությունը, իսկական մարդկային արժեքների ողջ սպեկտրը։



Ընկերնե՛ր։ Հենվելով սովետական հասարակության հասումների և հնարավորությունների հույժ գիտական գնահատման վրա, հաշվի առնելով ներքին և միջազգային գործոնների ռեալ դինամիկան, ՍՄԿԿ-ն իր XXVI համագումարում մշակեց երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի և ամբողջ 80-ական թվականների ծավալուն ծրագիրը։ Դրա կատարման համար մղվող պայքարի վրա են կենտրոնացված կուսակցության, ողջ սովետական ժողովրդի ջանքերը։

ՍՄԿԿ-ի լենինյան անսասան ավանդույթն է մշտապես ընդհանրացնել կուտակված փորձը, իր ստրատեգիան ստուգել կյանքի հետ և այդ հիման վրա ստեղծագործաբար հարստացնել տեսական զինանոցը, ճշգրտել քաղաքական կուրսը։ Այդ իմաստով կարևոր ուղենիշներ եղան ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումները, մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի ելույթները։ Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ հասուն սոցիալիզմի տեսության զարգացման, երկրի առջև ծառացած հեռանկարային խնդիրների բնույթի ըմբռնման գործում նոր, խոշոր առաջընթաց քայլ է արված։ Այդ խնդիրների կոմպլեքսը հանգում է զարգացած սոցիալիզմի կատարելագործմանը։

Սովետական հասարակության կյանքում, ինչպես նշում է Յու. Վ. Անդրոպովը, կոմունիզմի առաջին փուլի տնտեսական, սոցիալական և մշակութային խնդիրների լուծման բնագավառում ձեռք բերված անվիճելի հաջողությունները, կոմունիստական ապագայի ամրապնդվող ծիլերը զուգորդվում են անցյալից մեզ մնացած մի շարք դեռևս չլուծված պրոբլեմների հետ։ Ի լրումն այդ ամենի, այն, ինչ մենք օբյեկտիվ կամ սուբյեկտիվ պատճառներով չկարողացանք ավելի շուտ անել. երկրի նյութական և հոգևոր պոտենցիալի հետագա մեծացում, սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմունքների լիակատար զարգացման հիման վրա նրա բոլոր հնարավորությունների և առավելությունների ավելի արդյունավետ օգտագործում. այսպիսին է այսօր կուսակցության և ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությունը։

Զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործման ամբողջ աշխատանքի վճռական ուղղությունը եղել և մնում է էկոնոմիկայի վերելքը։ Էկոնոմիկան մեր հայրենիքի սոցիալական ու հոգևոր առաջընթացի, նրա անվտանգության և միջազգային հեղինակության ամրապնդման նյութական հիմքն է։

Տարեցտարի մեծանում են հասարակության պահանջմունքները, սովետական մարդկանց պահանջները։ Եվ արդի պայմաններում կա դրանց բավարարման միայն մեկ ուղի՝ աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության արմատական բարձրացում՝ համակողմանի ինտենսիվացման հիման վրա։ Մենք գիտենք դրա գլխավոր գումարելիները. հիմնական ֆոնդերի ավելի լավ օգտագործում, նյութական և աշխատանքային ռեսուրսների ըստ ամենայնի խնայողություն, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների լայն և արագ ներդրում, արտադրանքի որակի բարձրացում, բարձր կազմակերպվածություն և աշխատանքային կարգապահություն։ Կուսակցությունը հստակորեն սահմանեց ժողովրդական տնտեսության հետագա աճի, ժողովրդի բարեկեցության բարձրացման հանգուցային ուղղությունները։ Դա պարենային ծրագրի կատարումն է, վառելիքաէներգետիկ կոմպլեքսի, մեքենաշինության, գիտատեխնիկական առաջընթացը բնորոշող բոլոր ճյուղերի զարգացումը, տրանսպորտի աշխատանքի բարելավումը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնումը և դրանց որակի բարձրացումը, սպասարկման ոլորտի զարգացումը։

Այժմ առաջին պլան է մղվում կազմակերպչական և գաղափարադաստիարակչական կոնկրետ աշխատանքը։ Գործի հենց այս կողմին գլխավոր ուշադրությունը նվիրեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան ու նոյեմբերյան, 1983 թվականի հունիսյան պլենումները։

Հիրավի համաժողովրդական արձագանք գտավ ավելի կազմակերպված աշխատելու, պլանային, ֆինանսական, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու մեր կուսակցության կոչը։ Աշխատավորներն այդ կոչին պա-

տասխանում են անձնվեր աշխատանքով, նոր հայրենասիրական ձեռնարկումներով։ Լայն թափ է ստացել «Փառք ու պատիվ՝ ըստ աշխատանքի» նշանաբանով մոսկվացիների նախաձեռնությամբ սկսված շարժումը։

Դրական արդյունքներն առկա են։ 1983 թվականի առաջին կիսամյակում բարելավվել են ժողովրդական տնտեսության զարգացման ցուցանիշները, արդյունաբերության մեջ պլանը կատարել են բոլոր մինիստրությունները և միութենական հանրապետությունները։ Արդյունաբերական արտադրության ծավալն անցած տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ մեծացել է 4,1 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 3,3 տոկոսով։ Շատ կարևոր է, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ չթուլացնի ջանքերը ժողովրդատնտեսական պլանների և ստանձնած պարտավորությունների կատարման ու գերակատարման համար, բոլոր մակարդակներով և բոլոր օղակներում հանուն կազմակերպվածության և կարգապահության մղվող պայքարում սոցիալիստական մրցությունը նպատակամղի ամենից առաջ արտադրության ինտենսիվացման խնդիրների լուծմանը։

Կարգապահության և կարգուկանոնի ամրապնդումը, սոցիալիստական մրցության զարգացումը պատշաճ արդյունք կարող են տալ միայն այն դեպքում, երբ դրանք զուգորդվում են տնտեսական ողջ մեխանիզմի կատարելագործման հետ։ Ցավոք, այդ ասպարեզում մեր աշխատանքը, ինչպես նշեց Յու. Վ. Անդրոպովը, ետ է մնացել սովետական հասարակության նյութատեխնիկական, սոցիալական և հոգևոր զարգացման ներկա մակարդակից բխող պահանջներից։ Այժմ կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում՝ նպատակամղված այն բանին, որ տնտեսական մեխանիզմն ապահովի համաժողովրդական պահանջմունքների օպտիմալ զուգորդումը աշխատավորական կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի շահերի հետ։ Տնտեսական պայմանները պետք է լրիվ չափով խրախուսեն ազնիվ, բարձրարտադրողական աշխատանքը և ոչ ձեռնտու դարձնեն առանց եռանդի, հին ձևով աշխատելը, պետք է նպաստեն ժողովրդական տնտեսության բոլոր օղակների առավել համաձայնեցվածությանը։ Սա է մեր էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, մասսաների աշխատանքային ակտիվության վերելքի անհրաժեշտ պայմանը։

Լուծելով դրա հետ կապված խնդիրները՝ կուսակցությունը պատշաճ ուշադրություն է նվիրում ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի հետևողական կիրառմանը, քանի որ դրանում է այսօր ամենից առաջ դրսևորվում մեր կարգերի սոցիալական արդարությունը։ Եվ այստեղ չկա ավելի հուսալի ուղի, քան նյութական ու բարոյական խրախուսման սիստեմի բարելավումը, աշխատանքի չափի ու սպառման չափի վերահսկման ամրապնդումը, յուրաքանչյուր մարդու հոգում բարեխղճորեն, ստեղծագործաբար աշխատելու պահանջի, այն ամենի հանդեպ անհանդուրժողականության դաստիարակումը, ինչը հակասում է մեր ապրելակերպին։

Հասուն սոցիալիզմի կատարելագործումը ենթադրում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքի հետագա ամրապնդում՝ պահպանելով բանվոր դասակարգի առաջատար դերը, կուսակցության ակտիվ ներգործում սոցիալ-դասակարգային, ազգային ու քաղաքական հարաբերությունների ողջ սիստեմի զարգացման վրա։ Մենք ղեկավարվում ենք հստակ, գիտականորեն հիմնավորված նպատակներով։ Դա մեր հասարակության անդասակարգ կառուցվածքի գոյավորումն է հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում։ Դա սովետական ազգերի ու ազգությունների անշեղ մերձեցումն է, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության ամրապնդումը։ Դա սոցիալիստական պետականության զարգացումն է, ժողովրդական իշխանության իրականացման առավել նոր ձևերի ու մեթոդների հաստատումը, որին ծառայում է նաև աշխատավորական կոլեկտիվների մասին վերջերս սահմանված օրենքը։

Տեսնել և իրատեսորեն գնահատել կատարվող բոլոր փոփոխությունները իրենց ողջ բարդությամբ հանդերձ, ժամանակին նկատել հասունացած հակասություններն ու պրոբլեմները, գտնել դրանց լուծման ուղիները. ահա թե ինչ



է պահանջում կյանքը, ահա թե ինչի վրա են կենտրոնացվում մեր կուսակցության ջանքերը։

Ընկերնե՛ր։ Այսօր առանձնապես ակնբախ է, որ տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծումն անհնար է առանց նոր մարդու կերպավորման նպատակին ուղղված մեր ողջ գաղափարադաստիարակչական ու պրոպագանդիստական գործունեության էական բարելավման։ Չէ՞ որ նոր մարդը ո՛չ միայն կոմունիստական հասարակության կարևորագույն նպատակն է, այլև պարտադիր նախապայմանը։ Ուստի և կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի պրոբլեմները քննարկվեցին Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումում։

Օրինաչափ է, որ պլենումի ուշադրության կենտրոնում էր մեր գաղափարատեսական ու քաղաքական գլխավոր փաստաթղթի՝ ՍՄԿԿ-ի ծրագրի նոր խմբագրության նախապատրաստման հարցը։ «...Կուսակցության ծրագիրը,— իր ճառում շեշտեց Յու. Վ. Անդրոպովը,— ժամանակակից պայմաններում նախ և առաջ պետք է լինի զարգացած սոցիալիզմի պլանաչափ ու համակողմանի կատարելագործման, հետևաբար նաև դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի ծրագիր»։ Նա խորապես բնութագրեց մոտակա տարիների և տեսանելի ապագայում սովետական հասարակության զարգացման հիմնական ուղիները։

Յու. Վ. Անդրոպովի ճառում, Կ. Ու. Չեռնենկոյի զեկուցման մեջ, պլենումի մյուս փաստաթղթերում ստեղծագործաբար իմաստավորված է ՍՄԿԿ-ի գաղափարախոսական գործունեության կուտակված փորձը, սահմանված են դրա կարևորագույն ուղղություններն ու նպատակները։ Պլենումը հստակ խնդիր դրեց. ուժեղացնել մեր ողջ գաղափարադաստիարակչական աշխատանքը, այն դարձնել ավելի խոր, ստեղծագործական, սովետական մարդկանց աճած պահանջմունքներին, ժամանակակից կյանքի իրողություններին համապատասխան։

Մի խոսքով, բանն այն մասին է, որ գաղափարատեսական, քաղաքական-դաստիարակչական, պրոպագանդիստական աշխատանքի բովանդակությունն ու ձևերը համապատասխանեցվեն կուսակցության ու ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությանը՝ հասուն սոցիալիզմի կատարելագործմանը, ներքին ու արտաքին այն պայմաններին, որոնցում ընթանում է մեր զարգացումը։

Ողջ ուժով շեշտվեց տնտեսական ու սոցիալ-քաղաքական հանգուցային խնդիրների կատարման համար պայքարի հետ գաղափարախոսական աշխատանքի ամենասերտ կապի անհրաժեշտությունը։ Միայն քաղաքական, կազմակերպչական ու տնտեսական գործունեության հետ գաղափարադաստիարակչական գործունեության միաձուլումն է տալիս անհրաժեշտ արդյունքը, ապահովում մեր պրոպագանդայի ռեալիզմը, ճշմարտացիությունն ու գործունությունը, նպաստում այնպիսի երևույթների հաղթահարմանը, ինչպիսին են կյանքից կտրվածությունը, ձևամոլությունն ու հանդիսամոլությունը։

Միջազգային իրադրության սրման, իմպերիալիզմի, նախ և առաջ ամերիկյան իմպերիալիզմի կողմից ՍՍՀՄ-ի, մյուս եղբայրական երկրների դեմ սանձազերծված կատաղի «հոգեբանական պատերազմի» պայմաններում առանձնակի կարևորություն են ստանում աշխատավորների դասակարգային դաստիարակության հետագա բարելավումը, քաղաքական զգոնության բարձրացումը, ինչպես միջազգային ասպարեզում, այնպես էլ երկրի ներսում սոցիալիզմի նվաճումների վառ, համոզիչ պրոպագանդան։ Պետք է հաստատակամորեն հակահարված տալ հակակոմունիզմին և հակասովետիզմին, մերկացնել և վիժեցնել դասակարգային թշնամու գաղափարախոսական դիվերսիաները, հենվելով հակապրոպագանդայի դինամիկ, արդյունավետ սիստեմի վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կենսագործումը ամբողջ կուսակցության գործն է։ Դա գաղափարախոսական կադրերից, յուրաքանչյուր կուսկազմակերպությունից և յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է հաստատակամություն ու նպատակասլացություն, համարձակություն

այն աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների որոնման գործում, որի նպատակն է մասսաների քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության մակարդակի բարձրացումը։

Ընկերնե՛ր։ Երկրի առջև ծառացած խնդիրների մասշտաբների ու բարդության աճն օրինաչափորեն հանգեցնում է ՍՄԿԿ-ի ղեկավար դերի հետագա մեծացման։ Եվ այստեղ մեզ համար չկա ոչինչ ավելի կարևոր, քան մասսաների հետ նրա կապերի հետագա ամրապնդումը, կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնության ապահովումը։

Լենինյան կուսակցության անշեղորեն ամրապնդվող հեղինակության, մասսաների հետ նրա կապերի ընդլայնման ու խորացման ցայտուն վկայությունն են կուսակցական շարքերի մշտական քանակական աճը և որակի բարելավումը։

Եթե ՌՍԴԲԿ II համագումարի ժամանակաշրջանում Ռուսաստանում կուսակցականների թիվը հասնում էր ընդամենը մոտ երեքուկես հազարի, ապա Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պահին նրանց թիվն արդեն 350 հազար էր։ «Հատիկից», ինչպես սովետական իշխանության առաջին տարիներին կուսակցությունն անվանում էր Լենինը, ներկայումս նա վերածվել է կոմունիզմի գործի մարտիկների 18-միլիոնանոց ավանգարդի։ Պահպանելով ու զարգացնելով իր պրոլետարական դասակարգային բնույթը՝ ՍՄԿԿ-ն հասուն սոցիալիզմի պայմաններում դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցությունը։ Դա միասնական, ներդաշնակ կազմակերպություն է, որն ունի հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա քաղաքական ու գաղափարական ներգործության միջոցների մեծահարուստ զինանոց։ Դա մի կուսակցություն է, որը կանգնած է սոցիալիստական հզոր պետության ղեկի մոտ։

Կուսակցության մարտունակության բարձրացումը, հասարակական զարգացման վրա, մասսաների վրա նրա ազդեցության մեծացումը հսկայական չափով պայմանավորված են կուսակցական աշխատանքի ոճի հետագա բարելավմամբ։ Կյանքը կուսակցական կազմակերպություններից, յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է խորապես ըմբռնել կուսակցության քաղաքականությունը, կարողանալ գիտականորեն հիմնավորված մոտեցում ցուցաբերել գործնական խնդիրների լուծմանը։

Չի կարելի հաջողությամբ ղեկավարել, չիմանալով կամ հաշվի չառնելով տնտեսական ու սոցիալական կյանքի օբյեկտիվ օրենքները։ Սա միշտ պետք է հիշել։ Համաժողովրդական շահերի առաջնության ապահովումը, մեր առաջընթացի արագացման համար բոլոր ռեզերվների ու հնարավորությունների օգտագործումը, գիտականությունն ու գործարարությունը, կայացվող որոշումների կատարման նկատմամբ վերահսկման ուժեղացումը կուսակցական ղեկավարման ոճի՝ հիրավի լենինյան ոճի կարևորագույն հատկանիշներն են, որը հետևողականորեն հաստատում է մեր Կենտրոնական կոմիտեն։

Կուսակցության կողմից ղեկավար դերի իրականացման հանգուցային օղակը կադրերի ընտրությունն է ու տեղաբաշխումը։ ՍՄԿԿ-ն միշտ էլ ամենաբարձր չափանիշներով է վերաբերվել ու վերաբերվում նրանց գաղափարաքաղաքական, բարոյական ու գործնական հատկանիշներին։ Այսօր չի կարելի լինել իսկական ղեկավար, չդրսևորելով առավելագույն պատասխանատվություն ու կազմակերպվածություն, կարգապահություն ու ստեղծագործական վերաբերմունք գործի հանդեպ, չապահովելով զգալի առաջընթաց իր աշխատանքային տեղամասում։ Եվ իհարկե, կուսակցական կազմակերպությունները կոչված են վճռականորեն հանդես գալու սոցիալիստական բարոյականության նորմերի ամեն տեսակ խախտումների դեմ, անգործունեության, բյուրոկրատիզմի, աշխատավորների շահերի արհամարհման, պաշտոնական դիրքի չարաշահման դրսևորումների դեմ։

Կատարելագործել կուսակցական ղեկավարման ոճը՝ նշանակում է բարձրացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների՝ որպես աշխատավորական կոլեկտիվների քաղաքական կորիզի, մարտունակությունը, նրանց նպատակամղել ամենօրյա աշխատանք կատարելու մասսաների շրջանում։ Պետք է հաստատակամորեն հասնել կուսակցական կյանքի լենինյան նորմերի



խստիվ կիրառման, զարգացնել ներկուսակցական դեմոկրատիան, քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կուսակցության յուրաքանչյուր անդամի նախաձեռնությունն ու ակտիվությունը։

ՍՄԿԿ-ի ղեկավար դերը ընդհանուր ոչինչ չունի հրամայական մեթոդների, պետական մարմիններին կամ հասարակական կազմակերպություններին փոխարինելու հետ։ Կուսակցությունը կատարում է իր դերը, հենվելով ժողովրդի շրջանում իր քաղաքական մեծ հեղինակության և գաղափարական ազդեցության վրա, ձգտելով հետզհետե ավելի լիովին ու ճշտիվ արտահայտել աշխատավորության արմատական շահերը, նրան համոզելով իր կուրսի ճշտության մեջ, նրան մոբիլիզացնելով դրա իրականացման համար։

Կասկած չկա, որ արդի փուլում կուսակցության առջև, ողջ սովետական ժողովրդի առջև ծառացող խնդիրները հաջողությամբ կլուծվեն։ Դրա գրավականն են ՍՄԿԿ-ի շարքերի անսասան համախմբվածությունը, կոմունիստների գաղափարական համոզվածությունը։ Դրա գրավականն է ժողովրդին իրենց ետևից տանելու, մարդկանց կուսակցական բոցաշունչ խոսքով ոգևորելու նրանց հմտությունը։ Մեր կարգերի ուժը մասսաների գիտակցականությունն է։ Այդ ուժը մեզ միշտ էլ օգնել է հաղթահարելու ամեն կարգի դժվարություններ, ամեն տեսակ արգելքներ։ Այսօր ևս մենք հաստատապես հենվում ենք դրա վրա։

## 3. ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏՆԵՐԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Ընկերնե՛ր։ ՌՍԴԲԿ-ն ծնվեց ռուսական հողում, բայց նա հենվում էր այն փորձի վրա, որը մինչ այդ կուտակել էր ամբողջ միջազգային հեղափոխական շարժումը։ Բոլշևիկյան կուսակցության տիպը, նրա ծրագիրը, նրա ստրատեգիան ու տակտիկան հաստատվում էին II ինտերնացիոնալի ղեկավարների օպորտունիստական հայացքների դեմ սուր, անզիջում բանավեճի պայմաններում։ Ըստ էության, դա Լենինի պատասխանն էր այն հարցին, թե ինչ պետք է անի ո՛չ միայն ռուսաստանյան, այլև ամբողջ պրոլետարական շարժումը։

«Ի՞նչ անել» գրքի հենց սկզբում Լենինը զետեղել էր հակիրճ, ընդամենը մի քանի տողանոց ծանոթագրություն։ «Գուցե,— հարցնում էր նա,— սոցիալիստական օպորտունիզմի դեմ այս առաջին, իրոք միջազգային գոտեմարտում միջազգային հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան բավականաչափ ամրանա, որպեսզի վերջ դնի վաղուց ի վեր արդեն Եվրոպայում իշխող քաղաքական ռեակցիային»։ Այն օրերին բանվորական միջավայրում անգամ ոչ բոլորն էին հավատում, որ այդ ժամանակն արդեն մոտ է։

Բայց ռուսաստանյան մի բուռ մարքսիստ ինտերնացիոնալիստներ, որոնք հավաքվել էին ՌՍԴԲԿ II համագումարին, խթան հանդիսացան այն պրոցեսների համար, որոնք անճանաչելիորեն փոխեցին թե՛ Ռուսաստանի և թե ամբողջ աշխարհի դեմքը։ «Հոկտեմբերյան հեղափոխության քառամյա տարեդարձի առթիվ» հոդվածում Վ. Ի. Լենինը շեշտում էր. «...Մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք նրանով, որ մեզ բախտ վիճակվեց սկսելու սովետական պետության կառուցումը, դրանով սկսելու համաշխարհային պատմության նոր դարագլուխ, այն նոր դասակարգի տիրապետության դարագլուխը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրա, դեպի մարդկության ազատագրում կապիտալիզմի լծից, իմպերիալիստական պատերազմներից»։

Հոկտեմբերի հաղթանակի, բոլշևիկների գաղափարների ու քաղաքականության անմիջական ազդեցությամբ բարձրացավ ու ձևավորվեց ժամանակակից կոմունիստական շարժումը։ Լենինիզմը դարձել է բանվոր դասակարգի միջազգային քաղաքական հզոր հոսանքը։

Կոմունիստական շարժումը, որի անկապտելի մասը եղել և մնում է ՍՄԿԿ-ն, դժվարին ու հերոսական ուղի է անցել։ Նա աճել ու ամրապնդվել է

կապիտալի դեմ մղված դասակարգային մարտերում, որոնցում պատմական
հաղթանակներ է նվաճել: Նա ճաշակել է նաև պարտությունների դառնությու-
նը, որոնք, սակայն, նույնպես կոփել են նրան, հարստացրել նոր փորձով:
Եվ այսօր կոմունիստական շարժումը, որը ներառնում է գրեթե հարյուր իրա-
վահավասար և ինքնուրույն կուսակցություններ, ամենաազդեցիկ ինտերնա-
ցիոնալ քաղաքական ուժն է, որը հանդես է գալիս իմպերիալիզմի, պատերազ-
մի դեմ, հանուն խաղաղության, ժողովուրդների ազգային ու սոցիալական
ազատագրության: Հսկայական են կոմունիստական շարժման իրական հնա-
րավորությունները: ՍՄԿԿ-ն այդ հնարավորությունների կենսագործման պար-
տադիր նախադրյալը համարում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավոր-
ների կենսական շահերի համար, մեր մեծ ուսմունքի հեղափոխական էությու-
նը ամլացնելու և աղավաղելու օպորտունիստների ու ռևիզիոնիստների փորձե-
րի դեմ կոմունիստների հետևողական պայքարը, եղբայրական կուսակցու-
թյունների համախմբվածությունը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի,
պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով ամրապնդումը:
ՍՄԿԿ-ն, բնականաբար, նախընտրելի ուշադրություն է նվիրում սոցիա-
լիստական պետությունների մարքս-լենինյան կուսակցությունների հետ եղ-
բայրական կապերի խորացմանն ու զարգացմանը: Չէ՞ որ նրանց հարաբե-
րությունների մասշտաբներով, բնույթով, բուն մթնոլորտով են վճռական չա-
փով պայմանավորված մեր ընկերակցության միասնության ամրապնդումը,
նրա միջազգային հեղինակության աճը, սոցիալիստական շինարարության
հաջողությունները:
Դեռ մինչև մեծ Հոկտեմբերի հաղթանակը Լենինը նշում էր, որ «տարբեր
երկրներում միատեսակ սկզբունքային լուծում պահանջող հարցերի թիվը» ավե-
լանալու մեջ առանձնապես վառ կերպով է արտահայտվում «սոցիալիզմի հա-
մախմբումն իբրև մի միջազգային ուժ»: Համաշխարհային սոցիալիստական
սիստեմի գրեթե քառասնամյա զարգացումը հաստատեց, որ դա հենց այդպես
է: Այն համանման և ընդհանուր պրոբլեմների շրջանակը, որ պետք է լուծեն
կառավարող մարքս-լենինյան կուսակցությունները, հիրավի շատ լայն է: Հե-
տևաբար և առավել հրամայական է դառնում բոլոր ոլորտներում սոցիալիս-
տական ընկերակցության երկրների համագործակցության արդյունավետու-
թյունը բարձրացնելու անհրաժեշտությունը: Դա թե՛ նրանց քաղաքական փոխ-
գործողության ամրապնդումն է, թե՛ տնտեսական ինտեգրացման փոխադրու-
մը որակապես նոր մակարդակի, թե՛ եղբայրական ժողովուրդների հետագա
գաղափարական մերձեցումը:
Համատեղ աշխատանքը միշտ էլ ավելի հաջող է ընթանում, երբ մեկի
փորձը դառնում է բոլորի սեփականությունը: Սոցիալիստական երկրների եղ-
բայրական կուսակցություններից յուրաքանչյուրը գործում է իր յուրահատուկ
պայմաններում: Ուստի նրանք բոլորն էլ եղել և մնում են որոշ իմաստով
ռահվիրաներ սոցիալիզմի ճանապարհին, իրենց ինքնատիպ ավանդն են ներ-
դնում համաշխարհային հեղափոխական փորձի գանձարանում: Այն օգտագոր-
ծելու հմտությունը դեպի ընդհանուր նպատակ և՛ ավելի հաջող, և՛ ավելի
արագ ընթանալու պարտադիր պայմաններից մեկն է: Այս ճշմարտությունն
ստուգված է ժամանակի կողմից:
Պատմությունը, ընդ որում և տակավին վերջին շրջանինը, համոզչորեն
ցույց տվեց նաև մի այլ բան: Լուրջ պրոբլեմներ և անգամ ճգնաժամային իրա-
վիճակներ են առաջանում այն ժամանակ, երբ անտեսվում են հասարակական
զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, երբ փորձում են մեխանիկորեն
ընդօրինակել եղբայրական կուսակցությունների կուտակած փորձը կամ, ընդ-
հակառակը, անտեսում են այն:
Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումն ու ամրապըն-
դումը վերափոխեց ժամանակակից աշխարհի ողջ դեմքը: Պետությունների սո-
ցիալիստական ընկերակցության բուն գոյությունը, նրանց հետևողական հա-
կաիմպերիալիստական քաղաքականությունը, ինտերնացիոնալ համերաշխու-
թյունը քաղաքական ու բարոյական հզոր աջակցություն են աշխարհի ոչ սո-
ցիալիստական մասի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների



համար: Այսօր այդ կուսակցություններն արդեն 80-ից ավելի են: Դրանցից
բնավ էլ բոլորը չէ, որ լեգալ են գործում, միատեսակ չեն նրանց շարքերի
թվակազմը, ազդեցությունը իրենց երկրների քաղաքական կյանքում: Բայց մո-
նոպոլիաների լծի դեմ, ռեակցիայի և ագրեսիայի ուժերի դեմ, սոցիալական
առաջընթացի, հասարակության հեղափոխական վերափոխման համար անձ-
նըվեր պայքարով նրանք իրենց կողմն են նվաճում աշխատավոր ժողովրդի
ավելի ու ավելի լայն խավերի, ամրապնդում իրենց դիրքերը մասսաների մեջ:
Սովետական մարդիկ գիտեն, թե դա որքան դժվարությամբ է տրվում եղ-
բայրական կուսակցություններին: Չէ՞ որ նրանք իրենց վրա զգում են կապի-
տալի ծանր ձեռքը, որը որոշ դեպքերում դաժան բռնությունների մեթոդներով,
այլ դեպքերում՝ քաղաքական ու գաղափարախոսական ճնշման «սահմանա-
դրական» ձևերին դիմելով, անխնա հալածում է կոմունիստներին: Նա կեղ-
տոտ կեղծիքի ու զրպարտանքի հեղեղ է տեղում մեր ընդհանուր նպատակնե-
րի և իդեալների հասցեին, փորձում խարխլել եղբայրական կուսակցություն-
ների գործողությունների միասնությունը, նրանց հակադրել միմյանց:
Մեր կուսակցությունը լավ է հասկանում և հաշվի առնում այն պայման-
ների ողջ բազմազանությունն ու բարդությունը, որոնցում պայքար են մղում
կոմունիստական կուսակցությունները: Վերջիններիս հետ իր հարաբերություն-
ները նա խարսխում է իրավահավասարության, փոխադարձ հարգանքի ու
վստահության վրա: Նա անշեղորեն վարում է կոմունիստական ու բանվորա-
կան կուսակցությունների համախմբվածությունն ամրապնդելու կուրս, գտնե-
լով, որ եթե այս կամ այն հարցում տարաձայնություններ էլ են ծագում սո-
ցիալիզմի առանձին երկրների, ինչպես նաև համաշխարհային կոմունիստա-
կան շարժման եղբայրական որոշ կուսակցությունների միջև, ապա անհրա-
ժեշտ է դրանք հաղթահարել մարքս-լենինյան հիմունքներով:
Հավատարիմ Լենինի պատգամներին՝ ՍՄԿԿ-ն իր առաջնագույն ինտեր-
նացիոնալ պարտքն է համարում զարգացնել եղբայրական համագործակցու-
թյունը մարքս-լենինյան բոլոր կուսակցությունների՝ մեր բարեկամների ու հա-
մախոհների հետ:
Ընդլայնվում և ամրապնդվում են ՍՄԿԿ-ի կապերը հեղափոխական դե-
մոկրատական կուսակցությունների հետ: Նրանց ազդեցության աճը, հակա-
իմպերիալիստական պայքարում նրանց դիրքերի ամրապնդումը, կոմունիս-
տական շարժման հետ նրանցից շատերի գաղափարաքաղաքական մերձեցումը
արտացոլում են այն մեծ փոփոխությունները, որ լենինիզմի գաղափարների ու
պրակտիկայի ազդեցությամբ տեղի են ունեցել և տեղի են ունենում Ասիայում,
Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում: Այդ կուսակցությունների հետ ՍՄԿԿ-ի,
բոլոր կոմունիստների համերաշխությունը համաշխարհային հեղափոխական
պրոցեսի ընդլայնման ու խորացման կարևորագույն պայմաններից մեկն է:
Ընկերնե՛ր: Մեծ Հոկտեմբերի հաղթանակը նշանավորեց մի պետության
համաշխարհային ասպարեզ դուրս գալը, որտեղ ամբողջ քաղաքական իշխա-
նությունը մարդկության պատմության մեջ առաջին անգամ անցավ աշխատա-
վոր ժողովրդի ձեռքը: Դա հեղափոխականացրեց միջազգային հարաբերու-
թյունները: Միաժամանակ դա սկզբունքորեն նոր խնդիրներ առաջադրեց բոլ-
շևիկների կուսակցությանը:
Պետք էր մշակել հաղթանակած պրոլետարիատի արտաքին քաղաքակա-
նության տեսական հիմքերը, ձևակերպել դրա կոնկրետ նպատակներն ու ուղ-
ղությունները, դրանք մարմնավորել պրակտիկ գործունեությամբ, որն ուղղը-
ված լիներ սովետական պետության միջազգային դիրքերի հաստատմանը:
Այդ խնդիրների լուծման գործում որոշակի ավանդ ներդրեց Վ. Ի. Լենինը:
Այդ ժամանակվանից ի վեր շատ բան է արմատապես փոխվել միջազ-
գային ասպարեզում: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյացու-
մը, գաղութատիրության փլատակների վրա տասնյակ պետությունների երե-
վան գալը, որոնք հակաիմպերիալիստական դիրքավորումներ են գրավում,
ազատագրական ու հակառազմական շարժումների աճը՝ այդ ամենը հանգեց-
րեց սոցիալ-դասակարգային ուժերի որակապես նոր հարաբերակցության՝

կապիտալի դեմ մղված դասակարգային մարտերում, որոնցում պատմական հաղթանակներ է նվաճել: Նա ճաշակել է նաև պարտությունների դառնությունը, որոնք, սակայն, նույնպես կոփել են նրան, հարստացրել նոր փորձով: Եվ այսօր կոմունիստական շարժումը, որը ներառնում է գրեթե հարյուր իրավահավասար և ինքնուրույն կուսակցություններ, ամենաազդեցիկ ինտերնացիոնալ քաղաքական ուժն է, որը հանդես է գալիս իմպերիալիզմի, պատերազմի դեմ, հանուն խաղաղության, ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրության: Հսկայական են կոմունիստական շարժման իրական հնարավորությունները: ՍՄԿԿ-ն այդ հնարավորությունների կենսագործման պարտադիր նախադրյալը համարում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շահերի համար, մեր մեծ ուսմունքի հեղափոխական էությունը ամլացնելու և աղավաղելու օպորտունիստների ու ռևիզիոնիստների փորձերի դեմ կոմունիստների հետևողական պայքարը, եղբայրական կուսակցությունների համախմբվածությունը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով ամրապնդումը:

ՍՄԿԿ-ն, բնականաբար, նախընտրելի ուշադրություն է նվիրում սոցիալիստական պետությունների մարքս-լենինյան կուսակցությունների հետ եղբայրական կապերի խորացմանն ու զարգացմանը: Չէ՛ որ նրանց հարաբերությունների մասշտաբներով, բնույթով, բուն մթնոլորտով են վճռական չափով պայմանավորված մեր ընկերակցության միասնության ամրապնդումը, նրա միջազգային հեղինակության աճը, սոցիալիստական շինարարության հաջողությունները:

Դեռ մինչև մեծ Հոկտեմբերի հաղթանակը Լենինը նշում էր, որ «տարբեր երկրներում միատեսակ սկզբունքային լուծում պահանջող հարցերի թվի» ավելանալու մեջ առանձնապես վառ կերպով է արտահայտվում «սոցիալիզմի համախմբումն իբրև մի միջազգային ուժ»: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի գրեթե քառասնամյա զարգացումը հաստատեց, որ դա հենց այդպես է: Այն համանման և ընդհանուր պրոբլեմների շրջանակը, որ պետք է լուծեն կառավարող մարքս-լենինյան կուսակցությունները, հիրավի շատ լայն է: Հետևաբար և առավել հրամայական է դառնում բոլոր ոլորտներում սոցիալիստական ընկերակցության երկրների համագործակցության արդյունավետությունը բարձրացնելու անհրաժեշտությունը: Դա թե՛ նրանց քաղաքական փոխգործողության ամրապնդումն է, թե՛ տնտեսական ինտեգրացման փոխադրումը որակապես նոր մակարդակի, թե՛ եղբայրական ժողովուրդների հետագա գաղափարական մերձեցումը:

Համատեղ աշխատանքը միշտ էլ ավելի հաջող է ընթանում, երբ մեկի փորձը դառնում է բոլորի սեփականությունը: Սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցություններից յուրաքանչյուրը գործում է իր յուրահատուկ պայմաններում: Ուստի նրանք բոլորն էլ եղել և մնում են որոշ իմաստով ռահվիրաներ սոցիալիզմի ճանապարհին, իրենց ինքնատիպ ավանդն են ներդնում համաշխարհային հեղափոխական փորձի գանձարանում: Այն օգտագործելու հմտությունը դեպի ընդհանուր նպատակ և՛ ավելի հաջող, և՛ ավելի արագ ընթանալու պարտադիր պայմաններից մեկն է: Այս ճշմարտությունն ստուգված է ժամանակի կողմից:

Պատմությունը, ընդ որում և տակավին վերջին շրջանինը, համոզչորեն ցույց տվեց նաև մի այլ բան: Լուրջ պրոբլեմներ և անգամ ճգնաժամային իրավիճակներ են առաջանում այն ժամանակ, երբ անտեսվում են հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, երբ փորձում են մեխանիկորեն ընդօրինակել եղբայրական կուսակցությունների կուտակած փորձը կամ, ընդհակառակը, անտեսում են այն:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումն ու ամրապնդումը վերափոխեց ժամանակակից աշխարհի ողջ դեմքը: Պետությունների սոցիալիստական ընկերակցության բուն գոյությունը, նրանց հետևողական հակաիմպերիալիստական քաղաքականությունը, ինտերնացիոնալ համերաշխությունը քաղաքական ու բարոյական հզոր աջակցություն են աշխարհի ոչ սոցիալիստական մասի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների



համար: Այսօր այդ կուսակցություններն արդեն 80-ից ավելի են: Դրանցից բնավ էլ բոլորը չէ, որ լեգալ են գործում, միատեսակ չեն նրանց շարքերի թվակազմը, ազդեցությունը իրենց երկրների քաղաքական կյանքում: Բայց մոնոպոլիաների լծի դեմ, ռեակցիայի և ագրեսիայի ուժերի դեմ, սոցիալական առաջընթացի, հասարակության հեղափոխական վերափոխման համար անձնվեր պայքարով նրանք իրենց կողմն են նվաճում աշխատավոր ժողովրդի ավելի ու ավելի լայն խավերի, ամրապնդում իրենց դիրքերը մասսաների մեջ:

Սովետական մարդիկ գիտեն, թե դա որքան դժվարությամբ է տրվում եղբայրական կուսակցություններին: Չէ՛ որ նրանք իրենց վրա զգում են կապիտալի ծանր ձեռքը, որը որոշ դեպքերում դաժան բռնությունների մեթոդներով, այլ դեպքերում՝ քաղաքական ու գաղափարախոսական ճնշման «սահմանադրական» ձևերին դիմելով, անխնա հալածում է կոմունիստներին: Նա կեղտոտ կեղծիքի ու զրպարտանքի հեղեղ է տեղում մեր ընդհանուր նպատակների և իդեալների հասցեին, փորձում խարխլել եղբայրական կուսակցությունների գործողությունների միասնությունը, նրանց հակադրել միմյանց:

Մեր կուսակցությունը լավ է հասկանում և հաշվի առնում այն պայմանների ողջ բազմազանությունն ու բարդությունը, որոնցում պայքար են մղում կոմունիստական կուսակցությունները: Վերջիններիս հետ իր հարաբերությունները նա խարսխում է իրավահավասարության, փոխադարձ հարգանքի ու վստահության վրա: Նա անշեղորեն վարում է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համախմբվածությունն ամրապնդելու կուրս, գտնելով, որ եթե այս կամ այն հարցում տարաձայնություններ էլ են ծագում սոցիալիզմի առանձին երկրների, ինչպես նաև համաշխարհային կոմունիստական շարժման եղբայրական որոշ կուսակցությունների միջև, ապա անհրաժեշտ է դրանք հաղթահարել մարքս-լենինյան հիմունքներով:

Հավատարիմ Լենինի պատգամներին՝ ՍՄԿԿ-ն իր առաջնագույն ինտերնացիոնալ պարտքն է համարում զարգացնել եղբայրական համագործակցությունը մարքս-լենինյան բոլոր կուսակցությունների՝ մեր բարեկամների ու համախոհների հետ:

Ընդլայնվում և ամրապնդվում են ՍՄԿԿ-ի կապերը հեղափոխական դեմոկրատական կուսակցությունների հետ: Նրանց ազդեցության աճը, հակաիմպերիալիստական պայքարում նրանց դիրքերի ամրապնդումը, կոմունիստական շարժման հետ նրանցից շատերի գաղափարաքաղաքական մերձեցումը արտացոլում են այն մեծ փոփոխությունները, որ լենինիզմի գաղափարների ու պրակտիկայի ազդեցությամբ տեղի են ունեցել և տեղի են ունենում Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում: Այդ կուսակցությունների հետ ՍՄԿԿ-ի, բոլոր կոմունիստների համերաշխությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսի ընդլայնման ու խորացման կարևորագույն պայմաններից մեկն է:

Ընկերնե՛ր: Մեծ Հոկտեմբերի հաղթանակը նշանավորեց մի պետության համաշխարհային ասպարեզ դուրս գալը, որտեղ ամբողջ քաղաքական իշխանությունը մարդկության պատմության մեջ առաջին անգամ անցավ աշխատավոր ժողովրդի ձեռքը: Դա հեղափոխականացրեց միջազգային հարաբերությունները: Միաժամանակ դա սկզբունքորեն նոր խնդիրներ առաջադրեց բոլշևիկների կուսակցությանը:

Պետք էր մշակել հաղթանակած պրոլետարիատի արտաքին քաղաքականության տեսական հիմքերը, ձևակերպել դրա կոնկրետ նպատակներն ու ուղղությունները, դրանք մարմնավորել պրակտիկ գործունեությամբ, որն ուղղված լիներ սովետական պետության միջազգային դիրքերի հաստատմանը: Այդ խնդիրների լուծման գործում որոշակի ավանդ ներդրեց Վ. Ի. Լենինը:

Այդ ժամանակվանից ի վեր շատ բան է արմատապես փոխվել միջազգային ասպարեզում: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյացումը, գաղութատիրության փլատակների վրա տասնյակ պետությունների երևան գալը, որոնք հակաիմպերիալիստական դիրքավորումներ են գրավում, ազատագրական ու հակառազմական շարժումների աճը՝ այդ ամենը հանգեցրեց սոցիալ-դասակարգային ուժերի որակապես նոր հարաբերակցության՝

համապարփակ մասշտաբով։ Անչափ աճել են սովետական արտաքին քաղաքականության հնարավորությունները։ Բայց բարդացել են նաև այն պրոբլեմները, որ ծառանում են մեր առջև։ Դա հատկապես պարզորոշ երևում է այսօր, երբ անչափ սրվել է բևեռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների, երկու քաղաքական կուրսերի՝ սոցիալիզմի և իմպերիալիզմի հակամարտությունը։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումն ուժեղացրեց համաշխարհային զարգացման ընթացքը միջազգային լարվածության սրման միջոցով շրջելու իմպերիալիստական շրջանների ձգտումը։ Այդ ագրեսիվ կուրսը հանգեցրեց միջուկային պատերազմի վտանգի աճին։

Փաստերը համոզչորեն վկայում են, որ պատերազմի սպառնալիքի գլխավոր աղբյուրը ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմի հակակոմունիստական, հակասովետական քաղաքականությունն է։ Համակված ռազմատենչ մոլուցքով՝ նա ձգտում է Արևմտյան Եվրոպայում տեղաբաշխել իր նոր հրթիռները, սպառազինությունների սահմանափակման բանակցություններն օգտագործել որպես զանգվածային բնաջնջման միջոցների անզուսպ ավելացման իր պլանների քողածածկույթ։ Վաշինգտոնը բանը հանգեցնում է հիմնական իմպերիալիստական տերությունների ռազմական կոալիցիայի ստեղծմանը, որն ուղղված է ՍՍՀՄ-ի, մյուս սոցիալիստական պետությունների դեմ, բոլոր դեմոկրատական, առաջադիմական ուժերի դեմ։ Նա շեշտը դրել է նաև ՍՍՀՄ-ի և Վարշավայի պայմանագրի երկրների նկատմամբ ԱՄՆ-ի ու ՆԱՏՕ-ի ռազմական գերազանցության հասնելու վրա։ Մեր կուսակցության ու ժողովրդի, սոցիալիզմի եղբայրական երկրների պատասխանը հաստատակամ է ու միանշանակ՝ դա չի լինի։

Սովետական արտաքին քաղաքականությունը հետհոկտեմբերյան առաջին իսկ օրերից ակտիվ հակազդում է թելադրանքի և ագրեսիայի իմպերիալիստական քաղաքականությանը։ Մեզ պատերազմ հարկավոր չէ։ Մենք եղել և մնում ենք սպառազինությունների մրցավազքի ամենահետևողական հակառակորդները, մրցավազք, որը ծանր բեռ է դնում ժողովուրդների, այդ թվում և սոցիալիստական պետությունների վրա։ Բայց սովետական մարդիկ լավ գիտեն, թե ինչ է իմպերիալիզմը, թե ինչ հրեշավոր հանցագործությունների է ընդունակ նա։ Բավական է հիշել, օրինակ, թե նա ներկայումս ինչ չարագործություններ է կատարում Կենտրոնական Ամերիկայում և Մերձավոր Արևելքում, Աֆրիկայում և Ասիայում։ Կոմունիզմի դեմ ԱՄՆ-ի պրեզիդենտի հայտարարած հերթական «խաչակրաց արշավանքը» ըստ էության ուղղված է խաղաղության, ազատության, դեմոկրատիայի և պրոգրեսի բոլոր ուժերի դեմ։ Իմպերիալիզմի անբարոյական, մարդատյաց քաղաքականությունն առանձնահատուկ վտանգ է կրում իր մեջ, քանի որ այն բխում է միջուկային պատերազմի «ընդունելության» խելահեղ թեզիսից։

Մեր կուսակցությունը ամեն ինչ արել է և կանի, որպեսզի սովետական ժողովրդին, եղբայրական երկրների ժողովուրդներին պաշտպանի ամեն տեսակ անակնկալներից, սոցիալիստական նվաճումների դեմ ուղղված ամեն տեսակ ոտնձգություններից։ Մենք այսուհետ ևս անդուլ ուշադրություն կդարձնենք մեր պանծալի սովետական զինված ուժերի կատարելագործմանը, Վարշավայի պաշտպանական պայմանագրի ամրապնդմանը, որոնք անսասանորեն կանգնած են խաղաղության պաշտպանության դիրքերում։

ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքականության ուժն ու արդյունավետությունն այն է, որ նա անշեղորեն ընթանում է Լենինի հարթած ուղիով, առաջնորդվում սովետական ժողովրդի՝ բովանդակ աշխատավոր մարդկության բարձրագույն շահերով։ Նա հենվում է ժամանակակից համաշխարհային զարգացման գիտական վերլուծության վրա։ Հսկայական նշանակություն ունի մեր կուսակցության այն հետևությունների տեսական հիմնավորումը, որ ներկա պայմաններում չկա համաշխարհային պատերազմի ճակատագրական անխուսափելիություն, իսկ միջուկային աղետի միակ խելամիտ այլընտրանքը կարող է լինել միայն տարբեր հասարակարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը։



Պրակտիկան լիովին հաստատեց այդ հետևությունների ճշտությունը, որոնք ցայտուն մարմնավորվել են ՍՄԿԿ XXVI համագումարի առաջ քաշած խաղաղության 80-ական թվականների ծրագրում։

Միջազգային գործերի նկատմամբ մեր կուսակցության վերաբերմունքը ըստ էության արտացոլում է խաղաղության մեր կոմունիստական փիլիսոփայությունը։ Հենց այդ փիլիսոփայությունն է ընկած այն կոնստրուկտիվ առաջարկությունների հիմքում, որոնցով վերջին ժամանակներս հանդես եկավ Սովետական Միությունը, որ բովանդակում են Յու. Վ. Անդրոպովի ելույթները։ Դրանցում շարադրված է ռազմական դիմակայության մակարդակն արմատապես նվազեցնելու ամբողջական ու ռեալիստական պլատֆորմ, որը հենվում է հավասարության ու միատեսակ անվտանգության սկզբունքների վրա։ Դա միջազգային բոլոր առկա պրոբլեմները բանակցությունների միջոցով արդարացիորեն լուծելու նախադրյալն է։

ՍՄԿԿ-ի սկզբունքային արտաքին քաղաքական դիրքորոշմանը համամիտ են և այն պաշտպանում են եղբայրական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։ Դա ցույց տվեց նաև սոցիալիստական ընկերակցության յոթ պետությունների ղեկավարների մեկ ամիս առաջ Մոսկվայում կայացած հանդիպումը։ Այնտեղ կրկին շեշտվեց մեր երկրների վճռականությունը՝ ոչ մի դեպքում թույլ չտալ ռազմական գերազանցություն իրենց նկատմամբ, հնարավոր ամեն ինչ անել խաղաղության պահպանման և ամրապնդման համար։ Համատեղ հայտարարության հանգիստ, կշռադատված տոնը, դրա կոնստրուկտիվ բնույթը ևս ծանրակշիռ ապացույց են այն բանի, որ եղբայրական երկրներն անշեղորեն հանդես են գալիս միջուկային սպառազինությունների բնագավառում մրցակցելու դեմ, ամեն տեսակ ռազմական ախոյանության դեմ։ «Նրանք,— նշվում է այդ փաստաթղթում,— հաստատ համոզված են, որ ոչ մի համաշխարհային պրոբլեմ, ներառյալ սոցիալիզմի և կապիտալիզմի պատմական վեճը, չի կարող լուծվել ռազմական ճանապարհով»։

Լենինյան կուսակցությանը վիճակվեց առաջինը հարթել սոցիալիզմի հաղթանակի ուղին։ Իսկ դա շատ բան է պարտավորեցնում. չէ՞ որ քիչ է պարզապես առջևից ընթանալը, պետք է անպայման առաջ ընթանալ՝ պաշտպանելով և հաստատելով նորը, առաջավորը։ ՍՄԿԿ-ն հենց այդպես էլ վարվում է։ Ընդ որում, գործ ունենալով նոր հասարակության կառուցման և սովետական ժողովրդի սոցիալիստական նվաճումների պաշտպանության ամենաբարդ խնդիրների հետ, մեր կուսակցությունը փնտրում է այնպիսի լուծումներ, որոնք լիովին բխեին համաշխարհային սոցիալիզմի կոմունիստական ու բանվորական շարժման շահերից, համայն մարդկության կենսական շահերից։

Ում շատ է տրված, քանիցս ասել է Լենինը, նրանից շատ էլ պահանջվում է։ Կարելի է ասել, որ այս բառերը եղել և մնում են միջազգային ասպարեզում լենինյան կուսակցության ծավալած գործունեության յուրօրինակ նշանաբանը։

Սովետական կոմունիստները հիանալի են հասկանում այն պատասխանատվության ամբողջ չափը, որ իրենց վրա դրել է պատմությունը։ Գտնվել նման պատասխանատվության բարձրության վրա՝ նշանակում է լինել ինտերնացիոնալիստ ոչ թե խոսքով, այլ գործով։ Դրանով է միշտ աչքի ընկել և այսօր էլ աչքի է ընկնում մեր կուսակցության քաղաքականությունը։ Դա միշտ էլ հանդիսացել և հանդիսանում է նրա իրավացիության և ուժի, հեղափոխական շարժման մեջ, մեր մոլորակի բոլոր ազնիվ մարդկանց շրջանում նրա բարձր հեղինակության աղբյուրը։

Ընկերնե՛ր։

Եզակի, հերոսական է Վ. Ի. Լենինի ստեղծած՝ հեղափոխականների մեծ կազմակերպության ճակատագիրը։ Նա 80 տարի համարձակ ընթանում է պատմության խոպանով, մարդկության առջև բացելով հասարակական առաջընթացի նոր հորիզոններ։

Սոցիալական ամենալայն ստեղծագործությամբ է տոգորված ՍՄԿԿ-ի, սովետական ժողովրդի հեղափոխականորեն վերափոխիչ ողջ գործունեությունը։

Դա հենվում է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացության, իրականության նկատմամբ գիտական մոտեցման վրա։ Մարքսիզմ-լենինիզմ՝ ահա մեր կուսակցության ամենահաղթ զենքը։ Մարքսի—Էնգելսի—Լենինի անմահ ուսմունքն ապահովում է կուսակցության առաջադրած նպատակների հստակությունը, դրանք իրականացնելու միջոցների գործունությունը։ Հենց այդ ուսմունքն է մեր կուսակցության բնորոշ հեռանկարայնության զգացման աղբյուրը, առանց որի չի կարող հաջողությամբ զարգանալ սոցիալիստական հասարակությունը։

Սովետական ժողովուրդը վստահությամբ է նայում ապագային, ամբողջովին վստահում է կոմունիստների կուսակցությանը, սոցիալական լավատեսության կուսակցությանը։ Այդ լավատեսությունը սովետական երկրի պատմության ծնունդն է, մեր ուժի, մեր ընտրած ուղու ճշտության գիտակցման ծնունդը։

Մենք հավատում ենք բոլշևիզմին, որովհետև նա գործով է ապացուցել իր հզոր, կազմակերպական, ստեղծարար, անհաղթելի հզորությունը, աշխատանքի ազատագրման, արդարացի, սոցիալիստական հիմունքներով հասարակության վերափոխման, երկրագնդի վրա խաղաղության ու կյանքի համար մղվող պայքարում հեղափոխական հաղթական ստրատեգիայի ու տակտիկայի օրինակ ծառայելու ընդունակությունը։

Թող սովետական ժողովրդի մեծագործություններում ապրի, նորանոր ու նորանոր միլիոնավոր մարդկանց սրտերում արձագանքի գարիս մեծ ճշմարտությունը՝ կոմունիստ լենինյանների ճշմարտությունը, խաղաղության ու սոցիալիզմի ճշմարտությունը։

Կեցցե՛ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ մեծ Լենինի կուսակցությունը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

# ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ԿԱՊԸ

Մեր ԲԱԶՄԱԶԳ ՀԱՅՐԵՆԻՔԻ աշխատավորները կոմունիստական արարման ճանապարհին օրեցօր նոր, աչքի ընկնող մեծագործություններ են կատարում։ Նրանց առջև այսօր ծառացած առաջնահերթ խնդիրը ժողովրդական տնտեսությունը ինտենսիվացման ուղու վրա փոխադրելն է, պարենային ծրագրի կենսագործման ապահովումը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը, կազմակերպվածությունն ու կարգապահությունը մեր էկոնոմիկայի ու հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Արդի փուլում կուսակցության ու ժողովրդի գործունեության գլխավոր առանցքը զարգացած սոցիալիզմի կատարելագործումն է, ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական կանխագծումների իրականացումը։

Այս խնդիրների հաջող լուծումը սովետական մարդկանցից պահանջում է լենինյան գաղափարայնություն, իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքի խոր գիտակցում, նրանց ստեղծագործական եռանդի ու նախաձեռնության հար զարգացում, յուրաքանչյուր սովետական քաղաքացու հոգում երկրի լիիրավ տիրոջ խոր զգացմունքի ներարկում։

Սովետական մարդիկ հայրենիքի ապագան տեսնում են բոլոր նոր սերնտեսական հաղթանակներում, մեր սոցիալիստական հասարակության հեղհետե ամրապնդվող եղբայրական բարեկամությունում։ Սերնդից սերունդ է փոխանցվում այդ սրբազան հավատի կրակը։ Հոկտեմբերյան հեղափոխության, քաղաքացիական պատերազմի լեգենդար մարտիկներն ու առաջին հնգամյակների հարվածայինները, Մեծ հայրենականի ու ետպատերազմյան վերականգնման հերոսները, վերջին տասնամյակների հսկայական կառույցների մասնակիցներն իրենց անձնուրաց պայքարով ու աշխատանքով մեր երկիրը դուրս բերեցին հեղափոխական վերափոխումների և պրոգրեսի լայն մայրուղին։ Ստեղծելով հասուն սոցիալիստական հասարակություն, ավագ սերունդն այն երիտասարդությանն է փոխանցում որպես ամենաարժեքավոր հարստություն։

1983 թ. օգոստոսի 15-ին ՍՄԿԿ Կենտկոմում կուսակցության վետերանների հետ կայացած հանդիպման ժամանակ, ընկեր Յու. Վ. Անդրոպովը, պատշաճը հատուցելով վետերաններին, բարձր գնահատելով սովետական պետության ստեղծման ու զարգացման գործում նրանց պատմական դերը, կոմունիզմի գործի համար նրանց փորձի նշանակությունը, շեշտեց, որ «վետերանները ողջ մարդկությունը հարստացրած նոր կյանքի կառուցման եզակի փորձի կրողներն են», որ այդ կենսափորձը «ասես մի գագաթ լինի, որի վրա բարձրանալով կարելի է ավելի լավ տեսնել բացվող հորիզոնները»։ Առանց նման փորձի, նշեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը, «անկարելի է, անհնար է լուծել այն խնդիրները, որ մեր առջև դնում են կյանքը, զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրակտիկան»։

Այդ փորձի լույսի ներքո հանրապետության կուսակցական ակտիվի ժողովը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմում կուսակցության վետերանների հետ հանդիպման ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը։ Իր զեկուցման մեջ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը շեշտեց, որ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հան-

դիպումը ցույց տվեց կուսակցության խորին հարգանքը վետերանների փառապանծ գվարդիայի նկատմամբ, մշտական հոգատարությունը հեղափոխական, մարտական ու աշխատանքային փորձի, կուսակցական կյանքի լենինյան ավանդույթների պահպանման ու հարստացման, մասսաների հետ կապի ամրապնդման նկատմամբ։

Ներկայումս չկա տնտեսական, գիտական, մշակութային կյանքի այնպիսի ոլորտ, որում ամենաեռանդուն մասնակցություն չունենան վետերանները։ Նրանցից շատերի անունները լայնորեն հայտնի են հանրապետությունում և վայելում են աշխատավորների, երիտասարդության հարգանքը. 1917 թ. կուսակցության անդամներ Ս. Շավերդովան և Ա. Արտո-Ղազարյանը, 1918 թ. կուսակցության անդամ Ե. Հարությունյանը, ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպման մասնակից, 1919 թ. կուսակցության անդամ, բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Ք. Փիրումովը, 1920 թ. կուսակցության անդամներ Մ. Գարագաշն ու Ա. Բարխուդարովը և մյուսները, լինելով գիտնականներ, բանվորներ, զինծառայողներ, պատերազմի և աշխատանքի հերոսներ, այսօր էլ ցուցաբերում են նախանձելի եռանդ, հմտորեն զուգակցելով արտադրությունում, կյանքի մյուս բնագավառներում կատարած աշխատանքը հասարակական գործունեության հետ կամ լիովին կենտրոնանալով վերջինիս վրա, եթե անցել են վաստակած հանգստի։

Կուսակցությունը ձգտում է այն բանին, որ այդ հիանալի մարդկանց փորձն ու գիտելիքները շարունակեն լիովին ի սպաս դրվելու հասարակության, սովետական ժողովրդի առջև ծառացած առավել նոր և բարդ խնդիրների լուծմանը։ Դրանցից առաջինը էկոնոմիկայի ղեկավարումն է ինտենսիվ զարգացման հունով։ Երկրորդը գաղափարախոսականն է, աշխատավորների քաղաքական կուլտուրայի հարստացումն է այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր ոք գիտակցաբար և ակտիվորեն մասնակցի հասարակական կյանքին։

Առաջադրված խնդիրներից յուրաքանչյուրի լուծման գործում կուսակցությունն ակնկալում է վետերանների ծանրակշիռ խոսքն ու գործը, նրանց աջակցությունը և մասնակցությունը այն մասշտաբային ձեռնարկումներին, որոնք կոչված են զգալի տեղաշարժեր ապահովելու կուսակցական կազմակերպությունների ինչպես տնտեսական, այնպես և դաստիարակչական գործունեությունում։

«Երիտասարդության հետ վետերանների աշխատանքի ողջ փորձը վկայում է,— ակտիվի ժողովում ասաց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— որ հաղորդակցման բուն փաստն իսկ հատկապես նրանց հետ, ովքեր անմիջականորեն մասնակցել են հեղափոխական պայքարին, դրել հանրապետության ժամանակակից ժողովրդական տնտեսության և բարձր զարգացած կուլտուրայի հիմքը, խիզախորեն հայրենիքն են պաշտպանել պատերազմի դժնդակ տարիներին, նրանց հետ, ովքեր, չնայած տարիքին, մինչև օրս էլ անդուլ աշխատում են հանուն ընդհանուր բարօրության, դաստիարակչական հզոր լիցք ունեն»։

Երևանում ապրող 74.500 թոշակառուներից 30.500-ը շարունակում են աշխատել։ Նրանք շատ բան են անում աշխատանքային կոլեկտիվները համախմբելու, պետական պլանները կատարելու, աշխատանքի արդյունավետության ու որակի, աշխատանքային ու արտադրական կարգապահության բարձրացման համար։ Երիտասարդության դաստիարակման նպատակով զգալի գործ են կատարում «Հայլեկտրամեքենա», «Հայէլեկտրալույս», «Էլեկտրոն», «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորումների, հանրապետության թեթև արդյունաբերության ձեռնարկությունների վետերանները։ Միայն Երևանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում աշխատում են կուսակցության ու աշխատանքի շուրջ 5 հազար վետերաններ։ Դրանք փորձառու, իմաստուն մարդիկ են, որոնք իրենց փորձով օգնում են կուսակցական կազմակերպություններին, ջանում են պատանիներին ու աղջիկներին փոխանցել այն ամեն լավը, ինչ իրենք վերցրել են կյանքից, և ամենից առաջ՝ հպարտությունը հարազատ գործարանի համար, գիտելիքների ու մասնագիտական կատարելագործման նկատմամբ մշտական ծարավը։ Նրանք երիտասարդությանն են փոխանցում կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթների կենդանի էստաֆետը։

Հանրապետության արտադրության 19 հազար փորձառու աշխատողներ, այդ թվում ոչ քիչ վետերաններ, մասնակցում են վարպետ-դաստիարակների շարժմանը։ Եվ այն, որ այսօր շուրջ 90 հազար պատանիներ ու աղջիկներ, 1100 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ ընթանում են տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար ծավալված սոցիալիստական մրցության ավանգարդում, իսկ շատերն արդեն աշխատում են հնգամյակի չորրորդ տարվա հաշվին, երիտասարդության դաստիարակների վաստակն է։ Իրենց գործի հմուտ գիտակներ են դարձել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման վարպետ-դաստիարակ, Աշխատանքային փառքի շքանշանի լրիվ ասպետ Ն. Մխիթարյանի 20 աշակերտները։ 50 որակյալ բանվոր է պատրաստել վաստակավոր վարպետ-դաստիարակ, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման վետերան, կոմունիստ Ա. Բորիսովը։ Ուրախալի է, որ վարպետի ու դաստիարակի աշխատանքային ու բարոյական օրինակի ուժը պատանի քաղաքացիների հոգևոր զարգացման, երիտասարդության աշխարհայացքի կերպավորման գործում մեծանում է։ Կենսափորձով հարուստ այս մարդկանց կողքին կոփվում են երիտասարդ բնավորությունները։ Առավել ամրակուռ է դառնում սերունդների միասնությունը, սերունդներ, որոնց միավորում է նպատակի ընդհանրությունը՝ կոմունիզմի կառուցումը։

Վետերաններին տնտեսական, հասարակական-քաղաքական կյանքի մեջ ներգրավելու նաև այլ հետաքրքրական ձևեր կան։ Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, ՀԼԿԵՄ Կենտկոմին առընթեր գործում են վետերանների խորհուրդներ, որոնք վետերանների ջանքերը նպատակամղում են քաղաքների ու շրջանների արտադրական, սոցիալ-տնտեսական, քաղաքական, կուլտուրական կյանքի խնդիրների լայն շրջանակի լուծմանը։

Այս հարցերին հանրապետության ակտիվի ժողովը լուրջ ուշադրություն նվիրեց։ Շեշտվեց, որ կատարելով ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան, նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումների որոշումները, հանրապետության կուսակցական կազմակերպությունն զգալի աշխատանք է կատարում էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղիով վարելու, ժողովրդական տնտեսության ճյուղերի աշխատանքը բարելավելու, աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը բարձրացնելու, կարգապահությունը ամրապնդելու, կենսագործունեության բոլոր ոլորտներում կազմակերպվածություն ու կարգուկանոն հաստատելու համար։ Ընթացիկ հնգամյակում ժողովրդական տնտեսության բնագավառում ձեռք բերված արդյունքները վկայում են, որ տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները հաջողությամբ կկատարվեն։

Խոսվեց նաև էկոնոմիկայի արդյունավետության վրա բացասաբար անդրադարձող թերությունների ու սխալների մասին։ Դեռևս դանդաղ են իրականացվում նոր տեխնիկայի, պրոգրեսիվ տեխնոլոգիայի ներդրման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման, ձեռքի աշխատանքի տեսակարար կշռի կրճատման միջոցառումները, խելամտորեն չեն օգտագործվում պաշարները, առկա են կորուստներ խոտանի պատճառով, աշխատավարձի միջոցների գերածախս, որոնք հանգեցնում են արտադրանքի ինքնարժեքի մեծացման։ Դեռ շատ հեռու է բավարար լինելուց ժողովրդական սպառման ապրանքների, շինարարության որակը, որի բարելավմանը դեռևս քիչ է ուշադրություն հատկացվում։ Անհրաժեշտ է վճռականորեն վերացնել տրանսպորտի ու կապի ապարեզներում, բնակչության կենցաղային և այլ սպասարկումների ոլորտներում եղած թերությունները։

Որպես առաջնակարգ խնդիր նշվեց հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հստակ կազմակերպման, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման խնդիրների հետևողական լուծման, պարենային ծրագրի կատարման բացառիկ կարևորությունը։

Ժողովրդական տնտեսության զարգացման ելակետային խնդիրների լուծմանը պետք է հասնել էկոնոմիկայի ինտենսիվացման, հասարակական ար-

տադրության աճի կայուն տեմպերի ապահովման շնորհիվ։ Իսկ այդ ամենը պահանջում է ժողովրդական տնտեսության ղեկավարման մակարդակի հետագա բարձրացում, արտադրության ու աշխատանքի հստակ կազմակերպում, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդում, գիտատեխնիկական առաջընթացի արագացում։ Խոսքն ամենից առաջ աշխատանքի որակի բարձրացման, դրա ընդհանուր կուլտուրան հասուն սոցիալիզմին համապատասխանող մի նոր աստիճանի հասցնելու մասին է։

Ստեղծարար աշխատանքի հասարակական ծանր կշիռը պաշտոնատար անձանց պարտավորեցնում է ուշադիր վերաբերմունք ցուցաբերել յուրաքանչյուր աշխատավորի նկատմամբ։ Կարևոր է նկատել, խրախուսել լավ աշխատողներին, իրենց գործի իսկական վարպետներին, այն մարդկանց, որոնց աշխատանքային գործունեությունը կարող է ընդունվել որպես յուրատեսակ չափանիշ։ Հասնել այն բանին, որպեսզի բարձր մասնագիտական ու քաղաքական պատրաստականությունը, ընդհանուր կուլտուրան, կոմունիստական համոզվածությունը վերածվեն աշխատողների առավել լայն խավերի գործունեության պարտադիր պայմանի։ Առաջնահերթ խնդիր է մարդկանց, բոլոր աշխատավորների ունակությունների ու ստեղծագործական ակտիվության համակողմանի դրսևորման համար բարենպաստ պայմանների ստեղծումը։ Այդ դառնում է տնտեսական շինարարության հրամայական պահանջը, արտադրության արագ աճի, աշխատանքի արտադրողականությունը արմատապես բարձրացնելու կարևոր տնտեսական նախադրյալներից մեկը։

Գիտատեխնիկական առաջընթացի մարզում գիտնականների և արտադրության աշխատողների խնդիրն է արտադրության մեջ առավել եռանդով ներդրավել գիտական մտահղացումները, նոր տեխնոլոգիան ու մշակումները, ամուր հիմքերի վրա դնել գիտության կապը ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի հետ։

Հանրապետության ակտիվի ժողովում հանգամանորեն խոսվեց տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման, մեր ամբողջ աշխատանքի ոճն ու մեթոդները ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումների պահանջներին համապատասխան մշտապես կատարելագործելու անհրաժեշտության մասին։ «Կենսագործունեության բոլոր տեղամասերում արմատավորելով աշխատանքի լենինյան ոճը,— շեշտեց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է հետևողականորեն բարելավեն կադրերի դաստիարակության ողջ գործը, նրանց մեջ ներարկեն այնպիսի հատկանիշներ, որպիսիք են՝ պարտաճանաչությունը, կարգապահությունը, ձեռներեցությունը, գործարարությունը, թերությունների նկատմամբ անհաշտվողականությունը, վսեմ նպատակներին հասնելու ձգտումը, հանուն դրանց իրականացման ուժերի լիակատար նվիրաբերումով աշխատելու պատրաստակամությունը»։

Այնտեղ, ուր տնտեսական ղեկավարները, մասնագետները դրսևորում են նշված հատկանիշները, անպայմանորեն հասնում են նաև կոլեկտիվ աշխատանքի բարձր արդյունավետության։ Բայց գաղտնիք չէ նաև, որ մեզանում դեռևս հանդիպում են ղեկավարներ, որոնք երբեմն ընկրկում են դժվարությունների առջև, գնում են խղճին հակառակ, ի վիճակի չեն լինում կուսակցական հետևողականություն դրսևորելու, վերջ դնելու պետական և կատարողական կարգապահության խախտումներին, անտնտեսվարության դեպքերին։

Մեր կուսակցությունը մշտապես հոգում է յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր ղեկավարի, յուրաքանչյուր քաղաքացու՝ թերությունների հանդեպ անհաշտվողականության ոգով դաստիարակելու մասին։ Դրանց դեմ վճռականորեն պայքարելու համար մենք ունենք նաև հատու զենք, դա քննադատությունն ու ինքնաքննադատությունն է։ Կուսակցական մարմինները կոչված են բարձրացնելու իրենց գործունեությունը բացասական երևույթների դեմ պայքարելիս, ավելի արդյունավետությամբ օգտագործելու ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իր իրավունքը։ Կարևոր է հետևողականորեն ծավալել քննադատությունը։ Դրա ուժը բարձրացվող հարցերի հրապարակայնության, սկզբունքայնության, կոնկրետության, ապացուցելիության և հասա-



րակականորեն նշանակալիության մեջ է։ Նա, ով զրկվել է իր գործունեությունը քննադատորեն գնահատելու ունակությունից, կտրվել է մասսաներից, հենվում է շողոքորթների ու ստորաքարշների վրա, ով կորցրել է կոմունիստների վստահությունը՝ չի կարող ղեկավար լինել։ «Գործունեության արդյունքների քննադատական վերլուծությունը,— նշեց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— պետք է դառնա յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, կուսակցական կազմակերպության, ցանկացած կառավարչական օղակի, յուրաքանչյուր աշխատողի, հատկապես ղեկավար աշխատողի կյանքի նորմը։ Մեզ պետք է խորթ լինեն ինքնահիացումը, հաջողություններով արբենալը, պարծենկոտությունը»։

Սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծումը, էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղիով վարելը պահանջում են գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացում։ Դրանում հիմնականը եղել և մնում է մարդկանց կոմունիստական դաստիարակության առանցքը՝ գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի կերպավորումը։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում, հենց դա է կոմունիստներին, աշխատավորներին դարձնում գիտակից քաղաքական մարտիկներ, որոնք ունակ են ինքնուրույն կերպով գնահատելու սոցիալական երևույթները, տեսնելու ընթացիկ խնդիրների կապը մեր վերջնական նպատակների հետ, փաստարկված բանավեճ մղելու ցանկացած գաղափարական ընդդիմախոսի հետ։

Քաղդաստիարակչական աշխատանքի կատարելագործման և արդյունավետության բարձրացման վերաբերյալ հանգամանալի, խստապահանջ խոսակցություն տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում, կուսկոմիտեների պլենումներում և ակտիվի ժողովներում, ստեղծագործական միություններում։ Իսկ այժմ այդ հարցերը լայնորեն քննարկվում են ձեռնարկությունների ու տնտեսությունների, կառույցների, պետական ու կոլեկտիվ տնտեսությունների, գիտության ու կուլտուրայի հաստատությունների սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում։ Կոմունիստների ելույթներում, ընդունվող որոշումներում հստակորեն անցկացվում է ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում արտահայտված միտքը. կոմունիստների և մեր սոցիալիստական հասարակության բոլոր քաղաքացիների գիտակցության կերպավորումը ոչ միայն մասնագետ գաղափարախոսների, պրոպագանդիստների, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողների խնդիրն է։ Դա ողջ կուսակցության գործն է։

Հանրապետության կուսակցական ակտիվի ժողովը շեշտեց, որ գաղափարադաստիարակչական աշխատանքին մասնակցելը յուրաքանչյուր կոմունիստի առաջնահերթ պարտքն է։ Եվ կարևոր է այդ գործը վարել հմտորեն ու արդյունավետ կերպով, խոսքով և գործով մարդկանց մեջ դաստիարակել բարեխիղճ վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, պատասխանատվության զգացում և կոլեկտիվիզմի ոգի, զարգացնել տնտեսական նոր մտածելակերպ, որը նպատակամղի նախաձեռնության և սոցիալիստական գործարարության, նվազ ծախսումներով առավելագույն վերջնական արդյունքների հասնելուն։

ՍՄԿԿ Կենտկոմում վետերանների հետ կայացած հանդիպման ժամանակ ընկեր Յու. Վ. Անդրոպովը մատնանշեց մեր օրերի ևս մեկ առանձնահատկությունը՝ գաղափարական աշխատանքի սոցիալական ապահովման անհրաժեշտությունը։ Սա գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի արդյունավետության կարևոր պայմանն է։ Չէ՞ որ արտադրությունում գործերի վիճակն ուղիղ համեմատական է մարդկանց տրամադրությանը և ամեն կարգի անտնտեսվարության առկայությանը։ Օրենքների խախտումը, անկարգապահությունը, ընչաքաղցությունը արժեզրկում են աշխատավորական կոլեկտիվներում զրույցներ ու դասախոսություններ անցկացնող հազարավոր ագիտատորների ու պրոպագանդիստների, այդ թվում նաև վետերանների աշխատանքը։ Անհրաժեշտ է անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծել գրափողների, պետության հաշվին հարստանալ ձգտողների շուրջը, բոլոր միջոցներով ապահովել ժողովրդական տնտեսության ճյուղերի հստակ գործունեությունը, ժողովրդի բարեկեցության մակարդակի առավել բարձրացումը։ Կաս-

կածից վեր է, որ այստեղ ևս կուսակցության վետերանները քաղաքացիական բարձր պարտաճանաչության օրինակ ցույց կտան մեր հասարակության խորթ դրսևորումները վերացնելու համար, հանուն յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր քաղաքում, շրջանում, գյուղում սոցիալ-տնտեսական պլանների հաջող իրականացման մղվող պայքարում։

Հանրապետական ակտիվի ժողովում շեշտվեց, որ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պարտավոր են գտնել և կիրառել վետերանների փորձի, գիտելիքների ու ջանքերի օգտագործման առավել խելամիտ և արդյունավետ ձևեր։ Անհրաժեշտ է ավելի ակտիվորեն օգտագործել նրանց ուժերը արտադրության մեջ աշխատող երիտասարդների որակավորումը բարձրացնելու, կարգապահությունն ու հասարակական կարգուկանոնն ամրապնդելու, առևտրի, կենցաղասպասարկման, հասարակական սննդի ձեռնարկությունների փոքրաթիվ կոլեկտիվներում, որոնք կուսակցական կազմակերպություն չունեն, դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում քաղդաստիարակչական միջոցառումներ կազմակերպելու նպատակով։ Նրանց գիտելիքները, անշուշտ, պիտանի են ժողովրդական համալսարաններում, գիտատեխնիկական ստեղծագործության խմբակներում և հասարակական կյանքի բազմաթիվ այլ ոլորտներում։ Այս նպատակով անհրաժեշտ է աշխուժացնել ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զանազան ճյուղերում, հասարակական կազմակերպություններին կից գործող վետերանների խորհուրդների գործունեությունը, խորացնել ու ընդլայնել դրա բովանդակությունը։

«Վետերանների փորձն ու գիտելիքները,— շեշտեց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— առանձնապես հարկավոր են Լենինի գաղափարներին, կոմունիստական կուսակցությանն անսահման նվիրվածության ոգով երիտասարդությանը դաստիարակելու գործում, ռազմահայրենասիրական դաստիարակության ասպարեզում։ Մեր երիտասարդներին նույնպես պետք է հատուկ լինի համոզվածությունը կոմունիստական իդեալների անանց արժույթի նկատմամբ, համոզվածությունն այն բանում, որ այն ամեն լավի համար, ինչին մենք հավատում ենք, ինչին ձգտում է սովետական ժողովուրդը, հարկավոր է պայքարել, պայքարել անձնվիրաբար»։

Անհրաժեշտ է պայմաններ ստեղծել վետերանների ակտիվության բարձրացման համար այն կուսակցական կազմակերպություններում, որտեղ իրենք հաշվառման մեջ են, հոգալ, որպեսզի նրանք գործուն մասնակցություն ունենան հաշվետու-ընտրական ժողովներին ու կոնֆերանսներին։

Վետերաններն իրենց խորին շնորհակալությունն են հայտնում կուսակցությանը։ Հանդիպումը ՍՄԿԿ Կենտկոմում, ընկեր Յու. Վ. Անդրոպովի արտասանած վառ ու բովանդակալից ճառը ջերմ արձագանք գտան բոլոր վետերանների, ողջ սովետական ժողովրդի սրտում։ 1919 թվականից ՍՄԿԿ անդամ Բ. Փիրումովը, ելույթ ունենալով հանրապետական ակտիվի ժողովում, ասաց. «Մարդու կյանքում լինում են օրեր, որոնք երբեք չեն ջնջվում հիշողությունից։ Հենց այդպիսի օրեր ապրեցինք մենք՝ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպման մասնակիցներս։ Ընկեր Յու. Վ. Անդրոպովի հետ վետերանների հանդիպումն անցավ լիակատար վստահության, անկեղծության ու ջերմության մթնոլորտում։ Մենք մեկ անգամ ևս համոզվեցինք, թե սովետական ժողովրդի կենսապայմանների հետագա բարելավման, ՍՄԿԿ XXVI համագումարի սահմանած՝ երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման ծավալուն ծրագրի իրականացման գործում որքան անհրաժեշտ է բոլոր վետերանների ակտիվ մասնակցությունը։ Վ. Ի. Լենինը մշտապես մեծ ուշադրությամբ ու հոգատարությամբ էր վերաբերվում կուսակցական կադրերին։ ՍՄԿԿ Կենտկոմի ներկայիս ղեկավարությունը շարունակում է լենինյան այդ ավանդույթը»։

«Անափ է հարազատ կուսակցության հանդեպ ունեցած մեր շնորհակալությունն ու երախտագիտությունն այն բարձր գնահատականի համար, որ տրվեց մեր գործունեությանը,— ասաց Հայրենական մեծ պատերազմի և աշխատանքի վետերան, ուսուցիչների կատարելագործման ինստիտուտի Լենինականի մասնաճյուղի դիրեկտոր Ա. Ցայրոյանը։— Դա պարտավորեցնում է, մղում նոր մեծագործությունների»։



Վետերանները շնորհակալությամբ ընդունեցին կուսակցության հոգատարությունն իրենց կենցաղի, հանգստի, բնակարանային պայմանների բարելավման նկատմամբ, այն բանի նկատմամբ, որպեսզի ավագ սերնդի՝ կենսաթոշակի անցած կոմունիստները միշտ լինեն շրջապատված իրենց աշխատանքային կոլեկտիվների հարգանքով և ուշադրությամբ։

Ինչպես նշվեց հանրապետական ակտիվի ժողովում, ամբողջ հնգամյակի և դրա երրորդ տարվա պլանային առաջադրանքները դյուրին չեն, բայց պետք է կատարվեն ու գերակատարվեն։ Դրա համար անհրաժեշտ է ապահովել բարձր պահանջկոտության և կազմակերպվածության իրադրություն, ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվում լայնորեն ծավալել գործարար սոցիալիստական մրցություն, դրա բոլոր մասնակիցներին նպատակամղել հասնելու ստանձնած բնագծերին, կատարելու և գերակատարելու սոցիալիստական պարտավորությունները։

Հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում համակողմանիորեն քննարկվում են ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն խնդիրները, գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի կատարելագործման հարցերը։ Կուսկազմակերպությունների մարտունակությամբ է պայմանավորված կոլեկտիվների աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվության մակարդակը, ընդունված որոշումների հետևողական իրականացումը։

Լիովին ըմբռնելով ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառում առաջադրված նոր, պատասխանատու խնդիրների կարևորությունը, հանրապետության կոմունիստները, բոլոր սերունդների աշխատավորներն առաջիկայում ևս իրենց ուժերն ու կենսափորձը կնվիրաբերեն ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, տասնմեկերորդ հնգամյակի հոյակապ ստեղծարար ծրագրի իրագործմանը։

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոբլեմներ

# ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՈՒՄ

**Ա. Զ. ԹԱՌՈՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ տնտեսական սիստեմը, որի հիմնական դրույթները վավերացված են սահմանադրական օրենսդրությամբ, արտացոլում է արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության բնույթն ու ձևերը, նյութական բարիքների արտադրության, բաշխման, փոխանակման և սպառման սոցիալիստական սկզբունքները, ժողովրդական տնտեսության կազմակերպման, պլանավորման և կառավարման հիմունքները, արտադրաուժերի ու արտադրահարաբերությունների զարգացման արդի մակարդակը և դրանց շարժման օրինաչափությունները որոշակի պատմական ժամանակաշրջանում։*

*Ըստ մարքս-լենինյան տեսության, յուրաքանչյուր հասարակության տնտեսական և սոցիալական առաջընթացը պայմանավորված է նրանով, թե տվյալ արտադրաեղանակի տիրապետող հարաբերությունները որքանով են համապատասխանում նրա արտադրաուժերի բնույթին ու զարգացման մակարդակին։ Պատմությունը վկայում է, որ արտադրամիջոցների մասնավոր սեփականության պայմաններում հասարակության արտադրաուժերը չեն կարող անկաշկանդ զարգանալ արտադրության հասարակական բնույթի և արդյունքների մասնավոր յուրացման, հասարակական ուժ հանդիսացող կապիտալը մասնավոր մարդկանց կողմից շարժման մեջ դնելու հետևանքով։ Այս անտագոնիստական հակասությունը կապիտալիստական հասարակությանը թույլ չի տալիս ընդգրկել և պլանաչափ շարժման մեջ դնել ստեղծված արտադրաուժերը, ապահովել դրանց նորմալ զարգացումը։ Անհաղթահարելի արգելքներ են ծառանում էկոնոմիկայի կազմակերպման և սոցիալական պրոբլեմների լուծման գործում։ «Մասնավոր սեփականությունն իր տնտեսական շարժման մեջ ինքն է իրեն մղում դեպի իր սեփական վերացումը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* Սուրբ ընտանիք կամ քննադատական քննադատության քննադատություն, *«Հայաստան» հրատ., 1967, էջ 56)։*

*Կապիտալի և վարձու աշխատանքի հակադրության անմիջական հետևանք են ժամանակակից կապիտալիստական երկրներում արտադրության զարգացման անկայուն բնույթը և աճի ցածր տեմպերը, պարբերաբար կրկնվող ճգնաժամերը և դրանցից բխող այնպիսի սոցիալական չարիքներ, ինչպիսիք են՝ սաստկացող գործազրկությունը, ինֆլյացիան, գների բարձրացումը։*

*Վերլուծելով կապիտալիզմին ներհատուկ անլուծելի հակասությունները և դրանց հետևանքների դասակարգային բնույթը, ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ տեղի է ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացում, չտեսնված մասշտաբներ է ստացել ինֆլյացիան, որի աճի կորագիծն ավելի ու ավելի վեր է բարձրանում։ 1970 թվականից զարգացած կապիտալիստական երկրներում գները բարձրացել են միջին հաշվով 2,3 անգամ, այդ թվում 1975 թվականից՝ մեկ ու կես անգամ (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 31)։ 1971—1980 թվականներին 14 կապիտալիստական առաջատար երկրներում արդյունաբերական արտադրության աճի տեմպերը, նախորդ տասնամյակի 5,8 տոկոսից իջել են 3,2 տոկոսի։ 1981 թվականին արևմտաեվրոպական երկրներում արդյունաբերական արտադրությունը կրճատվել է գրեթե 5 տոկոսով (տե՛ս* «Вопросы экономики, 1982, № 7, стр. 127)*։ Կապիտալիզմի զարգացած երկրներում պաշտոնապես գրանցված գործազուրկների թիվը 1970 թվականի 7,8 միլիոն մարդուց 1981 թվականին հասել է 28 միլիոն մարդու, ընդ որում այստեղ հաշվի չեն առնված հսկայական թվով մասնակի, ինչպես նաև այն գործազուրկները, որոնք ուսումնական հաստատություններն ավարտելուց հետո աշխատանք չեն ունեցել (տե՛ս նույն տեղը, 1982, № 6,* стр. *123)։*

*Կապիտալիզմի առավել ռեակցիոն ուժերն այդ դժվարություններից դուրս գալու ելքը փնտրում են ռազմական մրցավազքի, սառը պատերազմի և լարվածության ուժեղացման, բացահայտ անեքսիաների դիմելու և աշխատավորական մասսաների ու ժողովուրդների կենսական շահերի և իրավունքների վրա հարձակումներն ուժեղացնելու քաղաքականության մեջ։*

*Արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության պայմաններում հանրային արտադրության բարձրագույն նպատակը մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է՝ յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի սկզբունքին համապատասխան։ Վերանում են արտադրահարաբերությունների և արտադրաուժերի միջև եղած անտագոնիստական հակասությունները, հասարակության տնտեսական բազիսի այդ երկու կողմերի համապատասխանությունը դառնում է օբյեկտիվ անհրաժեշտություն, բխում տնտեսության սոցիալիստական սիստեմի բուն էությունից։ Եվ որքան ներդաշնակ է այդ համապատասխանությունը, այնքան ավելի են ընդլայնվում արտադրության ինտենսիվ զարգացման հնարավորությունները, բարձրանում արտադրաուժերի օգտագործման արդյունավետությունը։ Իհարկե, զարգացման ընթացքում սոցիալիստական արտադրահարաբերությունների և արտադրաուժերի միջև նույնպես ծագում են հակասություններ, որոնք անտագոնիստական չեն և հաղթահարվում են արտադրահարաբերությունների կատարելագործմամբ։ «Խոսելով «իմը» «մերը» դարձնելու մասին, չի կարելի մոռանալ, որ դա տևական, բազմապլան պրոցես է... Սոցիալիստական հեղափոխություն կատարած ժողովուրդն ստիպված է լինելու դեռ երկար ժամանակ յուրացնել ողջ հանրային հարստության գերագույն և անբաժան սեփականատիրոջ իր նոր դիրքը, յուրացնել և՛ տնտեսապես, և՛ քաղաքականապես, և՛, եթե կամենաք, հոգեբանորեն, մշակելով կոլեկտիվիստական գիտակցություն ու վարքագիծ» (Յու. Վ. Անդրոպով,* Կ. Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր, *«Հայաստան» հրատ., 1983, էջ 9)։*

*Հասարակության տնտեսական սիստեմում որոշիչը սեփականության հարաբերությունն է։ Դրա տնտեսական բովանդակության գիտականորեն հիմնավորված լուսաբանումը կարևոր նշանակություն ունի սոցիալիստական արտադրահարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման, երկրի արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի արդյունավետ օգտագործման խնդիրների ճիշտ լուծման, ինչպես նաև սեփականության մասին բուրժուական և սոցիալ-ռեֆորմիստական հակագիտական տեսությունների մերկացման համար։*

ձգտում են ժխտել նրա համաժողովրդական բնույթը։ Նրանք հորինում են
փաստարկներ այն մասին, թե սոցիալիզմի երկրներում արտադրամիջոցները
հանրայնացված են ձևականորեն — իրավաբանորեն, թե իբր պետական սեփա-
կանությունը սահմանափակում է բանվոր դասակարգի ազատությունը։ Նրանք
չեն ուզում ընդունել, որ սովետական պետությունը, լինելով համաժողովրդա-
կան, արտահայտում է երկրի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղա-
ցիության ու մտավորականության, բոլոր ազգերի ու ազգությունների կենսա-
կան շահերը։ Սոցիալիզմի պայմաններում պետության՝ որպես «սեփականա-
տեր» հանդես գալը, ամենից առաջ, նշանակում է, որ սեփականությունը հան-
րայնացված է երկրի մասշտաբով, այն սովետական ամբողջ ժողովրդի ունեց-
վածքն է և ծառայում է նրա յուրաքանչյուր անդամի բարօրությանը։ Իրակա-
նացնելով ժողովրդի կամքը, պետությունը պահպանում է սոցիալիստական
սեփականությունը, պայմաններ ստեղծում դրա բազմապատկման համար։ Այդ
է վկայում այն իրողությունը, որ Սովետական Միությունում անդառնալիորեն
վերացվել է գործազրկությունը, յուրաքանչյուր քաղաքացի իր կոչմանը, ըն-
դունակություններին, կրթությանը և պրոֆեսիոնալ պատրաստությանը համա-
պատասխան ապահովված է երաշխավորված աշխատանքով։ Երկրի ազգային
եկամտի չորս հինգերորդն անմիջականորեն ուղղվում է ժողովրդական բարե-
կեցությանը, մշտապես ավելանում են բնակչության ռեալ եկամուտները,
բարձրանում է նրա բարեկեցության մակարդակը և դրան զուգընթաց աճում է
աշխատավորների շահագրգռվածությունը սոցիալիստական արտադրության
դինամիկ զարգացման ու ազգային հարստության ավելացման համար։

Սոցիալիստական սեփականության մյուս ձևը կոլտնտեսային-կոոպերա-
տիվ սեփականությունն է։ Սոցիալիստական շինարարության պրոցեսում ձևա-
վորվել են սեփականության այդ ձևի զարգացման որոշակի օրինաչափություն-
ներ։ Լինելով տնտեսական հարաբերությունների առավել հասունացած սիս-
տեմ և ընդգրկելով հասարակական արտադրության վճռական ճյուղերն ու մի-
ջոցները, համաժողովրդական սեփականությունը մեծ ազդեցություն է գործում
կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության վրա։ Հողը, որը գյուղատնտե-
սական արտադրության գլխավոր միջոց է, պետական սեփականություն է,
այն ամրացված է կոլտնտեսություններին անվճար ու անժամկետ օգտագոր-
ծելու համար։ Հողի պետական սեփականության և կոլտնտեսային սեփակա-
նության սերտ զուգակցմամբ արտադրության կազմակերպումը կոլտնտեսային
կարգերի տնտեսական հիմքն է, սոցիալիստական սեփականության երկու
ձևերի մերձեցման կարևորագույն պայմաններից մեկը։

Կոլտնտեսությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների
էկոնոմիկան անխզելիորեն կապված է պետական սեկտորի շատ ճյուղերի հետ,
որոնք մասնակցում են նրա արտադրանքի թողարկմանը, իրացմանը և վերա-
մշակմանը, կոլտնտեսությունների տեխնիկական վերազինմանը, արտադրու-
թյան հիմնական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմա-
տացմանը, կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերի մշակման ավելացմանը
և դրանց կառուցվածքի ու որակի բարելավմանը, մի խոսքով, գյուղատնտեսա-
կան արտադրության պլանաչափ փոխադրմանը ինդուստրիալ ռելսերի վրա։
Մշտապես աճում է պետական կապիտալ ներդրումների բաժինը կոլտնտեսա-
յին արտադրության զարգացման համար։ Տասներորդ հնգամյակի տարինե-
րին, օրինակ, գյուղատնտեսության մեջ, պետական կապիտալ ներդրումները,
նախորդ հնգամյակի համեմատությամբ, աճել են 36,3 տոկոսով, իսկ կոլտն-
տեսություններինը՝ 21,8 տոկոսով։ Պետության միջոցների հաշվին են կա-
տարվում հողերի մելիորացման և ոռոգման հիմնական աշխատանքները։
Կոլտնտեսությունների և կոոպերատիվ կազմակերպությունների էլեկտրաէներ-
գիայի ամբողջ պահանջը բավարարում են պետական էլեկտրակայանները։
Սիստեմատիկաբար աճում են նաև պետության ներդրումները գյուղատնտե-
սության համար մասնագետ կադրերի պատրաստման, այդ ճյուղում գիտա-



տեխնիկական առաջընթացի արագացման, գյուղերում դպրոցների, մանկական
նախադպրոցական հիմնարկությունների, հիվանդանոցների, կուլտուրայի
օջախների, կոմունալ-կենցաղային օբյեկտների կառուցման գործում։ Այդպիսի
օբյեկտներ են կառուցվում նաև կոլտնտեսությունների միջոցների հաշվին,
որոնք սպասարկում են ինչպես կոլտնտեսականներին, այնպես էլ բանվորնե-
րին և ծառայողներին՝ ձեռք բերելով համաժողովրդական սեփականության
բնույթ։

Սովետական պետությունը կոլտնտեսային սեփականության հետագա
զարգացման և ագրարային հարաբերությունների կատարելագործման համար
օգտագործում է այնպիսի տնտեսական լծակներ, ինչպիսիք են կոլտնտեսու-
թյունների արտադրատնտեսական գործունեության հիմնական ցուցանիշների
պետական պլանավորումը, մթերումների, վարկային, հարկային և ապահովա-
գրության սիստեմները, արդյունաբերական արտադրանքի գները և այլն, որոնք
միասնական են պետական տնտեսությունների, միջտնտեսային ձեռնարկու-
թյունների և կոլտնտեսությունների համար։ Կոլտնտեսություններն ավելի ու
ավելի լայն մասշտաբներով են օգտագործում պետական տնտեսություններում
կիրառվող տնտեսավարության, աշխատանքի կազմակերպման, նորմավորման
և վարձատրման ձևերն ու մեթոդները։ Ընդգրկվելով արհեստակցական միու-
թյունների մեջ, կոլտնտեսականները բանվորների ու ծառայողների հետ հա-
վասարապես օգտվում են արհմիությունների միջոցառումներից, ավելի լայ-
նորեն մասնակցում սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության
հարցերի լուծմանը, պետական գործերի կառավարմանը։

Հասուն սոցիալիզմի պայմաններում կոլտնտեսային-կոոպերատիվ սեփա-
կանության զարգացումն անխզելիորեն առնչվում է միջտնտեսային կոոպե-
րացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հետ։ Որպես երկրի ագրո-
արդյունաբերական կոմպլեքսի բաղկացուցիչ մասը, կոլտնտեսային արտա-
դրությունն իր վրա է կրում այդ կոմպլեքսի միասնական պլանավորման և
կառավարման, դրա համամասնական և հավասարակշռված զարգացման ազ-
դեցությունը։ Դա թույլ կտա, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան
պլենումում, ավելի արդյունավետ օգտագործել երկրի տնտեսական աճած պո-
տենցիալը, հաջողությամբ իրականացնել պարենային ծրագիրը, հնարավորին
չափ սեղմ ժամկետում ապահովել պարենի բոլոր տեսակների կայուն մատա-
կարարումը բնակչությանը։

Իրենց սոցիալ-տնտեսական բնույթով միջտնտեսային կոոպերացիան և
ագրոարդյունաբերական ինտեգրացիան կոլտնտեսային-կոոպերատիվ սեփա-
կանությունը պետական սեփականության հետ մերձեցնելու ձևերից են։

ՍՄԿԿ XXVI համագումարը զարգացած սոցիալիզմի մարքսիստական լե-
նինյան կոնցեպցիան հարստացրեց տեսական և գործնական կարևորագույն
նշանակություն ունեցող դրույթներով։ Հատկապես շեշտվեց, որ սովետական
հասարակության անդասակարգ կառուցվածքի կազմակերպումը գլխավորապես
և հիմնականում տեղի կունենա հասուն սոցիալիզմի պատմական ժամանակա-
շրջանում։ Այնքանով, որ արտադրամիջոցների սոցիալիստական սեփականու-
թյան երկու ձևերը (պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ) արտացոլում են
սոցիալիստական հասարակության դասակարգային կառուցվածքը, ապա ան-
դասակարգ հասարակության կազմակերպումը ենթադրում է սեփականության
միայն մեկ ձևի՝ համաժողովրդական սեփականության առկայությունը։ Հե-
տևապես, կոլտնտեսային սեփականության մերձեցումը պետականին նույն-
պես տեղի կունենա զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում և սոցիա-
լիստական սեփականության վերաճումը կոմունիստականի կկատարվի համա-
ժողովրդական սեփականության միջոցով։

Արդի պայմաններում մեծ է արհմիությունների և այլ հասարակական կազ-
մակերպությունների դերը սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնման և

խորացման գործում։ Դրանք հոգում են աշխատավորների իրավունքների և շահերի պաշտպանության մասին, աջակցում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, սոցիալիստական մրցության, գյուտարարության և ռացիոնալիզացիայի ծավալմանը, ակտիվորեն մասնակցում տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի քննարկմանն ու լուծմանը։ Իրենց կանոնադրական խնդիրների իրականացման համար հիշյալ կազմակերպություններն ունեն վարչական շենքեր և կառուցվածքներ, արտադրական ձեռնարկություններ, տրանսպորտի միջոցներ, կուլտուր-լուսավորական հիմնարկություններ, սանատորիաներ, հանգստի տներ, տուրիստական բազաներ, անդամավճարների հաշվին գոյացած դրամական ֆոնդեր, այլ միջոցներ և գույք, որոնք նույնպես սոցիալիստական սեփականություն են։ Սակայն դրանք սեփականության առանձին ձև չեն կազմում, որովհետև հիմնականում ոչ արտադրական նշանակություն ունեն և հասարակության դասակարգային կառուցվածքում դեր չեն խաղում։

Հասարակական կազմակերպությունների ունեցվածքը պետական սեփականությունից տարբերվում է նրանով, որ չի կազմում միասնական ֆոնդ, այլ պատկանում է յուրաքանչյուր առանձին վերցրած կազմակերպության, ընկերության կամ միության։ Այն համընկնում է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հետ, սակայն վերջինից տարբերվում է նրանով, որ այդ ունեցվածքը հասարակական կազմակերպությունների անդամների համար եկամտի աղբյուր չէ։

Հասարակական արտադրության զարգացումը և արդյունավետության բարձրացումը ամուր բազա են ստեղծում անձնական սեփականության կատարելագործման, աշխատավորների հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարման համար։ ՍՍՀՄ սահմանադրությունը նախատեսում է, որ քաղաքացիների անձնական սեփականություն կարող են լինել առօրյա գործածության, անձնական սպառման, հարմարության և օժանդակ տնային տնտեսության առարկաները, բնակելի տունը և աշխատանքային խնայողությունները։ Այդ սեփականության հիմքը աշխատանքային եկամուտներն են, որոնք մշտապես ավելանում են հասարակական արտադրության զարգացմանը զուգընթաց։ Վերջին տասնամյակում, օրինակ, Սովետական Միությունում ազգային եկամտի արտադրությունն աճել է 58 տոկոսով, իսկ բնակչության ռեալ եկամուտները մեկ շնչի հաշվով՝ 46 տոկոսով։ Բանվորների, կոլտնտեսականների և ծառայողների միջոցների հաշվին կառուցվել են 252,4 միլիոն քմ ընդհանուր (օգտագործելի) տարածությամբ բնակելի տներ, դա կազմում է ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին շահագործման հանձնված բնակտարածության ավելի քան 23 տոկոսը։ Զգալիորեն բարձրացել են բնակչության գնողունակությունը և կուլտուր-կենցաղային նշանակության այնպիսի կարևոր առարկաներով ապահովվածության մակարդակը, ինչպիսիք են՝ հեռուստացույցները, կենցաղային սառնարանները, լվացքի մեքենաները, փոշեծծիչները, անձնական օգտագործման ավտոմեքենաները և այլն։ Խնայողական դրամարկղերում քաղաքացիների ավանդների գումարն ավելացել է 3,3 անգամ։

Անձնական սեփականությունը սոցիալիստական հարաբերության ձև է հասարակության կամ աշխատավորական կոլեկտիվի և առանձին աշխատողների միջև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, բաշխման ու սպառման բնագավառում։ Բնորոշ առանձնահատկությունն այն է, որ դրա աղբյուրը աշխատանքն է հանրային տնտեսության մեջ և այն չպետք է ծառայի անաշխատ եկամուտներ ստանալու համար։ Սովետական պետությունը պաշտպանում է անձնական սեփականությունը և այն ժառանգելու իրավունքը։

Անձնական սեփականության այդ ձևի տարատեսակներից մեկը քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունն է։ Օրենսդրությամբ սահմանված կարգով և նորմաներով կոլտնտեսականներին, բանվորներին ու ծառայողներին հատկացվում են հողամասեր անձնական օժանդակ տնտեսություն վարելու, անասուններ և թռչուններ պահելու, այգեգործության ու բանջարաբուծության, ինչպես նաև անհատական բնակարանային շինարարության համար։



Սոցիալիստական գյուղատնտեսության հիմքը, անշուշտ, կոլտնտեսություններն են, սովխոզները և մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունները։ Դրանք տալիս են հացահատիկի, բամբակի հումքի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի պետական մթերումների 100 տոկոսը, կարտոֆիլի՝ 68, բանջարեղենի՝ 92, անասունների, թռչունների և կաթի՝ 94, ձվի՝ 97, բրդի՝ 83 տոկոսը։ Բերված թվերը հաստատում են, որ պարենային ծրագրի իրականացման գործում վճռական դերը պատկանում է հանրային տնտեսություններին։ «Բայց դա,— նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում,— ամենևին չի նշանակում, թե կարելի է անտեսել անձնական օժանդակ տնտեսությունների հնարավորությունները։ Փորձը վկայում է, որ նման տնտեսությունները կարող են էական նեցուկ լինել մսի, կաթի և մի քանի այլ մթերքների արտադրության գործում։ Աշխատավորներին պատկանող այգիները, բանջարանոցները, թռչունները, անասունները մեր ընդհանուր հարստության մի մասն են» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 77)։ Հաշվի առնելով անձնական օժանդակ տնտեսությունների հասարակական նշանակությունը, ՍՍՀՄ քաղաքացիները պարտավոր են ռացիոնալ օգտագործել իրենց հատկացված հողամասերը։ Պետությունը և կոլտնտեսությունները աջակցում են քաղաքացիներին օժանդակ տնտեսությունը վարելու գործում (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 13)։

Արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունը և դրա վրա հիմնված տնտեսության սոցիալիստական սիստեմը պատմական մեծագույն նվաճումն են, որոնց առաջընթացը ընդլայնում է սոցիալիստական դեմոկրատիայի տնտեսական բազան, նյութական երաշխիքներով ապահովում քաղաքացիների՝ օրենքով սահմանված իրավունքներն ու ազատությունները, անհատի ներդաշնակ զարգացումը։ Կոմունիստական շինարարության խնդիրների մեծացմանը զուգընթաց ավելի անհրաժեշտ է դառնում պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության կառավարմանը աշխատավորական լայն զանգվածների ներգրավումը։ Այդ օրինաչափությունը հաստատվում է Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական երկրների պատմական փորձով։

# ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ԹԵՐԵԶԱ ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ և աշխատանքի հանրայնացման նոր, ավելի բարձր աստիճանի հե-
տևողական հաստատման պրոցեսը, այսինքն լիովին, անմիջականորեն հան-
րայնացված աշխատապրոցեսը, որոշում է մեր հասարակության առաջընթացի
գլխավոր ուղղությունը: Այդ պրոցեսի ըմբռնման մեջ ելակետայինը սոցիա-
լիզմի փուլ առ փուլ զարգացման մասին լենինյան թեզիսն է, որում արտա-
հայտված «...նախապատրաստենք՝ մի երկար շարք տարիների աշխատանքով
նախապատրաստենք, անցումը դեպի կոմունիզմ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 44,
էջ 181) պահանջը բխում էր կոմունիստական շինարարության սոցիալ-տըն-
տեսական, քաղաքական և կուլտուր-գաղափարախոսական խնդիրների լուծ-
ման անհրաժեշտությունից:

ՍՄԿԿ XXVI համագումարը խորացրեց ու կոնկրետացրեց կոմունիստա-
կան ֆորմացիայի զարգացման փուլերի վերաբերյալ դրույթը, բացահայտեց
սոցիալիզմը կոմունիզմի վերածելու ուղիներն ու հեռանկարները՝ ղեկավար-
վելով լենինյան այն դրույթով, որ անհրաժեշտ է խստորեն զանազանել իրենց
բնույթով տարբեր փուլերը, զգաստ կերպով հետազոտել դրանց զարգացման
պայմանները (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 9, էջ 157): Արդի պայմաններում
այս դրույթի կոնկրետ կիրառումն է ռեալ սոցիալիզմի պրոբլեմների համա-
կողմանի վերլուծումը, որով կուսակցությունը ճշգրտեց սոցիալիստական հա-
սարակության գործառնության օրենքների, կոմունիստական ապրելակերպի
ձևավորման, հասարակության պլանային, առաջընթաց զարգացման վերա-
բերյալ պատկերացումը: Հասուն սոցիալիզմի պայմաններում հասարակական
առաջընթացի օրինաչափությունների այսպիսի խորացված հետազոտումն այն
բանի հիմնավորումն է, որ զարգացած սոցիալիզմը «անհրաժեշտ, օրինաչափ
և պատմականորեն տևական ժամանակաշրջանն է կոմունիստական ֆորմացիա-
յի կազմավորման մեջ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 129):

Կուսակցության փաստաթղթերում բացահայտվեցին հասուն սոցիալիս-
տական հասարակությունում կատարվող պրոգրեսիվ փոփոխությունների օրի-
նաչափությունները, վերջիններս բնութագրվեցին որպես անմիջականորեն կո-
մունիզմին նախորդող ու դրան վերաճող ավելի կամ պակաս տևական փուլ:
Դրա շնորհիվ, ընդգրկելով հասարակական կյանքի ողջ արտադրողանակը,
առավել է կոնկրետանում կոմունիստական ֆորմացիայի արմատական տար-
բերությունը նախորդ բոլոր ֆորմացիաներից:

Արդ, կուսակցությունը հասարակական գիտությունների բնագավառում
որպես կարևորագույն խնդիր առաջադրել է հասուն սոցիալիզմի սոցիալական



կառուցվածքի և քաղաքական սիստեմի զարգացման, կոմունիստական դաս-
տիարակության, մարդու համակողմանի ու ներդաշնակ զարգացման, սոցիա-
լիստական ապրելակերպի պրոբլեմների մշակումը: Այդ խնդիրը հասարակու-
թյան սոցիալական միասնության ամրապնդման ընթացքում ծագած ոչ հա-
կամարտ հակասությունների հայտնաբերումն ու ժամանակին լուծումն է:
Հասուն սոցիալիզմի սոցիալական կառուցվածքի կատարելագործման պրոբ-
լեմներին անդրադարձավ նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը,
որը կուսակցության տեսական զինանոցը հարստացրեց մի շարք կարևոր ընդ-
հանրացումներով ու հետևություններով: Զարգացած սոցիալիզմի կոնցեպ-
ցիայի մշակմամբ կոնկրետացվել ու ճշգրտվել են կուսակցության ծրագրա-
յին նպատակների իրականացման ուղիներն ու ժամկետները, սահմանվել
տևական պատմական ժամանակաշրջանի ստրատեգիան ու տակտիկան:

Կուսակցության համաժողովը ոչ միայն արձանագրեց սոցիալիստական
հասարակության զարգացման տեսության մեջ կատարված ստեղծագործական
ներդրման փաստը և նշեց դրա հետագա հետազոտման անհրաժեշտությունը,
այլ միևնույն ժամանակ էական ավանդ ներդրեց հասուն սոցիալիզմի պրոբ-
լեմների մշակման գործում: Այստեղ բացառիկ կարևոր նշանակություն ունե-
ցավ զարգացած սոցիալիզմի կատարելագործման դիալեկտիկայի և կոմու-
նիզմի կառուցման բարձրագույն փուլի մասին հարցի մշակումը, հարց, որն
ավելի ուշ մանրամասնորեն քննարկվեց նաև կուսակցության Կենտկոմի 1983 թ.
հունիսյան պլենումում:

ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց զարգացած սոցիալիզմի ժամա-
նակաշրջանի օրինաչափությունները, դրա՝ որպես կոմունիստական ֆորմա-
ցիայի կազմավորման փուլի պատմական տեղը: Դնելով սոցիալիզմի հիմքերը,
սոցիալիզմի կառուցումով հիմնականում ավարտելով անցման շրջանը, հա-
սարակությունը ձեռնամուխ է լինում կոմունիզմին աստիճանաբար անցնելու
համար անհրաժեշտ նյութական և սոցիալական պայմաններ ստեղծելուն, մի
պրոցես, որով բնութագրվում է հասարակական պրոգրեսի էությունը սոցիա-
լիզմի շրջանակներում: Ինչպես հայտնի է, հասուն սոցիալիզմի հասարակու-
թյան էությունը կոմունիզմի կառուցման հիմնական պրոբլեմների կոմպլեք-
սային լուծման միջոցով այն օրինաչափորեն մի ամբողջական սիստեմի վե-
րածելն է: «Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում ավարտվում է բո-
լոր հասարակական հարաբերությունների վերակառուցումը նոր կարգին ներ-
հատուկ կոլեկտիվիստական սկզբունքների հիման վրա: Այդ վերակառուցումն
ընդգրկում է թե՛ նյութական, թե՛ հոգևոր ոլորտը, մեր կյանքի ամբողջ կացու-
թաձևը» (Նույն տեղը, էջ 93):

Այն հետևությունը, որ կոլեկտիվիստական հիմունքներով հասարակական
հարաբերությունների վերակառուցումն ավարտվելու է զարգացած սոցիալիզ-
մի ժամանակաշրջանում, կապված է սոցիալիզմի առաջընթացի հետագա ու-
ղիների սահմանման հետ և ամենից առաջ նշանակում է մեր երկրի տնտեսա-
կան ու սոցիալական զարգացման միասնական ծրագրի հետևողական իրա-
կանացում: Այդ միասնությունն արտահայտված է ժողովրդատնտեսական
պլանների սոցիալական ուղղվածության մեջ, բնութագրում է 80-ական թվա-
կանների համար մշակված կուրսը: Ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրն
է. «ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը ժողո-
վրդական տնտեսության հաստատուն, առաջընթաց զարգացման հիման վրա,
գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու և էկոնոմիկան զարգացման
ինտենսիվ ուղու վրա փոխադրելու , երկրի արտադրական պոտենցիալն ավելի
ռացիոնալ օգտագործելու, ռեսուրսների բոլոր տեսակներն ըստ ամենայնի
խնայելու և աշխատանքի որակը բարելավելու հիման վրա» (Նույն տեղը, էջ
223—224): Դրանով իսկ ենթադրվում է ավարտել էկոնոմիկայի զարգացման
գերազանցապես ինտենսիվ ուղուն անցնելը և իրականացնել կտրուկ շրջադարձ՝
ուղղված աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել
լիովին բավարարմանը:

կապված մասնագիտացման աստիճանի և բնույթի վրա գիտատեխնիկական առաջընթացի ներգործության հետ։

Նշված ուղղություններում աշխատանքային ռեսուրսների կառուցվածքի վերափոխման օրինաչափությունն այն է, որ «արտադրաուժի հիշյալ զարգացումը վերջին հաշվով միշտ վերադառնում, հանգում է ակտիվության մեջ դրված աշխատանքի հասարակական բնույթին, հասարակության ներսում աշխատանքի բաժանմանը, մտավոր աշխատանքի, հատկապես բնագիտության զարգացմանը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, Պետհրատ, 1947, էջ 59)։ Տվյալ օրինաչափությունը որոշում է հասուն սոցիալիստական հասարակության կառուցվածքի զարգացման, նրա անդամների միջև առկա սոցիալական տարբերությունները վերջնականապես հաղթահարելու պրոցեսի կարևորագույն միտումները։ ԳՏՀ-ի սոցիալական հետևանքներն արտահայտվում են ամենից առաջ սոցիալիստական դասակարգերի մերձեցման, նոր պրոֆեսիաների երևան գալու հաշվին բանվոր դասակարգի թվաքանակի աճի մեջ, որոնք անմիջական նյութական բարիքներ արտադրողից պահանջում են աշխատանքի նըկատմամբ բազմազան ունակությունների զուգակցում։

Բանվոր դասակարգի զգալի քանակական աճը ուղեկցվում է նրա կազմի ոչ միատարրության ուժեղացմամբ։ Բանվոր դասակարգը համալրվում է բնակչության տարբեր խավերից՝ իրենց իսկ բանվորների միջավայրից, կոլտնտեսային գյուղացիությունից, նախկինում տնային տնտեսության մեջ զբաղված մարդկանցից և ուրիշներից։ Բանվորների պրոֆեսիոնալ պատրաստումը իրականացվում է գլխավորապես արտադրատեխնիկական ուսումնարաններում, որոնք ապահովում են առավել որակյալ կադրերի թվի վերարտադրությունն ու ավելացումը։ Բանվոր դասակարգի ներսում սոցիալական խավերը զանազանվում են՝ պրոֆեսիոնալ-որակավորման աստիճանավորումով և բնութագրվում են կառուցվածքային անընդհատ տեղաշարժերով։ Այդ տեղաշարժերը կատարվում են բանվոր դասակարգի շրջանակների ընդլայնման հետ մեկտեղ և առաջանում են միջին տեխնիկական բանվորների ու ինժեներատեխնիկական կադրերի գործառության փոխանցելիությամբ։

Սոցիալիստական հասարակությունում իրականացվում է կենդանի աշխատանքի ծախսերի պլանաչափ ռացիոնալացում, բանվորական ուժի ազատման նպատակահարմարությունը գնահատվում է աշխատանքի սուբյեկտիվ՝ արտադրամիջոցների կոլեկտիվ սեփականատիրոջ շահերի տեսանկյունից։ Զարգացած սոցիալիզմի փուլում ինտեգրացիայի պրոցեսները պայմանավորված են արտադրության զարգացմանը և իր կառուցվածքային կատարելագործմանը համապատասխան հավաքական բանվորական ուժի ազատմամբ։ Եթե սոցիալիզմի կառուցման ընթացքում բանվորական ուժի վերաբաշխումը հանգեցրեց քաղաքային և գյուղական բնակչության հարաբերակցության փոփոխմանը, ապա աշխատանքի փոփոխման օրենքի ներազդման ուժեղացմամբ հասուն սոցիալիստական հասարակությունում կենդանի աշխատանքի ազատումը կապված է սոցիալապես ոչ միատարր խմբերի մերձեցման հետ։ Նյութական արտադրության ոլորտներից բանվորների և ծառայողների ազատման ներկայումս նկատվող միտումը բխում է աշխատանքի բովանդակության վերափոխություններից, որոնք խթանում են գործառությունների համատեղումը։

Արտադրամիջոցների կատարելագործումը, աշխատանքի էներգազինվածության և բանվորների համակենտրոնացման աստիճանի հավասարեցումը նյութական նախադրյալներ են նախապատրաստում աշխատանքի սոցիալական անհամասեռությունը վերջնականորեն հաղթահարելու համար։ Ֆիզիկական և մտավոր աշխատանքի տեսակների որակական միակերպության հաստատումը՝ կապված արտադրության բոլոր ոլորտների ինդուստրիալ մակարդակի բարձրացման հետ, ընկած է բանվորների ներդասակարգային ինտեգրացիայի և, միաժամանակ, արդյունաբերական ու գյուղատնտեսական աշխատանքի ներկայացուցիչների՝ սոցիալիստական դասակարգերի, քաղաքի և գյուղի բընակչության սոցիալական մերձեցման հիմքում։ Իսկ քանի որ ֆիզիկական



աշխատանքի տեսակների որակական միօրինակությունը ձեռք է բերվում մտավոր աշխատանքի ծախսերի բաժինը հետևողականորեն ավելացնելու և կառավարչական գործունեության համընդհանրացման միջոցով, սոցիալիզմի օրոք միջդասակարգային տարբերությունների վերացումը անբաժանելի է ֆիզիկական և մտավոր աշխատանքով զբաղվածների միջև պահպանված սոցիալական սահմանների հաղթահարումից։

Միջդասակարգային տարբերությունների վերացման գործում վճռական դեր է խաղում կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացումը։ Գյուղի արտադրական բազիսի փոփոխությունները գյուղատնտեսական աշխատանքի անշեղ ինդուստրացման, տեխնիկական զինվածությամբ արդյունաբերական աշխատանքի հետ նրա մերձեցման, ինչպես նաև արտադրության կազմակերպական հարաբերությունների կատարելագործման մեջ են։ Արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքի որակական միատեսակության հասնելու համար «կպահանջվի է՛լ ավելի կատարելագործել արտադրաուժերի տեղաբաշխումը, ռեգիոնալ մասնագիտացումն ու կոոպերացումը, տնտեսական կապերի և փոխադրումների սխեմաները» (Յու. Վ. Անդրոպով, ՍՍՀՄ վաթսուն տարին, «Հայաստան», հրատ., 1983, էջ 11)։

Պարենային ծրագրում ներկայացված են գյուղատնտեսության և դրան սպասարկող արդյունաբերական ճյուղերի, գյուղատնտեսական արտադրանքի մթերման, պահպանման, տեղափոխման և վերամշակման, սննդի արդյունաբերության զարգացման հարցերը։ Այդ ագրոարդյունաբերական, պարենային կոմպլեքսը պլանավորվելու և կառավարվելու է որպես միասնական ամբողջություն։ Պարենային ծրագիրը նախատեսում է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա զարգացում, դրա տեխնիկական վերազինում։ Դա նշանակում է միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հիման վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման ուժեղացում։ Յու. Վ. Անդրոպովը մատնանշում է, որ «մեր ագրոարդյունաբերական կոմպլեքսի, ինչպես որ, ի միջի այլոց, ամբողջությամբ վերցրած երկրի էկոնոմիկայի հետագա զարգացումը կպահանջի գյուղատնտեսության առավել խոր ու հետևողական մասնագիտացում ողջ երկրի մասշտաբներով» (Նույն տեղը, էջ 12)։

Պարենային ծրագրի իրականացումը հսկայական նշանակություն ունի բնակչությանը պարեն մատակարարելը բարելավելու կոմպլեքս պլանի հետևողականորեն լուծելու գործում, խնդիր, որի էությունն է «մոտեցնել ու միավորել արդյունաբերությունը և երկրագործությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ, 42, էջ 17)։ Կարևոր է շեշտել, որ ագրոարդյունաբերական միավորումների ստեղծումը խթանում է սոցիալիստական գյուղատնտեսության երկու ձևերի՝ կոլտնտեսային և սովխոզային ձևերի զարգացումը, ինչպես նաև թույլ է տալիս արտադրական գործունեության ընթացքում առավել համաձայնեցնել այդ ձևերի փոխգործողությունը։

ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում նշված է, որ քաղաքի և գյուղի աշխատավորների նյութական կյանքի մակարդակների մոտեցումը տասներորդ հնգամյակում ևս տեղի է ունեցել կոլտնտեսային գյուղացիության եկամուտների աճի առաջանցիկ տեմպերով. բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը բարձրացավ գրեթե 16, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը 26 տոկոսով։ Տասնմեկերորդ հնգամյակում գյուղատնտեսության համար կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը պետք է լինի ձեռք բերված մակարդակից ոչ պակաս, որը կազմում է ավելի քան 27 տոկոս և զգալիորեն գերազանցում այդ մակարդակը յոթերորդ, ութերորդ և իններորդ հնգամյակներում։ Կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության համար հատկացվող կապիտալ ներդրումները կավելանան 39 տոկոսով։ Բանվորների

և ծառայողների աշխատավարձի համեմատությամբ առաջանցիկ կերպով կբարձրանան կոլտնտեսականների եկամուտները հանրային արտադրությունից: Տասնմեկերորդ հնգամյակում կոլտնտեսականների եկամուտները կաճեն 20—22, իսկ բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը՝ 13—16 տոկոսով:

Գյուղատնտեսական աշխատանքի ինդուստրացումը կապված է մեքենայացված աշխատանքով զբաղված կոլտնտեսային գյուղացիության խմբերի թվաքանակի ավելացման հետ, ինչպես նաև այնպիսի աշխատողների խմբի հետ, որոնք կատարում են ոչ մեքենայացված, բայց հատուկ պատրաստականություն պահանջող աշխատանք: Դրա հետ մեկտեղ նկատվում է չմասնագիտացված ձեռքի աշխատանքով զբաղվածների թվի կրճատում: Կոլտնտեսային գյուղացիության տեսակարար կշիռը բնակչության ընդհանուր կազմում շարունակում է նվազել: Այս պրոցեսը բնութագրվում է կոլտնտեսականների պրոֆեսիոնալ կազմի զգալի փոփոխություններով՝ կապված բարձր որակավորում ունեցող մասնագետ-աշխատողների բացարձակ թվի և բաժնի աճի հետ: Գյուղատնտեսական աշխատանքը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածվելու համեմատ գյուղատնտեսությունը ստանում է որակապես նոր սոցիալական երանգներ, որոնք նրան մերձեցնում են բանվոր դասակարգի և մտավորականության հետ: Նոր մասնագիտությունների երևան գալը, լայն պրոֆիլի աշխատողների թվի ավելացումը, կրթության ու կուլտուրայի վերելքը ամբողջությամբ վերցրած վկայում են կոլտնտեսային գյուղացիության սոցիալական դեմքի վերափոխման և նրա զարգացման պրոգրեսիվ միտումների մասին:

Սոցիալիստական դասակարգերի և մտավորականության սոցիալական խավի ինտեգրացման կարևոր ցուցանիշ է կյանքի մակարդակի, բարեկեցության մակարդակի հավասարեցումը: Սոցիալիստական բաշխիչ հարաբերությունների կատարելագործումը պայմանավորեց կոլտնտեսականների ռեալ եկամուտների չափերի էական մերձեցումը բանվորների և ծառայողների ռեալ եկամուտների հետ: Այդ բնագավառում առաջընթացը միտում է կոլտնտեսություններում և պետական գյուղատնտեսական ձեռնարկություններում միատեսակ բարդության, դժվարության ու ինտենսիվության աշխատանքի վարձատրության գործում միասնականությունն ապահովելուն: Կոլտնտեսային գյուղացիությունը նույնպես, ինչպես բանվոր դասակարգն ու մտավորականությունը, սպառման հասարակական ֆոնդերից օգտագործում է միջոցներ: Կոլտնտեսականների վրա, մասնավորապես, տարածված է գյուղական վայրերում ապրող բանվորների և ծառայողների համար սահմանված կենսաթոշակային ապահովությունը: Կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրություն սահմանելը, ինչպես նաև թողարկված արտադրանքի քանակի ու որակի կամ համախառն եկամտի համար լրացուցիչ հավելավճար սահմանելը, խթանում են կոլտնտեսականների ռեալ եկամուտների աճը:

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի սոցիալական անմիատարրության հաղթահարումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացման վրա գիտատեխնիկական հեղափոխության վճռորոշ ներգործության պայմաններում, բնութագրվում է մտավորականության աճի տեմպերի արագացումով: Գրականության մեջ նշվում է հասուն սոցիալիզմի հասարակության մեջ ծառայողների թվաքանակի փոփոխությունների դինամիկայի հակասական բնույթը: Զբաղվածության կառուցվածքի զարգացման մեջ առկա հակադիր միտումները հանգում են՝ մի կողմից, բանվորի աշխատանքում կառավարման ֆունկցիաների է՛լ ավելի մեծացման, գիտական ստորաբաժանումների թվի և արտադրության մասնագիտացման աճի մեծացմանը, մյուս կողմից՝ կառավարչական աշխատանքի ֆունկցիաների կրճատմանը՝ ելնելով նրա տնտեսական անհրաժեշտությունից: Արտադրության առաջընթացի հեռանկարային ուղղությունները՝ հաշվի առնելով աշխատանքի պահանջմունքների հաջող կանխագուշակումը, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միակողմանի հաղթահարումը, սերտորեն կապված են աճի տեմպերի արդյունավետ կարգավորման և սովետական մտավորականության բազմաքանակ ջոկատների հարաբերակցության խնդրի հետ:

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում մտավորականության ընդհանուր քանակական աճը առաջացել է աշխատանքի արտադրատեխնիկական և հասարակական կազմակերպման ֆունկցիայի դերի բարձրացմամբ, արտադրական գործունեության մասշտաբների ու կոոպերացիայի ընդլայնմամբ: Աշխատողների ընդհանուր թվում աճում է մտավորականության տեսակարար կշիռը, փոխվում է քանական հարաբերակցությունը նրա խավերի և պրոֆեսիոնալ խմբերի միջև: Ավելանում է գիտական աշխատողների, ինժեներների, տեխնիկների, գյուղատնտեսների, ուսուցիչների ու բժիշկների թիվը, որոնք կազմում են գերազանցապես մտավոր աշխատանքով զբաղվածների կեսից ավելին: Գիտատեխնիկական մտավորականության աճի տեմպերը վերջին տարիներին սկսել են գերազանցել բոլոր մյուս սոցիալական խմբերի աճին: Միաժամանակ մեծանում է արդյունաբերության մեջ ինժեներատեխնիկական աշխատողների տեսակարար կշիռը: Նկատվում է նաև տեղաշարժ միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետների տեսակարար կշռում:

ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց սոցիալիզմի պայմաններում հասարակական զարգացման սուբյեկտիվ գործոնների հարաճուն նշանակությունը՝ բարենպաստ, վերջին հաշվով վճռորոշ նշանակություն ունեցող, օբյեկտիվ նախադրյալների առկայության պայմաններում: Այս կապակցությամբ առաջադրվեց արդյունավետ ժողովրդագրական քաղաքականության, ընտանիքի ամրապնդման պրոբլեմները, շեշտվեց սպասարկման ոլորտի բացառիկ կարևորությունը, ոչ միայն դասակարգային, այլև տերիտորիալ-արտադրական տեսանկյունից սոցիալական տարբերությունների համահարթման, հասարակության և բնության միջև ներդաշնակ հարաբերություններ հաստատելու անհրաժեշտությունը: Սոցիալական քաղաքականության հարցերի կոմպլեքսային լուծման կողմնորոշումը խթանում է հոգևոր առաջընթացը, սովետական մարդկանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, նրանց մեջ կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը:

# ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԵՎ ՊԱՏՎԱՎՈՐ ԳՈՐԾ

**Ս. Թ. ԹՈՎՄԱՍՅԱՆ**
ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ հունիսյան (1983 թ.) պլենումը, համակողմանիորեն քննարկելով կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը, հատկապես կարևորեց քաղաքական ուսուցման վճռական դերը կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրանց քաղաքական ակտիվության բարձրացման գործում։ «Քաղաքական ուսուցման իմաստն այն է,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը,— որ յուրաքանչյուր ոք ավելի խոր ըմբռնի կուսակցության քաղաքականությունն այսօրվա պայմաններում, կարողանա պրակտիկայում կիրառել ստացած գիտելիքները, ավելի պարզորոշ պատկերացնել և գործով կատարել իր սեփական պարտքը»։*

*Պլենումը խնդիր դրեց փոխել կուսակցական լուսավորության, մասսայական քաղաքական ուսուցման ցանցի աշխատանքի ոճը, ըստ ամենայնի զարգացնել պարապմունքների ակտիվ ձևերը, արմատախիլ անել տիրացուականությունն ու ձևամոլությունը, հաշվի առնել մարդկանց, սոցիալական խմբերի առանձնահատկությունները։ Այս հիմնական խնդրի իրականացման գործում կենտրոնական դեմքը կուսակցության պրոպագանդիստական կադրերն են։*

*Ստեփանավանի շրջանի Վարդաբլուրի պետական տնտեսության կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Զավեն Վարդանյանը գաղափարական բարձր մակարդակով է վարում պարապմունքները։ Քաղուսուցման անցած ուսումնական տարում նա հանգամանորեն մշակեց ՍՍՀՄ պարենային ծրագրի դասընթացից «Գյուղատնտեսության զարգացումը տասնմեկ—տասներկուերորդ հնգամյակներում» թեմային նվիրված գրականությունը։ Պրոպագանդիստը, ինչպես միշտ, պատրաստել էր նաև թվական տվյալներ ընթացիկ և հաջորդ հնգամյակներում Հայաստանի, Ստեփանավանի շրջանի և իրենց գյուղի պետական տնտեսության զարգացման վերաբերյալ։*

*Ավելի քան չորս տասնամյակի պրոպագանդիստական աշխատանքի փորձ ունեցող Զ. Վարդանյանը աշխույժ զրույցի, հարց ու պատասխանի ձևով օրվա թեմայի տեսական հարցերը հմտորեն կապում է յուրաքանչյուր կոմունիստի գործունեության հետ և ցույց տալիս այն կոնկրետ խնդիրները, որ կազմակերպության այս կամ այն անդամը պետք է լուծի պարենային ծրագրի իրականացման ասպարեզում։*



*Պրոպագանդիստ Զ. Վարդանյանը երկար տարիներ ղեկավարել է գյուղի միջնակարգ դպրոցը և մանկավարժների տեսական սեմինարը, վաստակած հանգստի անցել, բայց չի կտրվում հասարակական-քաղաքական կյանքից։ Այժմ նույնպես նա բարեխղճորեն ու բարձր պատասխանատվությամբ է կատարում պրոպագանդիստի պատվավոր գործը։*

*Գյուղում լավ ճանաչում ու հարգում են Զ. Վարդանյանին, բարձր գնահատում նրա երկարամյա մանկավարժական ու պրոպագանդիստական վաստակը։ Նա լավ գիտի, որ առանց ունկնդիրների հետ մշտական կապի, առանց մարդկանց խոհերը, տրամադրությունները, հոգսերը իմանալու, նրանց աշխատանքային և կենցաղային պայմաններին ծանոթանալու, պրոպագանդան կլինի վերացական, գրքային, կյանքից կտրված։ Ահա թե ինչու հաճախ լինում է տնտեսության արտադրական տեղամասերում, կապ հաստատում ունկնդիրների հետ, ծանոթանում նրանց աշխատանքին։ Նրա գրեթե բոլոր ունկնդիրներն արտադրության առաջավորներ են, մի մասը նաև՝ ագիտատորներ և ամենուրեք օրինակ են ծառայում։ Վերջերս կուսշրջկոմը լույս ընծայեց «Խոսքի և գործի միասնության նշանաբանով» հատուկ թերթիկ՝ դպրոցի ունկնդիր, բրիգադավար-ագիտատոր, կոմունիստ Սուրեն Ներսիսյանի աշխատանքի փորձի մասին։ Ս. Ներսիսյանի ղեկավարած կաթնապրանքային բրիգադում տարեցտարի աճում է կովերի կաթնատվությունը։ Օրինակ, 1982 թ. այն կազմեց 3.014 կիլոգրամ։ Դա ամբողջ շրջանում միակ բրիգադն է, որը նվաճել է այսպիսի բարձր ցուցանիշ։*

*Ունկնդիր Ս. Շահբազյանի ղեկավարած բրիգադը զբաղվում է մատղաշի ինտենսիվ բտմամբ և մթերակայան հանձնած անասունների միջին կենդանի քաշը 1982 թ. հասցրեց 378 կիլոգրամի։ Ավելի բարձր են ընթացիկ տարվա առաջին կիսամյակի ցուցանիշները. հանձնված 57 գլխի միջին քաշը կազմել է 425 կիլոգրամ։*

*Շատ չի անցել, երբ կուսշրջկոմի լույս ընծայած «Վաստակաշատ պրոպագանդիստներ» խորագրով առաջավոր փորձի բյուլետենում շարադրվեց Զ. Վարդանյանի դրական փորձը՝ «Պրոպագանդիստական խոսքի վարպետը» վերտառությամբ։ Այնտեղ նշված էր, որ նա բարեխղճորեն է նախապատրաստվում պարապմունքներին, նյութը հաղորդում է տպավորիչ, գեղեցիկ լեզվով։ Նա հղկում, կատարելագործում է իր լեզվական ունակությունները և պատկերավոր արտահայտչամիջոցներով գրավում ունկնդիրներին, շարժում նրանց հետաքրքրասիրությունը ողջ պարապմունքի ընթացքում։*

*Զ. Վարդանյանի նման նվիրված ու բարեխիղճ պրոպագանդիստներ շրջանում շատ կան։ Օրինակ, Կուրթանի պետական տնտեսության կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Սարգիս Մագթաղյանը։ Աճել է գյուղում, լայն ճանաչման ու խոր հարգանքի արժանացել իր ծավալած հասարակական-քաղաքական արգասավոր աշխատանքի շնորհիվ։ Ակտիվ կոմերիտական, տնտեսության ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար, կուսբյուրոյի անդամ, կուսկազմակերպության քարտուղար, Հայրենական պատերազմի ակտիվ մասնակից, շքանշանի, մեդալների ասպետ։ Բանակից զորացրվելուց հետո դաշտավարական բրիգադի բրիգադավար, ֆերմայի վարիչ, կոլտնտեսության վարչության նախագահի տեղակալ, մանկավարժական հեռակա բարձրագույն կրթություն, գյուղի միջնակարգ դպրոցի լավագույն մանկավարժ, 1973 թ. մինչև օրս՝ ուսմասվար։ Ահա Ս. Մագթաղյանի կյանքի ուղին։ «Չթուլացող եռանդ, պրպտումներ, հասարակական-քաղաքական կյանքը նորով լրացնելու անկոտրում ձգտում»— այսպես է բնութագրվել Ս. Մագթաղյանը պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի լույս ընծայած «Պարտքի զգացումով» խորագիրը կրող բյուլետենում՝ նվիրված նրա պրոպագանդիստական աշխատանքի դրական փորձին։*

*Ուշագրավ էր Ս. Մագթաղյանի ղեկավարած մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի «ՍՍՀՄ պարենային ծրագիրը» ուսումնասիրող դասընթացի*

այս տարվա մարտին կայացած հերթական բաց պարապմունքը։ Դրան մասնակցում էին մի շարք գյուղերի պրոպագանդիստներ ու կուսկազմակերպությունների քարտուղարներ, կուսշրջկոմի աշխատողներ, կուսակցական ուսուցման մեթոդխորհրդի անդամներ։ Պրոպագանդիստը, որը պարապմունքը վարում էր հարցման ձևով, նախ և առաջ պարզեց, թե ունկնդիրներն ինչպես են յուրացրել անցած նյութը՝ «Գյուղատնտեսության զարգացումը տասնմեկերորդ և տասներկուերորդ հնգամյակներում և կոլտնտեսությունների ու սովխոզների վճռական դերը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում» թեման։ Կոմունիստներ Գ. Մաթևոսյանը, Ռ. Խարազյանը, Հ. Հարությունյանը, Թ. Գևորգյանը, Վ. Սինդոյանը և ուրիշներ, նշելով ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումից հետո գյուղատնտեսության տեխնիկական զինվածության, մթերքների արտադրության ավելացման գործում մեր երկրի, հանրապետության հաջողությունները, միաժամանակ փաստերով ցույց տվեցին, թե ինչպես է ամրապնդվել ու հզորացել իրենց տնտեսությունը, ինչպես են փոխվել, բարելավվել մարդկանց կուլտուր-կենցաղային պայմանները։ Միաժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումների լույսի ներքո նրանք ցույց տվեցին, թե ընթացիկ և եկող՝ տասներկուերորդ հնգամյակներում ինչպիսի տնտեսական և սոցիալական զարգացում է ապրելու գյուղը, որ գյուղատնտեսությունը փոխադրվելու է ինդուստրիալ հիմքի վրա, ներքին ռեզերվները բացահայտելու և գործողության մեջ դնելու միջոցով աճելու է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, է՛լ ավելի են բարելավվելու արտադրության մարդկանց նյութական ու կենցաղային պայմանները։ Նրանք առաջ քաշեցին բոլոր օղակներում աշխատանքային և կատարողական կարգապահությունն ամրապնդելու հարցը և պատրաստակամություն հայտնեցին՝ նպաստելու դրան։

Այդ օրվա պարապմունքը հետաքրքրական էր նաև նրանով, որ այնտեղ հրավիրվել էին նաև տնտեսագիտական դպրոցների պրոպագանդիստներ, տրնտեսության դիրեկտոր Վ. Հարությունյանը և գլխավոր անասնաբույժ Ե. Նալբանդյանը, որոնք ունկնդիրներին ծանոթացրին պարենային ծրագրի կատարման գործում տնտեսության առաջադրանքներին ու խնդիրներին, պատմեցին այն մասին, թե ինչ է արվում արտադրության մեջ բրիգադային կապալն արմատավորելու, մթերքների արտադրության ավելացման գործում աշխատողների անձնական շահագրգռությունը բարձրացնելու, հողը, ջուրը, տեխնիկան, պարարտանյութերն արդյունավետորեն օգտագործելու և ծախսված միջոցների փոխհատուցումը լիովին ապահովելու նպատակով։

Այս բոլորից հետո պրոպագանդիստն ամփոփեց անցած թեման, նշեց, որ տնտեսության աշխատավորները, քաղդպրոցի կոմունիստ ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ, անցած տարի նշանակալի հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Պլանից ավելի արտադրվել են մեծ քանակությամբ կաթ, միս, հացահատիկ, կարտոֆիլ, գերակատարվել են պետությանը այդ մթերքների վաճառքի առաջադրանքները և տարին փակվել է 314 հազար ռուբլի օգուտով։ Ընդ որում, անթերի են կատարվել նաև մթերքների արտադրության ու պետական վաճառքի սոցիալիստական պարտավորությունները։

«Կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների բարելավումը և գյուղի կադրերով ապահովումը» նոր նյութի պարզաբանման ժամանակ Ս. Մագթաղյանն ունկնդիրներին պատմեց այն հետևողական ու լուրջ աշխատանքի մասին, որ կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը կատարում են՝ գյուղատնտեսությունը որակյալ մասնագիտական կադրերով ամրապնդելու, նրանց վարձատրությունն ավելացնելու, գյուղի աշխատավորների սոցիալ-կենցաղային պայմանները բարելավելու համար։ Նախապես պատրաստած աղյուսակների, դիագրամների, պլակատների և ցուցադրական այլ նյու-



թերի միջոցով նա ունկնդիրներին ծանոթացրեց գյուղատնտեսական արտադրության վերելքին, գյուղում սոցիալական զարգացման հաջողություններին, բնակիչների կուլտուրական առաջընթացին։ Պրոպագանդիստը միաժամանակ համոզիչ փաստերով ցույց տվեց, թե ՍՄԿԿ Կենտկոմը, սովետական կառավարությունը որքա՜ն ջանքեր են գործադրում սպառազինությունների մրցավազքը կասեցնելու, միջազգային աղետից աշխարհը փրկելու, սովետական մարդկանց խաղաղ ստեղծագործ աշխատանքն ապահովելու համար։

Այդ օրը պարապմունքն ունկնդրում էին նաև հարևան գյուղերի պրոպագանդիստները։ Նրանցից Կ. Վարդանյանը (Գյուլագարակ), Ն. Վարդանյանը (Վարդաբլուր), Ն. Ճշմարիտյանը (Գյառգյառ), Մ. Սավթալյանը (Հոբարձի) և ուրիշներ բարձր գնահատեցին Ս. Մագթաղյանի վարած պարապմունքը։

Վերջերս կուսշրջկոմի բյուրոն քննարկեց Ս. Մագթաղյանի հաշվետվությունը և նշեց, որ նա մեծ փորձ է ձեռք բերել տեսական հարցերը տնտեսության արտադրական խնդիրների հետ շաղկապելու, ունկնդիրների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու և այդ ամենը տնտեսության առջև ծառացած խնդիրների կատարմանն ուղղելու գործում։ Դրանով պետք է բացատրել, որ նրա ունկնդիրներն արտադրության առաջավորներ են և իրենց արժանի ավանդն են մուծում տնտեսության ընդհանուր հաջողություններում։ Բյուրոն հանձնարարեց կուսկազմակերպություններին՝ ուսումնասիրել ու արմատավորել լավագույն պրոպագանդիստների, այդ թվում նաև Ս. Մագթաղյանի դրական փորձը, հետևողականորեն բարձրացնել քաղաքական ուսուցման գաղափարական մակարդակը, այն ծառայեցնել տասնմեկերորդ հնգամյակի պլանների հաջող կատարմանը։

Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքում մենք ելնում ենք ՍՄԿԿ XXVI համագումարի այն կարևոր պահանջից, որ՝ «Կուսակցության գաղափարախոսական, պրոպագանդիստական ակտիվին առաջնահերթ դեր է պատկանում մասսաների մարքս-լենինյան կրթության և դաստիարակության, կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանն ուղղված նրանց ստեղծագործական ակտիվության հետագա զարգացման գործում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 127)։ Այո՛, այդ վսեմ խնդիրների լուծման մեջ է պրոպագանդիստի պարտքը։ Նա մեր կուսակցության մարտական զինվորն է, որը մարքս-լենինյան տեսության ամենահաղթ գաղափարները հասցնում է կոմունիստներին, անկուսակցականներին, պարզաբանում նրանց մեր կուսակցության արդի ներքին ու արտաքին քաղաքականությունը։

Լավագույն պրոպագանդիստների շարքում արժե հիշատակել նաև Խ. Հարությունյանին (Գյուլագարակ), Խ. Ջիլավյանին (Ագարակ), Մ. Պետրովային (Կիրովո), Մ. Սավթալյանին (Հոբարձի), Ս. Այվազյանին (Ուռուտ), Ն. Վարդանյանին (Վարդաբլուր), Մ. Տարանուշինին («Արդկապ» գործարան), Ս. Ոսկանյանին (կահույքի ֆաբրիկա) և շատ ուրիշների։ Կահույքի ֆաբրիկայի կուսկազմակերպության գիտական կոմունիզմի հիմունքների դպրոցը ղեկավարում է ձեռնարկության երիտասարդ դիրեկտոր Ս. Ոսկանյանը։ Նա մեծ նշանակություն է տալիս կոմունիստների քաղաքական ուսուցմանը, բանվորների տնտեսագիտական կրթությանը, խելացիորեն նախապատրաստվում պարապմունքներին, պլակատների, դիագրամների, հատուկ քարտեզների ու ցուցադրական ուրիշ առատ նյութերի օգտագործմամբ հետաքրքրական ու բովանդակալից դարձնում պարապմունքները։ Հերթական պարապմունքում, որը նվիրված էր ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ՍՍՀՄ 60 տարին զեկուցման «Անցած ուղու արդյունքները և ազգային քաղաքականության խնդիրները» բաժնին, պրոպագանդիստը ցույց տվեց, որ շնորհիվ կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի մեր երկրի մեծ ու փոքր ազգերի միջև հաստատվել են եղբայրական փոխօգնության սերտ հարաբերություններ։ Նա կոնկրետ օրինակներով ցույց տվեց, որ ֆաբրիկայում համերաշխ ու արդյունավետորեն աշխատում և թողարկվող արտադրանքի որակի ու հեղինակության բարձրացման համար

պայքարում են յոթ տարբեր ազգերի ներկայացուցիչներ, որ ֆաբրիկայի համաչափ, նորմալ աշխատանքի ապահովման համար հումք, օժանդակ նյութեր են մատակարարում յոթ եղբայրական հանրապետությունների տասնյակ քաղաքների տարբեր ազգությունների բանվորներ և ինժեներատեխնիկական աշխատողներ։ Լինելով կահույքի արտադրության հմուտ մասնագետ և ունենալով քաղաքական լավ պատրաստականություն՝ պրոպագանդիստը պարապմունքների ընթացքում քաղաքական-տեսական հարցերը շաղկապում է արտադրության կոնկրետ խնդիրների հետ։

Գաղտնիք չէ, որ քաղաքական-պրոպագանդիստական աշխատանքը ցանկալի արդյունք է տալիս այնտեղ, որտեղ կուսկազմակերպությունը, նրա բյուրոն ու քարտուղարը ճիշտ են պատկերացնում գործի կարևորությունը և հետևողական ուշադրություն են նվիրում կոմունիստների քաղաքական ուսուցմանը։ Մեր շրջանում ունենք շատ կուսկազմակերպություններ, որոնք լավ են զբաղվում կուսակցական-քաղաքական լուսավորության հարցերով։ Նրանցից կարելի է առանձնացնել հատկապես Ագարակի, Գյառգյառի, Վարդաբլուրի, Կուրթանի, Ուռուտի պետական տնտեսությունների, «Արդկապ» և պանրի գործարանների կուսկազմակերպությունները։ Վերցնենք Գյուլագարակի պետական տնտեսության օրինակը։ Այստեղ կոմպլեկտավորվել և գործում են մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քաղդպրոց և տնտեսագիտական ութ դպրոցներ։ Պրոպագանդիստական կադրերը քաղաքականապես հասուն, գրագետ, գործիմաց, բարեխիղճ կոմունիստներ են ու մասնագետներ, որոնք բարձր պատասխանատվություն են դրսևորում իրենց վստահված այդ պատվավոր պարտականությունը կատարելու գործում։

Կուսկազմակերպությունը ժողովներում, բյուրոյի նիստերում տարեկան մի քանի անգամ անդրադառնում է քաղուսուցման, տնտեսագիտական կրթության հարցերին, տեղեկատու նյութեր տրամադրում պրոպագանդիստներին, բարձրացնում ունկնդիրների պատասխանատվությունը, ապահովում պարապմունքների գաղափարական խոր բովանդակությունը։ Կուսբյուրոյի քարտուղար Փ. Դոխոլյանը և բյուրոյի անդամները հաճախ ստուգում են պարապմունքները, ապահովում ունկնդիրների ակտիվ մասնակցությունը պարապմունքներին, պայմաններ ստեղծում դրանց նորմալ անցկացման համար։ Ժողովներում կամ բյուրոների նիստերում պարբերաբար քննարկում են պրոպագանդիստների, առանձին ունկնդիրների ինֆորմացիաները քաղաքական ուսուցման արդյունավետությունը բարձրացնելու վերաբերյալ։ Եվ, ահա արդյունքը. կուսակցական և տնտեսագիտական դպրոցների պարապմունքներն անցնում են հետաքրքրական, բովանդակալից, գաղափարական բարձր մակարդակով և նպաստում տնտեսության առջև ծառացած արտադրական խնդիրների լուծմանը։ Այդ ամենը կոնկրետ արտացոլվում է պետական տնտեսության դրական ցուցանիշներում։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն արդյունավետ կերպով օգնում են պրոպագանդիստներին ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումների մասսայականացման ու պարզաբանման գործում։ Կուսշրջկոմի բյուրոյում քննարկվել է «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցկական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի ծրագրային որոշումը՝ կապված շրջանում կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի հետագա կատարելագործման ասպարեզում կուսկազմակերպությունների և պրոպագանդիստների խնդիրների հետ։ Այդ որոշումը հատուկ հսկողությամբ քննարկվել է նաև բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում, մշակվել և իրականացվում են կոնկրետ միջոցառումներ։ Դրանցից մեկը վերաբերում է պրոպագանդիստական կադրերի հետ տարվող աշխատանքին։ Նախորդ տարիների համեմատությամբ զգալի չափով բարելավվել է նրանց որակական կազմը, այն համալրվել է երիտասարդ, քաղաքականապես գրագետ, պարտաճանաչ կոմունիստներով։ Մենք հասել ենք այն բանին, որ կուսակցական ուսուցման համակարգի բոլոր պրոպագանդիստները, իսկ տնտեսագիտական կրթու-



թյան համակարգի պրոպագանդիստների կեսից ավելին ունեն բարձրագույն կրթություն, 3-ը գիտությունների թեկնածուներ են։ Նրանցից 73-ը կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարներ են, որոնք բարեխղճորեն կատարում են այդ պատվավոր պարտականությունը։

Առաջավոր փորձը ընդհանրացնելու նպատակով հրապարակում ենք դրան նվիրված բյուլետեններ ու գրքույկներ։ «Վաստակաշատ պրոպագանդիստներ», «Առաջավոր փորձը՝ բոլորին», «Պրոպագանդիստը՝ որակի և արդյունավետության հնգամյակին» բյուլետեններում շարադրված են Վ. Սինդոյանի (Կուրթան), Ջ. Ջիլավյանի (Ագարակ), Ն. Ճշմարիտյանի և Մ. Մովսիսյանի (Գյառգյառ), Ս. Գրիգորյանի (բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների գործարան) և ուրիշների աշխատանքի առաջավոր փորձը։ Ուշագրավ են պրոպագանդիստներ Գ. Ռևազյանի (Սվերդլովի կոլտնտեսություն), Խ. Հարությունյանի (Գյուլագարակի պետտնտեսություն), Ս. Մագթաղյանի (Կուրթանի պետտնտեսություն), Մ. Պետրովայի (Կիրովյի կոլտնտեսություն) պրոպագանդիստական բեղմնավոր գործունեությանը նվիրված գրքույկները։

Քաղպարապմունքների մասսայական ստուգումները, առանձին պրոպագանդիստների մոտ բաց պարապմունքների ունկնդրումները, առաջավոր փորձին նվիրված բյուլետենների ու գրքույկների լույսընծայումը նպաստում են քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության արմատական բարելավմանը, պրոպագանդայի առաջավոր մեթոդների ուսումնասիրմանն ու ներդրմանը։

Պրոպագանդիստի պարտքն է արձագանքել քաղաքական-գաղափարական աշխատանքի նորին, առաջադիմականին, յուրացնել և տարածել այն պրակտիկ աշխատանքում։ Ստեփանավանի պրոպագանդիստներն առաջիններից էին, որ արձագանքեցին անձնական ստեղծագործական պլանով աշխատելու մեր երկրի առաջավոր պրոպագանդիստների նախաձեռնությանը։ Տարեցտարի ավելանում է այդպիսի պլանով աշխատող պրոպագանդիստների թիվը, ընթացիկ ուսումնական տարում այն հասել է 102-ի։ Չէ որ այժմ պրոպագանդիստի գլխավոր խնդիրն է՝ նյութը լավ հաղորդելուց, ունկնդիրների կողմից դրա հաջող յուրացումն ապահովելուց բացի օգնել վերջիններիս, որպեսզի նրանք լավ աշխատեն, դառնան արտադրության առաջավորներ, օգնել այն կոլեկտիվներին, որտեղ իրենք պրոպագանդիստներ են, նպաստեն այն բոլոր լուրջ ու կարևոր խնդիրների լուծմանը, որոնք առաջադրել է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը։

Գյուլագարակի պետական տնտեսության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Խ. Հարությունյանը մի քանի տարի է, ինչ աշխատում է անձնական ստեղծագործական պլանով։ Նա հաճախ լինում է դաշտերում, ֆերմաներում, յայլաներում, շփվում, զրուցում է ունկնդիրների հետ, հետաքրքրվում նրանց աշխատանքով, խորհուրդներ տալիս, միջնորդում ղեկավարությանը՝ մրցությամբ ստանձնած պարտավորությունները կատարելիս առաջացած խոչընդոտները հաղթահարելու գործում։ Այդ ամենի արդյունքն այն է, որ նրա ունկնդիրներից կոմունիստներ Արշ. Դոխոլյանը, Գ. Այվազյանը (դաշտավարական բրիգադավարներ), Վ. Սուքիասյանը (բանջարաբոստանային բրիգադի բրիգադավար), Մ. Սարիբեկյանը (անասնապահական ֆերմայի բրիգադավար) և շատ ուրիշներ գյուղատնտեսական արտադրության առաջամարտիկներ են, շքանշանակիրներ։ Նրանք տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարեցին 4—4,5 տարում և այժմ հաջողությամբ կենսագործում են ՍՍՀՄ պարենային ծրագիրը։ ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, կրկնակի շքանշանակիր Արշ. Դոխոլյանի և Գ. Այվազյանի ղեկավարած դաշտավարական բրիգադները 1982 թ. կարտոֆիլի ցանքադաշտերի ամեն մի հեկտարից աճեցրին 208-ական ցենտներ միջին բերք, որը պլանից զգալիորեն ավելի է։ Իսկ Վ. Սուքիասյանի ղեկավարած բրիգադի յուրաքանչյուր հեկտարից ապահովվեց 500 ցենտներ բանջարեղեն, պլանով նախատեսված 315 ցենտների փոխարեն։ Նրանք հաջողությամբ անցկացրին գարնանացանը, դրեցին հնգամյակի առանցքային տարվա բարձր բերքի հիմքը։

Խրախուսանքը խթանում է պրոպագանդիստների ստեղծագործական ունա-

կությունները, բարձրացնում հեղինակությունը ունկնդիրների և այն կոլեկտիվների անդամների մոտ, որտեղ նրանք աշխատում են։ Այն նաև ինչ-որ չափով համակում է պրոպագանդիստներին է՛լ ավելի լավ աշխատելու գիտակցումով։ Միայն վերջին երեք տարիներին կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների միջնորդությամբ նյութական ու բարոյական տարբեր խրախուսանքի են արժանացել 18 պրոպագանդիստներ։

Կոմունիստների քաղաքական ուսուցման կազմակերպման երկարամյա բարեխիղճ աշխատանքի համար Զ. Վարդանյանը (Վարդաբլուր) պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի «Լենինյան պատվոգրով», Ս. Այվազյանը (Ուռուտ) ՍՄԿԿ Կենտկոմի «Լավագույն պրոպագանդիստ» սեղանի մեդալով, Ն. Վարդանյանը (Վարդաբլուր) արժանացել է «ՀՍՍՀ կուլտուրայի վաստակավոր աշխատող» պատվավոր կոչման։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը նոր խնդիրներ դրեց կուսկազմակերպությունների, պրոպագանդիստների առջև կոմունիստների քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման առնչությամբ։ Ելնելով Կենտկոմի պլենումի որոշումից և հաշվի առնելով աշխատավորների, կոմունիստների հետաքրքրությունը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի ճառում բովանդակած տեսական ու քաղաքական դրույթներից ու հետևություններից՝ օգոստոս և սեպտեմբեր ամիսներին աշխատավորության համար անցկացրինք երկու պարապմունք՝ «Նոր մարդու ձևավորումը որպես կոմունիստական շինարարության նպատակ և նախադրյալ» և «Սոցիալ-տնտեսական խնդիրների գաղափարական ապահովումը» թեմաներով։

Շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում հաջողությամբ է ընթանում քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության նոր ուսումնական տարվա կոմպլեկտավորումը։ Այդ աշխատանքին ակտիվորեն են մասնակցում նաև պրոպագանդիստները, տնտեսությունների և ձեռնարկությունների ղեկավարները։ Ընդ որում, հաշվի են առնվում կոմունիստների և անկուսակցական ակտիվի, աշխատավորների հանրակրթական և քաղաքական պատրաստության մակարդակը, անցած տարիների քաղուսուցման և տնտեսագիտական դպրոցների ձևերը։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները վերանայել են պրոպագանդիստների կազմը, այն համալրել բարձրագույն կրթությամբ, քաղաքականապես պատրաստված հեղինակավոր կոմունիստներով, արտադրության կազմակերպիչներով ու ղեկավարներով։ Կուսակցական ժողովներում քննարկվում են ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումից բխող կուսակցական լուսավորության և աշխատավորների տնտեսագիտական կրթության բարելավման հարցերը, մշակվում այն կազմակերպված անցկացնելու միջոցառումներ (լրացուցիչ գրականության, ցուցադրական միջոցների, կինոնկարների և այլնի ձեռքբերում և այլն)։ Օրերս մեծ կազմակերպվածությամբ անցկացրինք ավանդական դարձած պրոպագանդիստի օրը, որտեղ գործարար կերպով քննարկվեցին քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության անցած ուսումնական տարվա արդյունքները, ընդհանրացվեց պրոպագանդիստական աշխատանքի կուտակված փորձը, նշվեցին նոր ուսումնական տարվա անելիքները։ Պրոպագանդիստները և ագիտատորները պարզաբանում են ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերը, որոնք էապես նպաստում են աշխատավորների արտադրական և քաղաքական ակտիվության բարձրացմանը։

Բարդ ու դժվարին, պատասխանատու և պատվաբեր է պրոպագանդիստի գործը։ Նա, իրոք, քաղաքական ուսուցման կենտրոնական դեմքն է։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը խնդիր դրեց. «Գաղափարախոսական կադրերը պետք է կոմունիստական գաղափարայնության, իրենց աշխատանքի նկատմամբ բարձր պահանջկոտության, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության օրինակ ծառայեն»։ Պրոպագանդիստը պարտավոր է միշտ բարձր պահել քաղաքական դաստիարակի պատիվը, իր անձնական հեղինակությունը։ Միայն այդ դեպքում կարող է նրա սասծը տեղ հասնել։

---



# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԿԱՐԵՎՈՐ ՌԵԶԵՐՎ

**Մ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

ՄՍԻ ԵՎ ՄՍԱՄԹԵՐՔՆԵՐԻ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ համալրման գործում կարևոր դեր ունի ձկնաբուծությունը։ Ձուկը բարձր կալորիականությամբ սննդանյութ է՝ օժտված համային լավագույն հատկություններով։ Մեր երկրում օգտագործվող սպիտակուցների 13 տոկոսը բաժին է ընկնում ձկանը։ Ձկան մնացորդների մի զգալի մասը մշակվելով՝ վերածվում է ալյուրի ու օգտագործվում գյուղատնտեսության մեջ։ Եվ այսօր հրատապ պահանջ է ձկնարդյունաբերության առավել զարգացումը։ Կարևոր նշանակություն է ստանում ձկնաբուծությունը երկրի ներքին ջրամբարներում։

Լճակային ձկնարդյունաբերության զարգացման համար պայմաններ կան ամենուրեք։ Այդ պայմանները կան նաև մեր հանրապետությունում։

Հայաստանը հարուստ չէ ջրային մակերեսներով։ Ամենամեծ ջրամբարը Սևանա լիճն է, որի պահպանման նպատակով կուսակցությունն ու կառավարությունը ձեռնարկում են վիթխարի ջանքեր։ Իրականացվում է Արփա—Սևան ջրատարին Որոտանի կենարար երակների միացումը, որը Սևանին վերջնականապես կազատի գլխավոր հոգսից՝ ջրի սակավությունից։ Բայց դրանով չի լուծվի լճի կարևոր պրոբլեմներից մեկը՝ աղքատացած կենդանական աշխարհի հարստացումը։ Այդ պրոբլեմը ծագել է ստիճանաբար, տասնամյակների ընթացքում։ Այսօր օրակարգում է լճի կենդանական աշխարհի վերականգնման խնդիրը։ Ցավոք, բնության պահպանության կարմիր գրքի մեջ է մտել իշխանը՝ լճի գլխավոր տնօրենը։ Դա նախ և առաջ Սևանի մակարդակի իջեցման, լճի խորքում և ափերին տեղի ունեցող կենսաբանական արմատական երևույթների հետևանք է։ Ոչ պակաս կարևոր պատճառներ են ձկնագետերի ու դրանց վտակների ծանծաղումն ու աղտոտումը, որսագողությունը, որ կատարյալ չարիք է լճի համար։ Իշխանի պետական որսի արգելումը, որ մտցված է դեռևս 1970 թվականից այդ ձկնատեսակի պահպանության նպատակով, փաստորեն դրական արդյունք չտվեց։ Անհրաժեշտ եղավ գտնել իշխանի տեսակների արհեստական բազմացման եղանակներ։ Տարիներ շարունակ այդ գործով են զբաղված Սևանի ավազանի ձկնաբուծական չորս գործարանները, որոնք, ինչ խոսք, դրական գործ են կատարել իշխանի պաշարները պահպանելու և ավելացնելու նպատակով։ Այսօր, սակայն, ստեղծված տագնապալի վիճակը պահանջում է այդ ձկնատեսակի աճեցման նոր մեթոդներ։ Բանն այն է, որ բազմացման գործարանային մեթոդը ցանկալի արդյունք չի տալիս։ Ահա թե ինչու հարկ եղավ նախագծել հատուկ ձկնաբուծարան՝ տարեկան 2,5 միլիոն ձկնիկի կարողությամբ, որոնց թվում կլինեն գեղարքունին, ամառային և ձմեռային բախտակը։ Ձկնիկները բաց կթողնվեն ոչ թե լիճը թափվող գետակները, որտեղ ջրի աղտոտվածության պատճառով նրանք ոչնչանում են, այլ անմիջապես լիճը, որը և հնարավորություն կընձեռի ավելացնելու ձկան պաշարները։ Այդ ձկնաբուծա-

րանի շինարարությունը կսկսվի Սևան քաղաքում, 1984 թվականին, 50 հեկտար տարածության վրա։ Ընթացիկ հնգամյակում վերակառուցվում են առկա ձկնագործարաններն այն հաշվով, որ դրանք արտադրեն բարձր կենսունակությամբ ձկնիկներ։ Այս միջոցառումների իրականացման շնորհիվ նախատեսվում է արդեն 90-ական թվականներին զգալիորեն ավելացնել Սևանա լճում իշխանի որսը։

Չնայած այն բանին, որ ձկնաբուծությունը Սևանում կազմակերպվել է Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին իսկ տարիներին, սակայն պետք է նկատի ունենալ, որ հանրապետությունում չէր ստեղծվել ապրանքային ձկնաբուծարան։ ՀԿԿ Կենտկոմի ու Հայաստանի կառավարության հատուկ որոշմամբ 1965 թվականից հանրապետությունում հիմք է դրվել ձկնարդյունաբերության նոր ուղղությանը՝ լճակային ձկնաբուծությանը։ Անցած տարիներին կառուցվել և գործարկվել են Եղեգնուտի ծածանային (կարպային) տնտեսությունը Հոկտեմբերյանի շրջանում, Մասիսի շրջանի ձուկկոմբինատը, Արմաշի ծածանային տնտեսությունը Արարատի շրջանում, Ակնալճի փորելային տնտեսությունը Էջմիածնի շրջանում։ Ձկնարդյունաբերության միավորման տնտեսություններն, այսպես ասած, հումքով ապահովելու նպատակով Հոկտեմբերյանի շրջանում կառուցվել է Եղեգնուտի պետական զոնալ ձկնաբուծարանը՝ տարեկան 10 միլիոն ձկնիկ արտադրելու կարողությամբ։

Միավորման տնտեսությունների լճակների ընդհանուր մակերեսն այժմ կազմում է 2,5 հազար հեկտար։ Այդ լճակներն ստեղծված են աղակալած, գյուղատնտեսության համար ոչ պիտանի հողատարածությունների վրա։ 1981 թվականին լճակային տնտեսություններն արտադրել են 3,25, իսկ 1982-ին՝ 3,51 հազար տոննա ձուկ, կամ երեք անգամ ավելի, քան տվել է Սևանա լիճը։ Լճակային ձկան արտադրության ծավալով Հայաստանը երկրում յոթերորդ տեղում է։ Մեկ հեկտար լճակային մակերեսից 1982 թվականին ստացվել է 19,2 ցենտներ ձուկ, որը գերազանցում է 1985 թվականի համար նախատեսված մակարդակը։

Պարենային ծրագրի համաձայն, նախատեսված է ապրանքային ձկան արտադրությունը 1985 թվականին հասցնել մինչև չորս հազար տոննայի, իսկ հետագայում առավել արագացնել զարգացման տեմպերը։ Այդ նպատակով անհրաժեշտ է ավելացնել բտման և ձկնաբուծական լճակները, մեկ հեկտարի բերքը հասցնելով 23—26 ցենտների։

Այսօր հանրապետության տնտեսություններում աճեցվում է հինգ տեսակի ձուկ՝ ծածան, հաստաճակատիկի երկու տեսակ, սպիտակ ամուր և ծիածանային փորել։ Ձկան տեսականու ընդլայնման և հարստացման նպատակով տնտեսություններում ձևավորվում է մայրական նոր հեռանկարային կազմ, այդ թվում բուֆալո, գետային և եվրոպական լոքո։ Աշխատանքներ են տարվում «կարմիր» տեսակ ձկների՝ բստերի (թառափի և չուքայի հիբրիդ), ինչպես նաև սիբիրյան օսետրի (թառափի) աճեցման նպատակով։ Հանրապետության հարթավայրային շրջաններն ունեն բարենպաստ բոլոր պայմանները վերոհիշյալ արժեքավոր ձկնատեսակներն աճեցնելու համար։ Ահա թե ինչու այդ աշխատանքներն այսօր գտնվում են միավորման մասնագետների ուշադրության կենտրոնում։ Եվ, ընդհանրապես, Հայաստանն իր ռելիեֆի և կլիմայական բազմազան պայմանների շնորհիվ կարող է աճեցնել ապրանքային ձկան շատ տեսակներ, հաջողությամբ կատարել ո՛չ միայն պարենային ծրագրի առաջադրանքները, այլև զգալիորեն գերակատարել այն։

Թեև վերջին տարիներին ձկնաբուծությունը հանրապետությունում զարգացել է, այնուամենայնիվ, ռեզերվներն ավելի մեծ են, որոնց իրացման ճանապարհին հանդիպում են մի շարք խոչընդոտներ։ Դրանցից կարևորը լճակներ կառուցելու նպատակով աղուտ՝ գյուղատնտեսության համար առայժմ ոչ պիտանի հողերի հատկացումն է։ Մեկ տարի առաջ ՀԿԿ Կենտկոմն ու ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը որոշում կայացրին գյուղատնտեսական արտադրության համար ոչ պիտանի 1000 հեկտար հողատարածություն ձկնատնտեսության միավորմանը տրամադրելու մասին։ Սակայն ժողովրդական դեպուտատների համապատասխան շրջանային սովետները դեռևս գործնական ոչինչ չեն արել։



Եվ հանրապետության ձկնատնտեսությունը փաստորեն զրկվում է այն տարածություններից, որտեղ անհրաժեշտ է շինարարություն կատարել։ Ի դեպ, ձկնարդյունաբերությանը տրամադրված գյուղատնտեսության համար ոչ պիտանի հողատարածությունների խելացի օգտագործումն առաջնահերթ խնդիր է։ Միավորման տնտեսությունները ձգտում են յուրաքանչյուր հեկտար ջրային մակերեսից ստանալ առավելագույն արդյունք։ Ավելին, որոշ տնտեսություններում հաջող փորձեր են կատարվել ջրից ազատված ձկնալճակներում բանջարաբոստանային կուլտուրաներ աճեցնելու նպատակով՝ առանց այդ հողատարածությունների աղազերծելու, լրացուցիչ ծախսեր տրամադրելու։ Բանն այն է, որ տարիների ընթացքում ձկնալճակները հարստացվում են պարարտանյութերով, ապա ջրի բարերար ներգործության և այլ հանգամանքների շնորհիվ ինքնամաքրվում։ Երբ ձուկը որսվում է, իսկ ջուրը բաց թողնվում, լճի հատակում արդեն առկա է լինում հողի հարստացած շերտը, որը և բավարար է բանջարաբոստանային կուլտուրաների առնվազն մեկ լիարժեք բերք ստանալու համար։

Որքան էլ խնամքով ու գործիմացորեն օգտագործվեն հողատարածությունները, այնուամենայնիվ, այդ մասին պետք է մշտապես հոգալ, հատկապես մեզանում, ուր հաշվի մեջ է յուրաքանչյուր հեկտարը։ Բայց չնայած այդ հանգամանքին, հողի նկատմամբ դեռևս նկատվում է, մեղմ ասած, անհաշվենկատ վերաբերմունք։ Աղուտ հողերը Արարատյան դաշտավայրում հազարավոր հեկտարների են հասնում, որոնց յուրացումը վաղուց արդեն սկսված է։ Սակայն մելիորատորների հետ այստեղ գործում են նաև ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության համապատասխան տրեստների մեխանիզմները՝ ավազ արդյունահանողները։ Ինչ խոսք, ավազը կարևոր շինանյութ է, առանց որի օրեցօր աճող ու զարգացող մեր հանրապետության ժողովրդական տնտեսությունը չի կարող հոգալ իր կարիքները։ Սա անվիճելի է։ Աղուտ հողերի ստորին շերտերից դուրս բերելով ավազը, հանքագործները մեկնում են նոր ավազավայրեր, իրենցից հետո թողնելով հսկայական փոսորակներ, որոնք հետագայում լցվում են արտեզյան ջրով, փաստորեն անհնարին դարձնելով այդ տարածությունների որևէ նպատակով օգտագործումը։ Արարատյան դաշտավայրում այժմ կա այդպիսի ավելի քան 20 փոսորակ-լիճ։ Ի վերջո ի՞նչ բախտի են արժանանալու դրանք։ Մեզ թվում է, որ այդ հարցը պետք է հետաքրքրի հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությանը, որը պարտավոր է ավազի արդյունահանման հետ միասին լուծելու «քրքրված» հողերի հարցը, այն է՝ տեսքի բերելու և վերստին հանձնելու տիրոջը։ Իսկ ավելի ճիշտ կլինի, եթե նույն մինիստրությունը այդ հարցում սերտորեն համագործակցի ձկնատնտեսության միավորման հետ, քանի որ վերջինս լավ գիտե, թե ձկան աճեցման համար լճակային ինչպիսի տնտեսություններ են անհրաժեշտ։ Տեղին է նշել, նաև որ հանրապետությունում դեռևս չի մշակված ձկնատնտեսության զարգացման գլխավոր սխեման։ Թառափ ձկան աճեցման համար վաղօրոք պետք է մտածել նոր լճակային մակերեսների, ինչպես նաև անհրաժեշտ քանակության և որակի ձկնիկներ ունենալու մասին։

Տասնմեկերորդ հնգամյակի համար նախատեսված են 3,61 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ կամ յուրաքանչյուր տարվա համար միջին հաշվով 0,72 միլիոն ռուբլի։ Այս գումարը հնգամյակի ընթացքում կարող է բավարարել ընդամենը 440 հեկտար նոր լճակների ստեղծմանը, այնինչ հնարավորությունները շատ ավելի մեծ են։

Ծածանային տնտեսությունները կապիտալ նորոգման զգալի կարիք ունեն։ Ինչպես հայտնի է, դրանք կառուցված են Արարատյան դաշտավայրի աղուտ հողերում, որտեղ պարունակվող մեծ քանակությամբ սոդան և սուլֆատները վաղաժամկետ ողողվում ու քայքայում են հիդրոտեխնիկական կառուցվածքները։ Ծածանային տնտեսությունների անընդհատ և տևական շահագործման հետևանքով լճերի հատակը տիղմապատվում է, քայքայվում են ամբարտակներն ու լճափերը։ Այդ ամենը հանգեցնում է լճակների օգտակար մակերեսի ու ծավալի կրճատմանը և արդյունավետության նվազեցմանը, տեխնիկական նորմաների խախտումների։ Տաս տարի անընդմեջ չէր նորոգվել միավորման և ոչ մի լճակ։ Այդ աշխատանքներն սկսվեցին 1981 թվականից, երբ միավորման կազ-

մում ստեղծվեց շինարարական-նորոգման տեղամաս, որն անցած ժամանակա-
միջոցում ավելի քան 700 հեկտար ընդհանուր մակերեսով լճակներ կարգի բե-
րեց: Սակայն պետք է ասել, որ ամենամյա նորոգումների համար հատկացվող
միջոցներն անբավարար են տնտեսությունների վերակառուցման և նորոգման
համար:

Հատուկ կառուցվածքների բացակայության, վատ ջրամատակարարման և
աղբյուրների բարձր ջերմաստիճանի պատճառով միավորման տնտեսություն-
ները հնարավորություն չունեն ձուկը երկար պահելու: Իսկ եթե այն ժամկետից
ավելի է մնում լճակներում, նիհարում է, կորցնում ապրանքային որակները:
Դա միաժամանակ բացասաբար է անդրադառնում լճակներում անցկացվող ագ-
րոմելիորատիվ աշխատանքների վրա:

Բնակչությանը կենդանի ձկնատեսակներով ապահովելու ժամանակաշրջա-
նը երկարացնելու նպատակով հասունացել է ձկան բազաներ ստեղծելու խնդի-
րը և առաջին հերթին Երևանում՝ 500—1000 տոննա ձուկ պահելու տարողու-
թյամբ: Նման բազաների առկայության պայմաններում լճակային ձկնատեսակ-
ների իրացման ժամանակաշրջանը հնարավոր կլինի երկարացնելու առնվազն
4—5 ամսով:

Այժմ արտադրվող ձկնատեսակների 98 տոկոսը ծածանն է, հաստաճա-
կատն ու սպիտակ ամուրը: Իսկ ահա ծիածանային փորելը, որ մեծ պահանջարկ
ունի, տարեկան արտադրանքի ընդհանուր ծավալում երկու տոկոս է կազմում:
Հայաստանում միակ՝ Ակնալճի տնտեսությունը տարեկան արտադրում է 70
տոննա փորել: Մինչդեռ մեր հանրապետությունում մեծ հնարավորություններ
կան փորելաբուծությունը զարգացնելու համար, մանավանդ որ այժմ մշակված
է այդ ձկան աճեցման նոր՝ ցանցային եղանակ, որը կիրառվող ավազանային
եղանակի համեմատությամբ շուրջ տասն անգամ բարձրացնում է արտադրողա-
կանությունը: Հողային ռեսուրսների սահմանափակությունը պահանջ է առա-
ջադրում փորելաբուծությունը զարգացնելու արդեն գոյություն ունեցող ջրամ-
բարներում և լճակներում: Այս ձկնատեսակի խոշոր համալիրների ստեղծումը,
ինչ խոսք, կարող է իրականացվել, եթե այդ գործին օժանդակեն վերադաս
մարմինները:

Սակայն մինչև այժմ ջրամբարների, ինչպես նաև ջերմաէներգետիկ օբ-
յեկտների կառուցման ժամանակ, ցավոք, հաշվի չեն առնվում ձկնատնտեսու-
թյան շահերը: Հայկական ատոմակայանում, Երևանի ՋԷԿ-ում և Հրազդանի
ՊՇԷԿ-ում առաջացած տաք ջրի հիման վրա հնարավոր է ստեղծել բարձր ար-
տադրողական ձկնաբուծական տնտեսություններ, ուր հնարավոր կլինի ամբողջ
տարին ստանալ ապրանքային ձուկ:

Մի կարևոր հանգամանք ևս: Լճակային մակերեսների արդյունավետու-
թյունը և ապրանքային ձկան ավելացումը պայմանավորված են համապատաս-
խան որակի խտացրած կերերի առկայությամբ: Եթե արդյունաբերությունն ընդ-
հանուր առմամբ բավարարում է ձկնարդյունաբերության պահանջները քանա-
կական տեսակետից, ապա նույնը չի կարելի ասել որակի մասին: 1981 թվա-
կանին, օրինակ, կարպի համար ստացված խտացրած կերում պրոտեինը կազ-
մել է 14,9, իսկ անցյալ տարի՝ 20 տոկոս, մինչդեռ պետստանդարտով նախա-
տեսվում է ոչ պակաս, քան 23 տոկոս: Խախտվում են նաև խտացրած կերի բա-
ղադրյալները, այն թողարկվում է առանց խթանիչների և վիտամինային հավե-
լումների: Բարձր է գրանուլացված կերի քայքայման տոկոսը, որի հետևանքով
դրա զգալի մասը անտեղի կորչում է՝ աղտոտելով ջրամբարները և նվազեցնելով
ձկան աճը: Հանրապետությունում չի արտադրվում համապատասխան կեր ձկան
մատղաշի, ինչպես նաև փորելի, թառափի տարիքային տարբեր խմբերի համար,
ուստի ձկների աճեցման համար օգտագործվում են նվազ սննդարար կերեր:

Ձկնաբուծության բնագավառում գիտահետազոտական աշխատանքները
հիմնականում իրականացվում են Սևանում, որտեղ ՀՍՍՀ գիտությունների ա-
կադեմիայի հիդրոկենսաբանական կայանը, հիմնարար ուսումնասիրություններ
կատարելով, անբավարար է զբաղվում ձկնարդյունաբերության պրոբլեմների
մշակմամբ: Միավորման գիտահետազոտական լաբորատորիան, որ կոչված է
իրականացնելու լճակային ձկնաբուծության բնագավառի գիտատեխնիկական



մշակումներ, չունի փորձարարական բազա, իսկ դա չի կարող բացասաբար
չանդրադառնալ թե՛ աշխատանքների ծավալի և թե մակարդակի վրա:

Հանրապետությունում ձկնամթերքների արտադրությամբ և իրացմամբ
զուգահեռաբար զբաղվում են ձկնատնտեսության միավորումը և Հայձուկարդա-
րի վարչությունը: Լճակային տնտեսությունների արտադրանքի հարցում Հայ-
ձուկարդարի անելիքները սահմանափակվում են ֆոնդերի բաշխմամբ, իսկ
կենտրոնացված մատակարարումն իրականացնում է միավորումը: Փաստորեն
Հայձուկարդարը լճակային ձկան իրացման նկատմամբ չի կատարում իր ուղ-
ղակի պարտականությունները:

Վատ է կազմակերպվում ձկան մանրածախ առևտուրը: Մի շարք խանութ-
ներ չունեն համապատասխան տարողություններ և սարքավորումներ ձուկը
կենդանի վիճակում սպառողին հասցնելու համար: Առևտրական կետերն ան-
համաչափ են տեղաբաշխված, Երևանի շատ թաղամասերում և բնակելի զանգ-
վածներում ձկան վաճառքի խանութներ չկան: Վիճակը նույնն է նաև հանրա-
պետության մյուս բնակավայրերում: Կենդանի ձուկը չի ռեկլամվում: Հայձուկ-
արդարի ֆիրմային խանութը և ռեստորանը չեն պրոպագանդում լճակային ձու-
կը՝ որպես արժեքավոր սննդամթերք:

Խոսելով ձկնաբուծության այսօրվա վիճակի և հեռանկարների մասին, չի
կարելի չանդրադառնալ Հայձուկբուծ վարչության գործունեությանը: Այս կազ-
մակերպությունը նույնպես ենթակա է ՍՍՀՄ ձկան տնտեսության մինիստրու-
թյանը: Նպատակը պարզ է՝ պահպանել և վերարտադրել ձկան պաշարները, ա-
պա նաև կարգավորել որսը: Սակայն այդ կազմակերպությունը չի գտնվում իր
կոչման բարձրության վրա: Ձկան վերարտադրությամբ զբաղվում են միավոր-
ման գործարանները, որսի չափավորումը կատարում է գիտությունների ակա-
դեմիայի Սևանի հիդրոկենսաբանական կայանը: Մնում է ձկան պաշարների
պահպանության խնդիրը: Իսկ այդ հարցում մութ կետեր չկան... Որսագողու-
թյունը Սևանի ափերին մեծ չափերի է հասել, որի դեմ, ըստ երևույթին, Հայ-
ձուկբուծ վարչությունը ի վիճակի չէ որևէ լուրջ պայքար կազմակերպել: Ահա
թե ինչու հրատապ խնդիր է դառնում ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի ձկնատըն-
տեսության միավորման կազմի մեջ մտցնել բոլոր այն կազմակերպություննե-
րը, որոնց գործունեությունն այս կամ այն կերպ առնչվում է ձկնարտադրու-
թյան, իրացման և պահպանության խնդիրների հետ: Ժամանակն է մտածել նաև
միավորման ստատուսի մասին: Այժմ ձկնարտադրության ներքին ջրամբարնե-
րի ղեկավարման վարչություններ են գործում միութենական բոլոր հանրապե-
տություններում: Միայն Հայաստանում ձկնատնտեսության ղեկավարումն իրա-
կանացնում է միավորումը, որն ստեղծվել է 1965 թվականին Սևանի ձկնկոմ-
բինատի բազայի վրա: Այժմ միավորման կազմի մեջ մտնում են ինքնուրույն
18 ձեռնարկություններ և կազմակերպություններ: Դրանք գործում են 12
շրջաններում:

Օրակարգի հարց է դարձել նաև հանրապետության բուհերից մեկում ձըկ-
նատնտեսության գծով մասնագիտական բաժին ունենալը, ինչպես նաև որա-
կավորված բանվորական կադրերի պատրաստումը պրոֆտեխկրթության հա-
մակարգում:

Ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի զարգացումը աշխա-
տավորներն իրենց հարազատ գործն են համարում և ջանք չեն խնայում պարե-
նային ծրագիրը կյանքի կոչելու համար: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտու-
ղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Յու. Վ. Անդ-
րոպովը նշել է, որ ամբողջ երկիրն այժմ աշխատում է պարենային ծրագրի կա-
տարման վրա: Այդ ծրագրում հստակորեն որոշված են բոլոր միութենական
հանրապետությունների կոնկրետ խնդիրները: Եվ նրանցից յուրաքանչյուրը
պետք է արդեն մոտակա ժամանակաշրջանում իրական ավանդ ներդնի սովե-
տական մարդկանց անխափան կերպով պարենամթերք մատակարարելու կա-
րևորագույն գործի մեջ: Այստեղ իր պատկառելի բաժինն ունի նաև ձկնարդյու-
նաբերությունը, որի զարգացման լայն հնարավորություններ կան մեր հանրա-
պետությունում:

# ՆՈՐՊԼԱՍՏՆԵՐԸ ԵՐԵԿ, ԱՅՍՕՐ, ՎԱՂԸ

ՆՈՐՊԼԱՍՏՆԵՐԸ, ԸՍՏ ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ կարծիքի, մեր դարը բնորոշող նյութեր են: Դրանց ծննդյան «տարեթիվը» պետք է համարել 1979 թվականը, երբ հրապարակվեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը լցոնված պոլիմերային նյութերի արտադրության զարգացման մասին:

Նոր նյութերի ստացման ասպարեզում կատարվող հիմնարար հետազոտությունները ՍՍՀՄ ԳԱ քիմիական ֆիզիկայի ինստիտուտի պոլիմերային և կոմպոզիցիոն նյութերի սեկտորում սկսվել են մի քանի տարի առաջ: Գիտնականների հիմնադիր գաղափարների իրականացմամբ և նոր տեխնոլոգիաների մշակմամբ զբաղվում են «Նորպլաստ» գիտաարտադրական միավորման մասնագետները: Քիմիական ֆիզիկայի ինստիտուտի հիշյալ սեկտորի և «Նորպլաստ» միավորման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հիմնադիրն ու անընդմեջ ղեկավարն է Լենինյան մրցանակի դափնեկիր, ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս ՆԻԿՈԼԱՅ ՍԵՐԳԵՅԻ (ՆԻԿՈՂՈՍ ՍԱՐԳՍԻ) ԵՆԻԿՈԼՈՊՅԱՆԸ, որը միաժամանակ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր գիտության և տեխնիկայի պետական կոմիտեի պոլիմերային նյութերի գիտական խորհրդի նախագահն է:

Խմբագրության հանձնարարությամբ լրագրող Լ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆԸ Մոսկվայում հանդիպեց և զրույց ունեցավ պոլիմերների քիմիայի նոր ուղղության հիմնադիր սովետական անվանավոր քիմիկոսի հետ:



**Թղթ.**— Փայտ և ոսկոր, բուսական և հանքային խեժեր, բամբակ, բուրդ և կաշի... Բոլորիս քաջատեղյակ այս նյութերը, ինչպես մասնագետներն են ասում, բնական պոլիմերներ կամ կենսապոլիմերներ են: Մոտ 100 տարի է, ինչ մարդն սկսել է օգտագործել նաև «արհեստականորեն» ստեղծված նյութերից՝ սինթետիկ պոլիմերներից պատրաստված իրեր. բազմաթիվ էլեկտրատեխնիկական առարկաներ և հենախոսային սարքեր, ձեր կողքին դրված ռադիոընդունիչը, իմ գրիչը, արհեստական կաշվով պատառապատված բազկաթոռը, ձեր զգեստի սինթետիկ մանրաթելը՝ ամենը չես թվարկի: Որքա՞ն կշպրտվեր քաղաքակրթությունը, եթե չլինեին սինթետիկ պոլիմերները:

**Ենիկոլոպյան.**— *Դժվար է անգամ պատկերացնել: Պոլիմերային նյութերը մեր կենցաղն են մտել, ըստ երևույթին, մշտապես: Ասյա հիշենք, ընդամենը 10—15 տարի առաջ պոլիմերային թաղանթը թվում էր արտասովոր, իսկ այսօր՝ այն օգտագործում են տնտեսները բոլորը. գգեստը փաթեթավորելու, մթերքը պահելու, բանջարանոցը ծածկելու, տեսրը կազմելու և այլ նպատակներով: Մենք չենք պատկերացնում, թե ինչպես կարելի է յոլա գնալ առանց լինոլեումի, թեթև և անջրանցիկ անձրևանոցի, հիգիենիկ խաղալիքների, չճմրթվող հագուստի...*

*Պոլիմերային նյութերի արդյունավետությունն ըստ արժանվույն գնահատեցին շինարարները: Այսօր նրանք օգտագործում են ձայնամեկուսիչ և ջերմամեկուսիչ փրփրանյութեր, հատակի ամենատարբեր ծածկույթներ, զարդարուն երեսպատման նյութեր, խողովակներ... Հաշված է, որ գազի ու ջրի մատակարարման, ոռոգման և ցամաքեցման համար օգտագործվող պոլիմերային խողովակի յուրաքանչյուր միլիոն տոննան հնարավորություն է ընձեռում տնտեսելու երկու միլիարդ ռուբլի, մետալուրգիական ձեռնարկությունների պահանջարկը իջեցնելու մոտ 7.000 բանվորով: Այս դեռ բոլորը չէ. հետազոտությունները ցույց են տալիս, որ այդ խողովակները բազում հատկանիշներով գերազանցում են մետաղական խողովակներին:*

*Մետաղի խնայողաբար օգտագործումն այսօր առանձնապես կարևոր խնդիր է: Մեկ տոննա պոլիմերի օգտագործումը, օրինակ ավտոմեքենաշինության մեջ, մեր հաշվումներով տնտեսում է 3,5 տոննա մետաղ: Միաժամանակ իջնում է արտադրանքի ինքնարժեքը, վերանում է մետաղները կոռոզիայից պաշտպանելու թանկարժեք միջոցառումների անհրաժեշտությունը: Պոլիմերների կիրառումը մեքենաշինության մեջ ավելացնում է ագրեգատների երկարակեցությունը, մեծացնում հուսալիությունը, գեղեցկացնում արտաքին տեսքը, նվազեցնում աղմուկը և վիբրացիան, կրճատում սպասարկման աշխատատարությունը: Տնտեսության բազմաթիվ ճյուղերի առաջընթացը պարզապես անհնար է պատկերացնել առանց թեթև և կոռոզիակայուն, պլաստիկ և վերամշակման բարձր արդյունավետություն ունեցող նյութերի՝ պոլիմերների կիրառման:*

*«ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—85 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղությունները» փաստաթղթում խնդիր է դրված բարձրացնել պոլիմերների որակը և դրանց աշխատանքային երկարակեցությունը, ընդլայնել նոր տեսակի, ամենից առաջ կառուցվածքային նշանակման պոլիմերային նյութերի արտադրությունը: Պոլիմերների արտադրության տեմպերն աշխարհում արագ աճում են. այսօր արտադրության ծավալը հասել է տարեկան 60 միլիոն տոննայի և շարունակվում է առաջընթաց աճը: Զարգացած արդյունաբերություն ունեցող երկրները տարեկան արտադրում են ավելի մեծ ծավալով սինթետիկ պոլիմերներ, քան պողպատ են ձուլում, չխոսելով արդեն ալյումինի, պղնձի և այլ գունավոր մետաղների մասին՝ միասին վերցրած:*

**Թղթ.**— Համաձա՞յն եք արդյոք 1978 թվականին կայացած պոլիմերային կոմպոզիցիոն նյութերի միջազգային կոնգրեսում մասնագետներից մեկի արտահայտած կարծիքին. «Մարդկությունը հետևում կթողնի նաև մետաղների դարը, ինչպես թողել է քարե դարը: Մենք գտնվում ենք հիմնական նյութերի արտադրության հեղափոխության շեմին»:

**Ենիկոլոպյան.**— *Այդ, ըստ իս, բոլոր մասնագետների ընդհանուր կարծիքն է:*

**Թղթ.**— Այն օրից, սակայն, Նիկոլայ Սերգեևիչ, երբ արտասանվեցին այդ խոսքերը, անցել է արդեն հինգ տարի, իսկ մարդկությունը շարունակում է մնալ այդ «շեմին»: Այդպես չէ՞: Ինչ-որ բան, երևի, արգելակում է այդ հեղափոխությունը:

**Ենիկոլոպյան.**— *Պոլիմերների արտադրության հիմնական հումքը նավթն է: Այսօր պոլիմերների ստացման համար միջին հաշվով ծախսվում է նավթի համաշխարհային հանույթի մոտ 4,5 տոկոսը: Պոլիմերների արտադրության շեշտակի աճն արգելակողը հումքն է: Դեռ դպրոցում մեզ սովորեցնում էին, որ նավթն այրելը շռայլություն է, այն պետք է վերամշակել: Սակայն անսահմանորեն մեծացնել վերամշակման ուղարկվող նավթի բաժինն անհնար է, նավթի 50 տոկոսը ծանր ֆրակցիաներ (բաղադրամասեր) են:*

*Երկրորդ արգելակը նավթի բարձրարժեքությունն է: Եթե նկատի ունե-*

ցիումի կարբոնատ։ Մեծ ջերմահաղորդականություն կարելի է հաղորդել պոլիմերը գրաֆիտով, տեխնիկական ածխով, ածխե մանրաթելով, էլեկտրական բարձր կայունության՝ փոշեկերպ ալյումինով, անագապղնձով լցոնելու միջոցով։ Պոլիմերի դիէլեկտրական հատկությունները կարելի է լավացնել լցոնելով փայտալյուրով, ասբեստով, ապակյա մանրաթելով, շփման գործակիցը փոքրացնել՝ պոլիմերային մանրաթելերով, կաոլինով, փայլարով և այլն։

Ավելին. վերամշակումը կազմում է պլաստմասսայից պատրաստված իրի գնի որոշակի՝ ծավալուն մասը։ Պոլիմերային իրերը պատրաստվում են էքսկրուդերների, ձուլող և այլ մեքենաների օգնությամբ, որոնք պահանջում են նախ հումքը հալել, ապա պատրաստել իրը և, վերջապես, երրորդ փուլում՝ սառեցնել։ «Մաքուր» պոլիմերի ջերմահաղորդականությունը մեծ չէ, իսկ երբ սարքերը ցույց տվեցին, որ «նոր» պոլիմերներն ավելի ջերմահաղորդիչ են, հասկանալի դարձավ, որ վերամշակման առաջին և երրորդ փուլերը՝ տաքացումը և սառեցումը, կարող են ավելի կարճատև լինել։ Արդյունքը եղավ այն, որ որոշակի քանակությամբ արտադրանք ստանալու համար, օրինակ, 100 մեքենայի փոխարեն պահանջվում է 70—75 մեքենա։

Պոլիմերացման լցոնման տեխնոլոգիան, այդպես անվանվեց մեր առաջարկած եղանակը, մի այլ առավելություն ևս ունի։ Ավելացնելով ջերմային պրոցեսների մի մասն իրենց վրա վերցնող չեզոք կրողներ՝ մենք մեղմացնում ենք վերամշակման ջերմային ռեժիմը։ Հետևաբար հնարավոր է օգտագործել տեխնոլոգիական ավելի պարզ հնարանքներ։

Տեխնոլոգիական արդյունավետության կարևորագույն ցուցանիշներից մեկը համարվում է էներգատարությունը։ Սինթեզի փուլում լցոնելու մեր առաջարկած եղանակն այս առումով ևս արդարացնում է իրեն։

Փորձը ցույց է տալիս, որ պատրաստի պոլիմերների հետ համեմատած՝ ավելի պակաս մածուցիկ մոնոմերում լցանյութերը համասեռ բաշխելու համար էներգիայի զգալիորեն ավելի քիչ ծախս է պահանջվում։

**Թղթ.**— Որտե՞ղ կարող են օգտագործվել նորպլաստները։

**Ենիկոլոպյան.**— Ամենուր, որտեղ կարող են օգտագործվել պոլիմերները։ Խոսքն առաջին հերթին ոռոգման և ցամաքեցման համար օգտագործվող գյուղատնտեսական խողովակների մասին է։ Ամենուր, որտեղ ներքին ճնշումը մեծ չէ, պոլիէթիլենից և պոլիվինիլքլորիդից պատրաստված խողովակները դուրս մղեցին պողպատը։ Այդ իսկական հեղափոխություն էր։ Ըստ իս, դուրս մղելով պոլիմերայինը՝ նորպլաստե խողովակները նույնպես կարող են նման հեղափոխություն կատարել։ Առաջինների հետ համեմատած սրանք շատ ավելի շահավետ են, քանի որ հնարավորություն են ընձեռում պոլիմերային թանկարժեք հումքը մասնակիորեն փոխարինել տեղական որևէ էժան անօրգանական լցանյութով, միաժամանակ մեծացնել արտադրանքի կայունությունը և, երկրորդ, կտրուկ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Վերջինին հասնում են նորպլաստե խողովակների արտադրության եղանակի առանձնահատկության շնորհիվ. խողովակները հատիկավոր նորպլաստից կարելի է պատրաստել տեղում։ Բոլորովին վերջերս Ուզբեկստանի պետպլանը հաստատեց 40 տոկոսով էլեկտրակայանային մոխրով լցոնված պոլիմերային խողովակների խոշոր գործարանի կառուցման նախագիծը։ Ընթացիկ տարվա վերջում նախատեսվում է թողարկել 700 տոննա արտադրանք։ Կարծում եմ, նման գործարաններ կարելի է կառուցել ամենուր, որտեղ ոռոգման սուր կարիք կա։ Մասնավորապես, կազմված է Արթիկում շինարարական խողովակների գործարան կառուցելու նախագիծը։ Այդ գործարանը տարեկան կօգտագործի 10 հազար տոննա տուֆե մանրոն։ Այդ այն տուֆն է, որն այժմ ուղղակի թափում են։

Հայաստանը չափազանց հարուստ է հումքի այնպիսի տեսակներով, որոնք կարող են նորպլաստի արտադրության համար հիանալի լցանյութեր լինել։ «Մաքուր» պոլիմերներին կարելի է հրաբխային ամբողջ սարեր խառնել։ Հանրապետությունում և ողջ Անդրկովկասում որպես լավորակ լցանյութեր կարող են օգտագործվել պեմզան, կալցիտը... Լցանյութային հումք երկրում կարելի է գտնել ամենուր։ Էստոնիայում մեծ քանակությամբ թերթաքարային մոխիր է հավաքվում էլեկտրաֆիլտրերի վրա։ Սիբիրում շատ է փայտանյութային



լիգնինը, Ուկրաինայում՝ կաոլինը։ Այս թվարկումը կարելի է շարունակել։ Բացի այդ բոլոր խոշոր բնակավայրերում կուտակվում են մեծ քանակությամբ արդյունաբերական և կենցաղային թափոններ, որոնք կարելի է վերամշակել։ Այժմ մենք կազմակերպում ենք մաշված ավտոդողերից փոշու ստացման արտադրություն։ Այդ չափազանց լավ լցանյութ է։ Մեծ հնարավորություններ է խոստանում նաև գյուղատնտեսական թափոնների՝ բամբակի քոլքի, խաղողի և այլ կուլտուրաների վերամշակման արդյունքների օգտագործումը։ Այդ բոլորն այսօր թափվում են, իսկ վաղը կարող են դառնալ հիանալի օրգանական լցանյութեր։

**Թղթ.**— Դուք ասում եք «հիանալի» կամ «լավ» լցանյութեր, պետք է, երևի, հասկանալ էժա՞ն։ Եթե այդ այդպես է, ապա պետք է նկատի ունենալ, որ ինչ-որ տեղ թափոն համարվող հումքը այլ շրջաններ տեղափոխելուց հետո արդեն կդառնա թանկ։

**Ենիկոլոպյան.**— Արդյունահանելու, տեղափոխելու, չորացնելու և այլ նպատակներով կատարված ծախսերից հետո անգամ, անօրգանական լցանյութերը մնում են ավելի էժան, քան նույն զանգվածով պլաստմասսան։ Բայց սկզբնական շրջանում ավելի նպատակահարմար է, մենք դրան էլ ձգտում ենք, ամեն տեղ որպես լցանյութ օգտագործել այն հումքը, որը տեղական թափոն է, փչացնում է բնությունը և հասնում է շատ մեծ չափերի։

**Թղթ.**— Նիկոլայ Սերգեևիչ, դուք չավարտեցիք ձեր միտքը, ուրիշ որտեղ կարո՞ղ են օգտագործվել նորպլաստները։

**Ենիկոլոպյան.**— Թաղանթներ և ձևավոր մասեր, ամենատարբեր ծավալների տարաներ, ձուլածո արտադրանքներ, շինարարական ջերմամեկուսիչ սալեր և այլ բաներ պատրաստելու համար։

**Թղթ.**— Եվ մի անգամ սկսված «նորպլաստային հեղափոխությունը» (անվանենք դա այդպես), կշարունակվի՞։

**Ենիկոլոպյան.**— Անշու՛շտ։ Ընդ որում, կզարգանա մի քանի ուղղություններով։ Սկսենք այժմ մեր առաջ դրված տեխնոլոգիական և կոնստրուկտորական խնդիրներից։ Նոր նյութերը լայնորեն ներդնելու համար, օրինակ, անհրաժեշտ է ստեղծել սարքեր և կատարելագործել կատալիզատորի փոքր քանակները լցանյութի մեծ զանգվածների վրա հավասարաչափ բաշխելու տեխնոլոգիան։ Պահանջվում է նաև հատուկ սարքավորում պոլիմերացումը մանրաթելերի վրա տանելու համար։

Մեր որոնումների երկրորդ ուղղությունը մշակված տեխնոլոգիան մետաղական մակերևույթների վրա տարածելու փորձն է։ Շատ հաճախ մետաղական իրերի աշխատանքային ժամկետը, հուսալիությունը և այլ բնութագրեր պայմանավորված են մակերեսային շերտի հատկություններով։ Այդ շերտի մաշվելու և կոռոզիայի պատճառով ամբողջ աշխարհում ահռելի միջոցներ են ծախսվում շարքից դուրս եկած առարկաները նորով փոխարինելու կամ թանկարժեք և հաճախ քիչ արդյունավետ հակակոռոզիոն նյութերով պատելու համար։ Եթե հաջողվի պոլիմերացվող լցոնումը ապագայում իրացնել ոչ միայն հանքային մասնիկների, այլև մետաղների մակերևույթին կամ, այլ կերպ ասած, մետաղին բարձրկայուն և շահավետ նորպլաստների «մուշտակ» հագցնել, ապա կարելի է մտածել, որ ապահովված կլինի հաղթանակը կոռոզիայի դեմ մղվող պայքարում։

Լցանյութերի հետ կապված շատ պրոբլեմներ են ծագում և ո՛չ միայն գիտական։ Մենք կուզենայինք հասնել պոլիմերների 50—70—90 և ավելի տոկոսով անօրգանական լցոնման։ Անօրգանական լցանյութի այդպիսի բարձր պարունակության հաջողվել է հասնել այժմ, միայն մի քանի նյութեր, օրինակ, պեռլիտ օգտագործելու դեպքում։ Հեռու չէ այն օրը, երբ «մաքուր» պոլիմերը կկատարի միայն յուրատեսակ սոսնձի դեր, այն կսոսնձի էժան լցանյութի մասնիկները։ Գիտնականների և պրակտիկ պոլիմերագործների առջև դրված խնդիրները բազմաթիվ են։ Ձեռք բերվածը տրամադրում է հուսալ, որ այդ խնդիրները կլուծվեն և այն էլ մոտալուտ ապագայում։ Նորպլաստային հեղափոխությունը կթափանցի արդյունաբերության ամենաբազմազան ոլորտները, մեզնից յուրաքանչյուրի կենցաղը։

5. «Լենինյան ուղիով», № 10

## Նշանավոր տարեթվեր

# ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

### (ՀԱՂՊԱՏԻ ԼԵՆԻՆՅԱՆ-ԻՍԿՐԱՅԱԿԱՆ, ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Հ. Ս. ՄԵԼԻՔՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Վ*ԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ու նրա զինակիցների տիտանական ջանքերը հանգեցրին նրան, որ 1903 թ. ամառը գումարված ՌՍԴԲԿ II համագումարում ծնվեց բոլշևիզմը «որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական կուսակցություն» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 41, էջ 7)։ Համագումարում հիմք դրվեց նոր տիպի, իսկական հեղափոխական պրոլետարական կուսակցությանը, որի բնորոշ գծերը և առանձնահատկությունները, ներհատուկ լինելով նրան իր առաջացման պահից, բյուրեղացել և զարգացել են հետագա պայքարի պրոցեսում։

Լենինյան կուսակցության հիմնադիր՝ ՌՍԴԲԿ II համագումարի 80-ամյակի նախօրյակին լրացավ Հայաստանի և ամբողջ Անդրկովկասի հնագույն կոմունիստական կազմակերպություններից մեկի՝ Հաղպատի լենինյան իսկրայական կազմակերպության 80-ամյակը։ Այս տարվա նոյեմբեր ամսին լրանում է ցարական ինքնակալության ու տեղական կալվածատերերի դեմ Հաղպատի գյուղացիների 1903 թ. նոյեմբերյան հերոսական ապստամբության տարեդարձը ևս։ Այս պատմական իրադարձությունները հայ ժողովրդի սոցիալական ազատագրության համար մղված պայքարի տարեգրության առավել նշանակալի էջերից են։

Քսաներորդ դարի արշալույսին ազատագրական պայքարը Հայաստանում ևս որակապես նոր մակարդակի բարձրացավ։ Այն օրգանապես կապվեց գիտական կոմունիզմի ծավալման ու զարգացման լենինյան փուլի հետ, երբ պրոլետարական, հեղափոխական տեսությունն ազատության ձգտող հայ ժողովրդի հոգում նպաստավոր հող գտավ ամրանալու, ազատագրական պայքարի դրոշ դառնալու համար, երբ աշխատավորների սոցիալական ու ազգային ազատագրության ղեկն իրենց ձեռքը վերցրին Վ. Ի. Լենինն ու նրա զինակիցները, որոնց թվում քիչ չեն հայ ժողովրդի զավակները։

Լոռին Հայաստանի և Անդրկովկասի հեղափոխական շարժման այն օջախներից էր, ուր համեմատաբար վաղ սկսեց հասունանալ աշխատավոր զանգվածների հեղափոխական գիտակցությունը։ Բանվորական կենտրոններին մոտ լինելը, մանավորապես Թիֆլիսի, Բաքվի, Ալեքսանդրապոլի, Բաթումի հետ ունեցած մշտական սերտ կապը, երկաթուղու առկայությունը, Ալավերդու պղնձարդյունաբերության զարգացումը և դրա հետ մեկտեղ Լոռու բուն կենտրոնում բանվորական շարժման հասունացումը, կալվածատիրական հողատիրության առկայությունն ու ճորտատիրության առավել շեշտված մնացուկների գոյությունը այն գործոններն էին, որոնք նպաստավոր հող ստեղծեցին բարձրացող համառուսաստանյան հեղափոխական շարժման մեջ Լոռու աշխատավորների ակտիվ ներգրավման համար։



Դեռևս 90-ական թվականների կեսերին, երբ կառուցվում էր Թիֆլիս—Ալեքսանդրապոլ երկաթուղին, Լոռու ձորերում պռոթկաց տարբեր ազգերի մի քանի հազար երկաթուղային շինարար բանվորների տարերային շարժումը՝ հանուն մարդկային տանելի կյանքի ու աշխատանքային պայմանների ստեղծման։ Լոռու բանվորների ու աշխատավոր գյուղացիության շրջանում այդ տարիներից սկսած եռանդուն աշխատանք էին ծավալում առաջին սոցիալ-դեմոկրատ բանվորներից Ա. Կախոյանը, Մ. Մելիքյանը, Հ. Ադամյանը, Մ. Միրաքյանը (Շանթ), ինչպես նաև Լոռու Հաղպատ և Իգնահատ (ներկայումս Դանուշավան) գյուղերից Թիֆլիս մեկնած, աչքի ընկնող սոցիալ-դեմոկրատներ Ա. Երզնկյանը, Դ. Շահվերդյանը և այլազգի ճանաչված սոցիալ-դեմոկրատները։

Նույն այդ 90-ական թվականների վերջերին քաղաքական պայքարի ասպարեզ իջավ Ստ. Շահումյանը։ Նրա ջանքերով էլ 1899 թ. Լոռու գավառամասի կենտրոնում, Ջալալօղլի (ներկայումս Ստեփանավան) ավանում ստեղծվեց Հայաստանի տերիտորիայում առաջին մարքսիստական խմբակը։ Դա մեր ժողովրդի կյանքում բացառիկ նշանակություն ունեցող իրադարձություն էր, որն ազդարարում էր նրա մուտքը լենինյան դարաշրջանի մայրուղին։ Հայ ժողովրդի ազատագրության պայքարը Միքայել Նալբանդյանի դավանած հեղափոխական-դեմոկրատիզմից վերաճում էր նրա օրինաչափ զարգացման արդյունքը հանդիսացող հեղափոխական սոցիալ-դեմոկրատիզմին, մարքսիզմ-լենինիզմին։ Ջալալօղլու մարքսիստական խմբակի հիմնադիր կազմի անդամներն էին Ա. Թումանյանը, Վ. Սիմոնյանը, Ռ. Դաշտոյանը, Ս. Իսրայելյանը, Ն. Հակոբյանը (Դադիվանյան), Ա. Հարությունյանը, Ս. Հարությունյանը, Կ. Իսրայելյանը, Եկատերինա Շահումյանը, Ա. Թումանյանը, Ն. Ջիլավյանը, Ս. Զուրաբյանը, Բ. Սահակյանը և ուրիշներ։

Հեղափոխական սոցիալ-դեմոկրատական աշխատանքի ծավալմանը մեծապես նպաստեց լենինյան «Իսկրա»-ի երևան գալը, նրա տարածումը ամբողջ Անդրկովկասում, այդ թվում և Լոռիում։ Ռուսաստանի կենտրոնական արդյունաբերական շրջանների հետ մեկտեղ Անդրկովկասը ևս մտնում էր ինքնակալության դեմ բացահայտ քաղաքական պայքարի հորձանուտը։ Առաջացան ու ակտիվ գործունեություն ծավալեցին ՌՍԴԲԿ Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի կոմիտեները։ Հայ իրականության մեջ մարքսիզմի արմատավորման և հեղափոխական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջացման գործում բացառիկ կարևոր տեղ է պատկանում 1902 թ. «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն» ստեղծմանը, միություն, որի «Մանիֆեստը» և օրգան «Պրոլետարիատ» թերթը արժանացան Վ. Ի. Լենինի ջերմ հավանությանը. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածք տալու նրա հիանալի փորձը» (ԵԼԺ, հ. 7, էջ 131—132)։

Այս պայմաններում էլ, երկրամասում ընդլայնվող ու խորացվող պրոլետարական քաղաքական պայքարի բարենար մթնոլորտում, 1901—1902 թթ. Հայաստանում առաջ եկան ու գործեցին լենինյան-իսկրայական սոցիալ-դեմոկրատական խմբակներ՝ Երևանում, Ալեքսանդրապոլում, Ալավերդիում, Սանահինում, Կարսում։

1902 թվականին սոցիալ-դեմոկրատական խմբակ ստեղծվեց Հաղպատում։ Նրա հիմնադիրը Մ. Թանդիլյանն էր, որը սերտ կապեր ուներ Թիֆլիսի սոցիալ-դեմոկրատների հետ։ Հաղպատում Թանդիլյանի ակտիվ գործունեության մասին էր գրում կովկասահայ մամուլը դեռևս 90-ական թվականների վերջերին (տե՛ս «Մշակ», № 172, 17 սեպտեմբերի, 1899 թ.)։ Խմբակի կազմում էին Ս. Իսրայելյանը, Ս. Շամբարյանը, Ա. Սոխակյանը, Ե. Մաթոսյանը։ Անդրկովկասի հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան, նախապատրաստվելով կուսակցության հիմնադիր՝ ՌՍԴԲԿ II համագումարին, 1903 թ. մարտին Թիֆլիսում ստեղծեց ՌՍԴԲԿ Կովկասյան միությունը, որը եռանդուն ջանքեր գործադրեց գոյություն ունեցող սոցիալ-դեմոկրատական խմբակներից տեղերում ստեղծելու իսկրայական կազմակերպություններ։ Հայաստանում գործող խմբակներից, որպես լենինյան իսկրայական կազմակերպություն, առաջինը ձևա-

վորվեց Հաղպատի կազմակերպությունը: Պրոլետարական, արդյունաբերական շրջաններին մոտ լինելը, գյուղացիների շրջանում ծավալվող դասակարգային պայքարը, ընդհատակյա գործունեության համար նպաստավոր աշխարհագրական դիրքը, մինչ այդ կատարված անհրաժեշտ նախապատրաստական աշխատանքը ռեալ պայմաններ ստեղծեցին այդ բանի համար:

Դեռևս 1903 թ. մայիսին Հաղպատում կալվածատիրոջ ու նրա զինված պահապանների դեմ տեղի էր ունեցել գյուղացիական ելույթ: Գյուղացիներին հաջողվել էր միահամուռ ուժերով գյուղից դուրս վռնդել շուրջ 50 պահնորդների ու անտառապահների, որոնք, որպես հատուցում այն բանի, որ գյուղացիները բռնագրավել ու ինքնակամ օգտագործում էին կալվածատիրական արոտավայրերը, փորձել էին հօգուտ կալվածատիրոջ բռնագրավել գյուղացիների անասուններն ու գույքը (տե՛ս ««Պրոլետարիատի կռիվ» թերթիկ», № 5—6, 15/28 հունվարի, 1904 թ.): Պայքարի շիկացած մթնոլորտը իսկրայական խմբակի անդամներին դրդում է պատվիրակություն ուղարկել Թիֆլիս, ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտե, որի հետ սերտորեն կապված էր նաև ականավոր բանվոր հեղափոխական, հաղպատցի Ա. Կախոյանը: ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեն Հաղպատ է ուղարկում Կախոյանին և ամբողջ երկրամասի բանվորական շրջաններին քաջ հայտնի բանվոր հեղափոխական Մ. Մելիքյանին (Դեդուշկա): Հունիսի սկզբին տեղի է ունենում Հաղպատի լենինյան-իսկրայական կազմակերպության հիմնադիր ժողովը: Ստեղծվում է ամուր կազմակերպություն, սահմանվում են նրա խնդիրները, կազմակերպական սկզբունքները: Սերտ կապ է հաստատվում Հաղպատի և Թիֆլիսի կազմակերպությունների միջև:

Հաղպատի լենինյան-իսկրայական կազմակերպության ստեղծումը մեծապես նպաստում է գյուղացիների հակացարական, դեմոկրատական շարժման ընդլայնմանն ու խորացմանը, ինչպես նաև Ալավերդու հանքերում ու գործարաններում, երկաթուղային բանվորների շրջանում հեղափոխական աշխատանքի կազմակերպմանը: Հաղպատի կազմակերպությունը այդ շրջանից սկսած փաստորեն դառնում է Լոռիում հեղափոխական աշխատանքի կազմակերպման կենտրոն:

Կուսակցության II համագումարից հետո ՌՍԴԲԿ Կովկասյան միությունը, իր տեղական կազմակերպությունների հետ մեկտեղ, անվերապահորեն կանգնեց բոլշևիկյան դիրքերում, Անդրկովկասի յուրահատուկ, դժվարին պայմաններում կյանքի կոչելով լենինյան գաղափարները:

Հաղպատի բոլշևիկյան կազմակերպությունը, 1903 թ. ամռան և աշնան ամիսներին, պրոլետարական, համադեմոկրատական, մասսայական-քաղաքական պայքարի բարերար մթնոլորտում ամրապնդվում էր գաղափարապես և կազմակերպչորեն: Դրան հատկապես նպաստեցին Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի և այլ արդյունաբերական կենտրոնների 1903 թ. քաղաքական գործադուլների հզոր ալիքը և նրան ուղեկցող հակացարական, դեմոկրատական շարժումը: Անդրկովկասը թևակոխում էր հեղափոխական շարժման մասսայական ելույթների ժամանակաշրջանը: Լենինյան «Իսկրա»-ն գրում էր. «Հարավի բանվորների վիթխարի ապստամբությունն այնպիսի իրադարձություն է, որը հսկայական նշանակություն կունենա ներկա ազատագրական ամբողջ շարժման համար» («Искра», № 45, 1 օգոստոսի, 1903 թ.): Հաղպատի և ամբողջ Լոռու աշխատավորների հեղափոխական տրամադրությունների հետագա հասունացմանը հսկայական չափով նպաստեց հատկապես հակացարական, ազգային-դեմոկրատական այն շարժումը, որը լայնորեն ընդգրկել էր Անդրկովկասի հայկական (և ոչ միայն հայկական) շրջանները: Ստ. Շահումյանը գրում էր. «Քաղաքական կյանքի համար արթնացող հայկական պրովինցիան տեղ-տեղ զենքը ձեռքին դուրս եկավ իր կեղեքիչների դեմ» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, «Հայաստան» հրատ., 1975 թ., էջ 370): Իսկ լենինյան «Իսկրա»-ում Բ. Կնունյանցը նշել է. «Մինչև այժմ չտեսնված ելույթներ են տեղի ունենում մեզ մոտ, ամենախուլ վայրերից լուրեր են գալիս կառավարության հետ զինված ընդհարումների մասին, մասսայական ցույցերի, միտինգների և այլնի



մասին... Հեղափոխական փոթորիկն ընդգրկել է Անդրկովկասը» (Բ. Կնունյանց, Ընտիր երկեր, «Հայաստան» հրատ., 1978 թ., էջ 75):

Շարժման մեջ մինչև վերջ հետևողական, արմատական հեղափոխական դիրք գրավեց սոցիալ-դեմոկրատիան, որը հանդես գալով հօգուտ հակացարական միասնական ճակատի ստեղծման, միաժամանակ ձգտում էր կանխել բուրժուաազգայնական կուսակցությունների հեգեմոնիան, մասսայական շարժումը ձուլել համառուսաստանյան դեմոկրատական շարժման մեջ, այն ուղղել ընդդեմ միապետության, աշխատավորների պայքարին հաղորդել կազմակերպված դասակարգային բնույթ: Բ. Կնունյանցը նշում էր. «Կովկասի ներկայիս իրադարձությունների արդյունքներից մեկը հեղափոխական գիտակցության աճն է, խուլ գյուղերում անգամ ինքնակալության նկատմամբ անհաշտ թշնամական տրամադրության աճը: Անլեգալ գրականությունը խլխլվելով է վաճառվում: Բոլոր վայրերից միութենական կոմիտեն ստանում է ագիտացիոն գրականության պահանջ: Այդ դեպքերի ժամանակ մեր թռուցիկները թափանցել են Կովկասի բոլոր անկյունները, որտեղ միայն կա հայ բնակչություն, և մոտ ժամանակում մեզ կհաջողվի կազմակերպել այնտեղ մեր խմբակները» (Նույն տեղը, էջ 84—85):

Ժողովրդական, հակացարական հեղափոխական-դեմոկրատական շարժումները լայն ծավալ ստացան նաև Լոռիում: Այստեղ ակտիվորեն գործում էին հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի գաղափարները աշխատավորների մեջ տարածող ագիտատորները: «Իսկրա»-ն գրում էր. «Ջալալօղլիում ցանկացել են ձերբակալել ագիտատորին, բայց ժողովուրդը ուժով ետ է խլել նրան, և նա ազատ ուղևորվել է հարևան գյուղերը՝ շարունակելու իր աշխատանքը» («Искра», № 50, 15/28 հոկտեմբերի, 1903 թ.): Ամռան և աշնան այս «հեղափոխական փոթորիկը» Լոռու գյուղերում առաջ բերեց նաև սոցիալական, դասակարգային սուր պայքար:

Հաղպատի բոլշևիկյան կազմակերպության լուրջ քննությունը հանդիսացավ 1903 թ. նոյեմբերի 8/21-ի գյուղացիական զինված ապստամբությունը՝ XX դարի սկզբին Հայաստանում հեղափոխական շարժման պատմության այդ լուսավոր էջերից մեկը, որում աչքի ընկնող դեր խաղաց տեղական բոլշևիկյան կազմակերպությունը: Այդ ելույթի ժամանակ ապստամբ գյուղացիները դրսևորեցին ցարիզմի ու նրա դասակարգային հենարանը հանդիսացող կալվածատերերի դեմ պայքարի իրենց վճռական կամքը: Դեռևս Հաղպատի գյուղացիների մայիսյան ելույթից հետո կալվածատերերը հաջողացրել էին, որպեսզի Թիֆլիսի օկրուգային դատարանն ընդուներ վճիռ՝ լիովին բավարարելու իրենց պահանջները, խստորեն պատժելու անհնազանդ «բունտար» գյուղացիներին, որոնք բռնագրավել էին կալվածատիրական արոտավայրերի մի մասը: Լոռիում ևս դաժանորեն խեղդելով հակացարական ժողովրդական մասսայական շարժումը, իշխանությունները ձեռնամուխ են լինում կալվածատիրոջ շահերի պաշտպանության իրենց միխայլի իրագործմանը: Հաղպատ են ուղարկվում ոստիկանական ուժեր, որոնք փորձում են բռնագրավել գյուղացիների անասունները, գույքը: Երբ գյուղացիների համար պարզ դարձավ գալիք ողբերգությունը, նրանք մի մարդու պես ոտքի կանգնեցին պաշտպանելու իրենց շահերը: Գյուղացիները վճռեցին, որ ավելի լավ է մեռնել ճնշողների դեմ կռվելով, քան սովամահ լինել առանց կռվի: Նրանք զինված հերոսական դիմադրություն ցույց տվեցին ցարական օպրիչնիկներին: Ուժերը, սակայն, անհավասար էին: Հայաստանի և Անդրկովկասի գյուղացիական հեղափոխական շարժման այդ հերոսական զինված ելույթը, որին նույնպես հատուկ էին դարասկզբի գյուղացիական շարժման հիմնական թերությունները, դաժանորեն խեղդվեց ցարիզմի կողմից:

Երախտապարտ մեր սերունդը գլուխ է խոնարհում ազատության ու երջանկության համար մարտնչած ու զոհված աշխատավոր մարդկանց հիշատակի առջև, մարդիկ, որոնք իրենց կյանքի գնով ուղի էին հարթում դեպի ազատ ու լուսավոր մեր այսօրը: Մենք այսօր սարսուռով ենք կարդում Բորչալուի գավառապետի «մասնավոր նամակի» այն տողերը, որոնք ուղղված էին Թիֆլիսի նահանգապետին. «Թախանձագին խնդրում եմ Ձեզ՝ թույլատրելու ինձ

*հենակետերից մեկը։ 1907 թ. աշնանը Լոռիում գործում էին 38 բոլշևիկյան տեղական կազմակերպություններ։*

*Եվ թող դաշնակները շարունակեն բարբաջել, թե հայ ժողովուրդը իբր չէր ընդունում բոլշևիզմը։ Նրանք մինչև այժմ էլ դառնացած են այն իրողությունից, որ իրենց կուսակցությունը Լոռիում տեղ չէր գտնում, որ բանվորներն ու աշխատավոր գյուղացիներն առաջադրում ու պաշտպանում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքները։ Հետևողականորեն նույն գիծն էին վարում Հայաստանի մյուս շրջանների՝ Ալեքսանդրապոլի, Կարսի, Երևանի, Ղափանի, Սարիղամիշի, Նոր Բայազետի, Էջմիածնի և այլ վայրերի բոլշևիկյան կազմակերպությունները։*

*Ստոլիպինյան ռեակցիայի տարիներին և նրանից հետո Հաղպատի, Ալավերդու, Սանահինի և Լոռու մի շարք այլ կազմակերպություններ, գործելով խոր ընդհատակում, աշխատավորների հոգում վառ պահեցին հեղափոխական կրակը։*

*Ցարական ինքնակալության անկումից հետո դուրս գալով ընդհատակից, Հաղպատի, Ալավերդու և Լոռու մյուս բոլշևիկյան կազմակերպությունները ամրապնդվեցին գաղափարապես և կազմակերպչորեն, ստեղծեցին տեղական սովետներ և գյուղացիական հեղափոխական կոմիտեներ, գլխավորեցին աշխատավորների պայքարը հանուն երկրամասում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի։ 1917 թ. հոկտեմբերի սկզբներին, երբ հրավիրվեց Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների երկրամասային I համագումարը, Հաղպատի և Ալավերդու բոլշևիկյան կազմակերպությունները, որպես իրենց ներկայացուցիչ, համագումար ուղարկեցին իրենց պատգամավոր Ա. Ի. Միկոյանին։*

*Լոռու բոլշևիկների գործունեությունը նոր թափ ստացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, երբ այստեղ եռանդուն պայքար ծավալվեց հանուն Հոկտեմբերի գործի հաղթանակի, հանուն Հայաստանում սովետական կարգերի հաստատման։ Երբ Անտանտի իմպերիալիստների ու տեղական բուրժուաազգայնական կուսակցությունների մեղքով Լոռիում հաստատվեց այսպես կոչված «չեզոք գոտի», Հաղպատի բոլշևիկյան կազմակերպությունը փաստորեն դարձավ հերոսական պայքարի միջնաբերդը, Լոռիում աշխատավորների ապստամբության նախապատրաստման կենտրոնը։ Այդ շրջանում Լոռիում բոլշևիկների գործունեությունը գլխավորում էին Ա. Մռավյանը, Հ. Լազարյանը, Գ. Առուստամյանը, Ս. Սարգսյանը, Ս. Էվոյանը և ուրիշներ։*

*1921 թվականի փետրվարին ծավալված հերոսական ապստամբությամբ Լոռիում հաստատվեց սովետական իշխանություն։ Փառավոր հաղթանակով պսակվեց Հաղպատի, Ալավերդու, Մեծ Ղարաքիլիսիայի, Վորոնցովկայի, Ջալալօղլու, Ուզունլարի և այլ բոլշևիկյան կազմակերպությունների հերոսական պայքարը։ Իր դարավոր հերոսական պատմությամբ աչքի ընկած Լոռին ևս մտավ սոցիալիստական զարգացման մայրուղին։*

*Վետերանների հետ հանդիպման ժամանակ ընկեր Յու. Վ. Անդրոպովը առանձնապես կարևորեց, որ ՍՄԿԿ Կենտկոմը միշտ էլ բարձր է գնահատել անցյալի հեղափոխական, մարտական ու աշխատանքային այն մեծ փորձը, առանց որի անկարելի է, անհնար է լուծել այն խնդիրները, որ մեր առջև դնում են կյանքը, զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրակտիկան։*

*Հավատարիմ բոլշևիկյան առաջին կազմակերպությունների փառապանծ ավանդույթներին, հանրապետության աշխատավորները անվարան կյանքի են կոչում կոմունիստական կուսակցության առաջադրած խնդիրները։*

---

Գաղափարախոսական պայքարի ճակատներում

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՐՈՆԻ ՄԻՋԵՎ ՊԱՅՔԱՐԻ ՅՈՒՐԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Հ. Ա. ՀԱՐՈՅԱՆ**

*ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ առաջընթացի անմիջական ազդեցության ներքո կրոնի ու եկեղեցու ճգնաժամը հետզհետե ավելի է խորանում։ Աշխարհի կրոնական պատկերը առավել մեծ չափով է իր տեղը զիջում դրա գիտական բացատրությանը։ Սակայն կրոնն ու եկեղեցին ամեն կերպ աշխատում են դիմագրավել այդ օբյեկտիվ օրինաչափ պրոցեսին, փորձում իրենց ուսմունքը նորացնելու, գիտական և հասարակական առաջընթացին հարմարվելու միջոցով հասնել կրոնի դիրքերի հարաբերական կայունացման։ Կրոնի ներկա ճգնաժամի յուրահատկությունն այն է, որ ընդգրկել է կրոնական կոմպլեքսի բոլոր տարրերն անխտիր, մի բան, որ չեն թաքցնում նաև կրոնի պաշտպանները։ «Ժամանակակից փուլում խոսքը ոչ թե այն մասին է, թե ինչպես ուղղել դոկտրինայի կամ ուսմունքի (կրոնական— Հ. Հ.) այս կամ այն կետը։ Խաղաքարտի վրա է դրված կյանքի ողջ ըմբռնումը»,— նշեց Վատիկանի երկրորդ ժողովը* (А. Казанова. Второй Ватиканский собор. М., 1973 г., стр. 46)։

*Կրոնի արդի պաշտպաններին լրջորեն մտահոգում է այն իրողությունը, որ օրըստօրե խորանում է հակասությունը կրոնի և աշխարհի միջև։ Այդ պրոցեսում վճռական դեր է խաղում արդի գիտատեխնիկական հեղափոխությունը։ «Գիտության շնորհիվ աշխարհի և նրա օրենքների ճանաչումը այնքան հեռու է գնացել,— գրում է բողոքական հայտնի աստվածաբան Գ. Բուլտմանը,— որ ոչ մի մարդ չի ընդունում և չի կարող լրջորեն ընդունել աշխարհի նոր կտակարանային բացատրությունը» (տե՛ս* Д. Угринович. Введение в теоретическом религиоведении. М., 1973 г., стр. 50*)։*

*Այդ խորացող հակասությունն էլ փոփոխված աշխարհի և կրոնական աշխարհհայացքի միջև, ընդհանուր առմամբ, որոշում է արդի փուլում գիտության դեմ կրոնի պայքարի յուրահատկությունը։*

*Ժամանակակից ֆիդեիզմը գիտության դեմ պայքարում է նորագույն և նրբին միջոցներով։ Այսօր այն ոչ միայն հանդես չի գալիս գիտության և հասարակական առաջընթացի բացահայտ և ուղղակի մերժումով, այլ, ընդհակակը, որդեգրում է երկդիմի տակտիկա։ Մի կողմից, աշխատում է գիտության նվաճումները մեկնաբանել կրոնական ոգով և գիտությունը վերածել կրոնական հավատը «հիմնավորելու» այժմեական միջոցի, մյուս կողմից, լայնորեն սպեկուլյացիա է կատարում՝ վկայակոչելով ԳՏՀ-ի բացասական հետևանքները և հասարակական զարգացման հակասությունները։*

*Գիտական առաջընթացի նկատմամբ կրոնի նման հակասական դիրքորոշումն արդի աշխարհում իր հակասական դրության ադեկվատ արտացոլումն*

է։ Դարասկզբին, գիտության բուռն զարգացման սկզբնական շրջանում, ի վիճակի չլինելով մերժել գիտության հզորությունը, եկեղեցին հարկադրված էր գնալ զիջումների և քարոզել, թե գիտությունն ու կրոնը ո՛չ միայն չեն հակասում միմյանց, այլև կարող են զուգահեռաբար զարգանալ որպես իմացության երկու անհրաժեշտ ուղիներ։ Հետագայում ԳՏՀ-ի զարգացման և կրոնի ճգնաժամի խորացման հետևանքով եկեղեցին փորձեց գիտությունն օգտագործել աստծո գոյությունն «ապացուցելու» համար։ Իսկ այժմ, երբ ԳՏՀ-ի ծավալման հետևանքով կրոնի և եկեղեցու ճգնաժամը գլոբալ և խոր բնույթ է ստացել, կրոնի սպասարկուները փորձում են օգտագործել ԳՏՀ-ի բացասական հետևանքները և սոցիալական պրոբլեմները, որպեսզի արժեզրկեն և վարկաբեկեն գիտական ու հասարակական առաջընթացը։

Երբեմն լարախաղացություն անելով համաշխարհային զարգացման հակասությունների վրա և չարաշահելով ԳՏՀ-ի բացասական դրսևորումները, ինչպես և միակողմանի մեկնաբանելով առկա սոցիալ-բարոյական պրոբլեմները, կրոնականները ուղղակի ոտնձգություն են անում գիտական և հասարակական առաջընթացի դեմ, ջանում գիտությունն ու տեխնիկան ներկայացնել որպես մարդու և քաղաքակրթության դեմ գործող ուժեր, իսկ կրոնը և եկեղեցին, ընդհակառակը, որպես մարդու, մարդկայինի պաշտպան։ Արդի աստվածաբանական ուսմունքներում և եկեղեցական քարոզներում այն միտքն է արծարծվում, թե հումանիզմի և մարդկային կեցության հարցերի լուծումը գիտության իրավասությունից դուրս է, թե գիտությունն «ապաբարոյական» է, և հետևապես գիտության ու տեխնիկայի հումանիստական զարգացումն անհնար է առանց կրոնի։

Գիտական և հասարակական առաջընթացը մարդկությանն առաջադրել է սոցիալ-բարոյական, տնտեսական, քաղաքական գլոբալ պրոբլեմներ, որոնք կրոնի արդի պաշտպանները փորձում են մեկնաբանել որպես աստծո յուրօրինակ «պատիժ» մարդուն՝ կրոնական ճշմարտություններն անտեսելու պատճառով։ Աստվածաբաններն ուղղակիորեն հակադրում են գիտությունը և հումանիզմը, տեխնիկան և բարոյականությունը, ճշմարտությունը և բարին, մարդու վերափոխիչ գործունեությունը և բնությունը։ Գիտության և տեխնիկայի արդի պրոբլեմների կրոնական-աստվածաբանական մեկնաբանությամբ եկեղեցին քարոզում է, որ կրոնը անհատական, տնտեսական ու քաղաքական պրոբլեմները լուծելու միակ միջոցն է, որովհետև այդ հակասությունների առաջացման հիմնական պատճառը, իբր, կրոնաբարոյական սկզբունքների անտեսումն է, և որ առանց կրոնի մարդասիրական նորմերի մարդկությունը, իբր, գնում է դեպի լճացում և ապամարդկայնացում։ Ավելին, «...իրականում միայն կրոնն է բարձրացնում մարդուն»— գրում էր Պողոս VI պապը,— այն կոչ է անում գնալ դեպի աստված՝ դույզն իսկ չնվազեցնելով երկրային կյանքի նշանակությունը, պահպանելով մարդկային անհատին պատկանող հավերժական արժույթները, նպաստում է նրա բարոյականությանը, առաջընթացին» (տե՛ս Религия и церковь в современную эпоху. М., 1976 г., стр. 229)։

Քարոզելով, թե իբր մարդու բարոյական առաջընթացը և տեխնիկայի զարգացումը, գիտությունը և հումանիզմը անհամատեղելի են, որովհետև գիտության ու տեխնիկայի զարգացումը առաջ է բերում սոցիալ-բարոյական հակասություններ և նորանոր անհանգստությունների աղբյուր է մարդու համար, աստվածաբանները նպատակ են հետապնդում մարդկանց պատվաստելու կրոնի անհրաժեշտության գիտակցություն, ներշնչելու այն միտքը, թե կրոնը և կրոնական բարոյականությունը առաջընթացն ապահովող մշակույթի կարևոր տարր են, սոցիալական կյանքը կազմակերպելու անհրաժեշտ միջոց։ «Քրիստոնեական բարոյականությունն այն գործոնն է,— գրում է բողոքական աստվածաբան Գ. Լյուտին,— որ աշխարհին կարող է ցույց տալ առաջընթացի ուղին» (տե՛ս Религия в век научно-технической революции. М., 1979 г., стр. 72)։

Մարդկության պատմությունը և հասարակական պրակտիկան համոզիչ ցույց են տալիս, որ կրոնի և կրոնաբարոյական նորմերի միջոցով իրականում չեն կարող լուծվել և ոչ մի սոցիալ-քաղաքական, տնտեսական ու բարոյական



պրոբլեմ, հակասություն կամ կոնֆլիկտ։ Եվ հարցը միայն հասարակական և բարոյական լավագույն իդեալներ հռչակելը չէ, ինչպես դա կատարում է կրոնը, այլ այն, թե ինչ օբյեկտիվ պայմաններ կան և իրական ինչպիսի միջոցներ է ապահովում տվյալ ուսմունքը դրանց իրականացման համար։

Կրոնական գաղափարախոսության ռեակցիոն էությունը մասնավորապես դրսևորվել և այսօր էլ դրսևորվում է այն բանում, որ, կրոնական հավատն առաջարկելով որպես իրական պրոբլեմների լուծման միջոց, շեղել է մարդկանց ուշադրությունն այդ պրոբլեմների բուն պատճառների ճանաչումից, տվել դրանց երևակայական թվացող լուծումներ, դրանով իսկ խանգարել հասարակական զարգացման պրոցեսում ծագող հակասությունների և կոնֆլիկտների էության ըմբռնմանը։ Այսպես, քրիստոնեությունը քարոզել և շարունակում է քարոզել հավասարություն, եղբայրություն, երջանկություն և ազատություն։ Սակայն, շնորհիվ իրենց վերացականության, այդ հումանիստական գաղափարները ոչ միայն չեն իրականացվել, այլև վերածվել են սոցիալ-բարոյական ճնշումը տեսականորեն արդարացնող միջոցների։ Մարդկանց միջև քրիստոնեական հավասարության քարոզը ենթադրում է «մեղավոր» էակների հավասարություն աստծո առջև, իսկ եղբայրությունը՝ որպես աստծո զավակների եղբայրություն, այսինքն՝ հավասարություն և եղբայրություն ոչ թե իրական սոցիալական կյանքում՝ դասակարգերի և տարբեր դավանանքի պատկանող մարդկանց միջև, այլ երևակայության, գերբնական էակի՝ աստծո հետ ունեցած հարաբերության մեջ։

Թեև հաշվի նստելով պատմական նոր իրադրության հետ՝ եկեղեցին սոցիալ-քաղաքական իր ուսմունքում մեծ տեղ է հատկացնում երկրային պրոբլեմներին, մարդուն հուզող, նրա գոյության հետ անմիջականորեն առնչվող հարցերին, հանդես է գալիս մարդու իրավունքների պաշտպանության, ազգային ինքնորոշման և իրավահավասարության օգտին, սոցիալական և քաղաքական ճնշման դեմ, սակայն այդ ամենը բոլորովին չի փոխում ո՛չ կրոնի էությունը և ո՛չ էլ կրոնական հումանիզմի բովանդակությունը։ Բանն այն է, որ դրանք, վերջին հաշվով, վավերացվում և հաստատվում են աստծո անունով։ Դա հարկադրական զիջում է, որով եկեղեցին ձգտում է կրոնի ընդհանուր ճգնաժամի պայմաններում հարմարվել ժամանակի ոգուն և պահանջներին, միշտ լինել «աշխարհի մեջ և աշխարհի հետ», որպեսզի ինչ-որ չափով ամրապնդվի եկեղեցու դիրքերը։

Իրականությանը հակառակ, կրոնի գաղափարախոսները շարունակում են պնդել, թե իբր կյանքն առանց կրոնի անիմաստ է և հակահումանիստական, որ քրիստոնեական ուսմունքը բուն հումանիզմն է։ «Հումանիզմը հումանիզմ չի կարող կոչվել այնքան ժամանակ, քանի դեռ այն իր բոլոր հարցերի պատասխանը չի գտել Հիսուս Քրիստոսի մոտ»,— գրում է ամերիկացի կաթոլիկ աստվածաբան Լին Գ. Հոկը (տե՛ս Гуманизм, атеизм, религия. М., 1978 г., стр. 29)։ Արդի աստվածաբանական գրականությունը հեղեղված է նման քարոզներով։ Այսպես, օրինակ, հայտարարելով, որ մեր օրերում սոցիալ-բարոյական բոլոր հակասությունների հիմնական պատճառը կրոնական հավատի վերացումն է և գիտամատերիալիստական, աթեիստական աշխարհայացքի տարածումն ու հաստատումը, Պողոս VI պապը գրում էր. «Դարեր ի վեր, երբ աստված հենարան էր թույլ մարդու համար, վերջինս, ավա՜ղ, հավատաց արարչի բացասման միջոցով իր բարձրացման հնարավորությանը, չնկատելով, որ այդպիսի բացասման զսպանակը անվերապահորեն աստծո մահից հետո տանում է դեպի մարդու մահ» (տե՛ս Религия и церковь в современную эпоху. М., 1976 г., стр. 139)։

Սոցիալիզմի հասարակական պրակտիկան ինքնին հերքում է նման դատողությունները։ Բացահայտելով այդ քարոզների կեղծ մարդասիրական բնույթը, գիտական աթեիզմը ապացուցում է, որ կրոնական հումանիզմի ու կրոնական արժույթների բացասումը ամենևին էլ մարդու և մարդկային իրական արժույթների բացասում չէ, և որ աստծո մահը բոլորովին էլ մարդու համար մահ չէ։ Այլ ճիշտ հակառակը։ Հասարակական առաջընթացի պրոցեսում, իր ակտիվ վերափոխիչ գործունեությամբ՝ գիտության միջոցով ինքն

իրեն ազատագրելով բնական և հասարակական ուժերի ճնշումից, որի աղավաղված արտահայտությունը բուն կրոնն է, հաստատելով իր իշխանությունն այդ ուժերի նկատմամբ, մարդն օբյեկտիվ պայմաններ է ստեղծում իրական արժույթների զարգացման համար։ Հասարակական և գիտական առաջընթացի պրոցեսում կրոնական երևակայական արժույթների մերժումը փոխարինվում է իրական, ռեալ մարդկային արժույթների հաստատումով։

Առանց մարդու ակտիվ վերափոխիչ գործունեության, որը դրսևորվում է նաև գիտության և տեխնիկայի զարգացման միջոցով, անհնար է մարդու իրական երջանկության ու ազատության հաստատումը, նրա համակողմանի զարգացումը։

Ժամանակակից աստվածաբանական ուսմունքներում և եկեղեցական քարոզներում մեծ տեղ է հատկացվում աշխարհայացքային ու բարոյական հարցերին։ Կղերականները լրջորեն զբաղվում են ԳՏՀ-ի սոցիալական հետևանքների աշխարհայացքային, բարոյական արժութավորման պրոբլեմներով։ Ընդ որում ամեն կերպ աշխատում են ժխտել գիտության և տեխնիկայի հումանիստական նշանակությունը, գիտության աշխարհայացքային ֆունկցիան, պնդելով, թե, իբր, միայն կրոնն է ի վիճակի ապահովելու աշխարհի ամբողջական ընկալումը և մարդու նորմալ կենսագործունեությունը։

Հարկ է նշել, որ «գիտություն—հումանիզմ» պրոբլեմի առաջադրումը ներկայանում է որպես մեր օրերի ամենակենսական հարցերի և մտահոգությունների ընդհանրացված արտահայտությունը, որի էությունը հանգում է հետևյալին. գիտության և տեխնիկայի հետագա զարգացումը, նյութական արժեքների բազմապատկումը նպաստելո՞ւ է մարդու (հասարակության) սոցիալ-բարոյական պրոգրեսին, բերելո՞ւ է նրան երջանկություն, թե՞ տանելու է հոգևոր-բարոյական այլասերման ու ֆիզիկական բնաջնջման։ Շտապելով օգտագործել ստեղծված բարդ իրավիճակը, կրոնի սպասարկուները ձեռնամուխ են լինում այդ պրոբլեմի լուծման կրոնական տարբերակի մշակմանը։

Գլխավորապես հիմք ունենալով կապիտալիստական իրականությունը, որտեղ աշխատանքային գործունեության և հասարակական կյանքի ընդհանուր մեքենայացումը, ուրբանիզացումն ու ինդուստրացումն առաջ են բերում օտարում, ապա մեկուսացում, անտարբերություն և հասարակությունից խորթացում, ինչպես նաև ելնելով տեխնիկայի սոցիալական դերի աճից, մարդկությանն սպառնացող ջերմամիջուկային աղետի հնարավորության և մասսայական ոչնչացման զենքերի արտադրության ահաբեկիչ փաստից, կղերականները գիտության «չարիքի» դեմ պայքարելու լավագույն և միակ միջոց համարում են գիտությունը կրոնական բարոյականությամբ և քրիստոնեական հումանիզմով լրացնելը։

Գիտության և հումանիզմի միջև կարող է հակասություն առաջանալ միայն այնպիսի հասարակական հարաբերությունների պայմաններում, երբ գիտությունը, կտրվելով բարոյականությունից (մարդուց), վերածվում է ինքնանպատակի, այսինքն՝ մարդուն ծառայելու փոխարեն ուղղվում է նրա դեմ։ Նման հարաբերությունների պահպանողն ու վերարտադրողը կապիտալիստական հասարակարգն է, որտեղ զարգացման բարձր աստիճանի հասած գիտության ու տեխնիկայի կապիտալիստական կիրառումն ու զարգացումը առավել է խորացնում մարդու արժեզրկման պրոցեսը, խլելով նրանից մարդկային հատկանիշները և նրան իջեցնելով մինչև սովորական իրի աստիճանի։ Այս իմաստով, գիտության նվաճումներն ի չարը գործադրելու հնարավորության չեզոքացման հիմնական երաշխիքը մնում է սոցիալական այն ուժերի վերացումը, որոնք գիտությունն օգտագործում են իրենց նեղ դասակարգային շահերն իրականացնելու համար։ Այսպիսով, գիտության արդյունքներն ընդդեմ մարդու կիրառելու սոցիալական հիմք ստեղծողը կապիտալիզմն է։

Կապիտալիզմ և մարդասիրություն հասկացություններն անհամատեղելի են։ Մարդու կողմից մարդու ճնշման գոյությունը սկզբունքորեն անհնար է դարձնում մարդու պրոբլեմի իրական և հումանիստական լուծումը։ Արդի կապիտալիզմի պայմաններում հումանիզմը և գիտությունը հակադրվում են։ Եվ դա օրինաչափ է, որովհետև գիտությունն էլ է ներքաշվում հակամարտ



հասարակական հարաբերությունների շրջապտույտի մեջ, դառնում շահագործման ու ճնշման միջոց։ Հումանիզմի և գիտության մարքսիստական ըմբռնմամբ, գիտության և հումանիզմի միջև հակասություն լինել չի կարող, որովհետև եթե հումանիզմը մարդու ազատությանը, նրա հոգևոր ուժերի զարգացմանը, նրա ինքնահաստատմանը նպաստող օբյեկտիվ պայմանների ստեղծումն է, ապա այդ պրոցեսի իրականացման գործում վճռական դեր է կատարում գիտությունը։ Ավելին, որպես ուսմունք ճշմարիտ և իրական հումանիզմի մասին, մարքսիստական գիտությունը գտնում է, որ հասարակական արտադրության և գիտության նպատակը սոսկ նյութական բարիքների բազմապատկումն ու նրանց առատության ապահովումը չէ, այլ գլխավորապես այդ հիմքի վրա մարդու՝ որպես սոցիալ-բարոյական էակի պահպանումն ու զարգացումը։ Մարքսիզմ-լենինիզմը շեշտում է, որ գիտությունն ու տեխնիկան նյութական հարստության ստեղծման միջոցներից են, որոնց դերը երբեք չպետք է գերագնահատել։ Դրանց զուգընթաց պետք է զարգացվեն հոգևոր հարստության ստեղծման այլ անհրաժեշտ ձևեր՝ մշակութային, գեղագիտական, բարոյական։ «Բայց գիտության՝ այդ իդեալական և միաժամանակ գործնական հարստության զարգացումը միայն այն կողմերից մեկն է, այն ձևերից մեկը, որոնց մեջ հանդես է գալիս մարդու արտադրաուժերի զարգացումը, այսինքն՝ հարստության զարգացումը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, Կրոնի մասին, «Հայաստան» հրատ., 1977 թ., էջ 23)։

Հասարակական զարգացման փոխադարձորեն պայմանավորվող նյութական և հոգևոր կողմերի ներդաշնակ զարգացման դեպքում միայն լիովին կապահովվի մարդու և հասարակության ներդաշնակ զարգացումը։ Սոցիալիզմը, լինելով իրական հումանիզմի կրողն ու զարգացնողը, ի հակադրություն կապիտալիզմի, որպես հասարակական կյանքի, մասնավորապես՝ գիտության զարգացման ելակետ ու արդյունք դիտում է ոչ թե մերկ շահույթը, այլ մարդուն, նրա բազմաբնույթ պահանջմունքների առավել լիովին բավարարումը։ Սոցիալիզմի նշանաբանն է. գիտություն՝ մարդու մասին, գիտություն՝ հանուն մարդու, հասարակարգ, որտեղ մարդու համակողմանի զարգացումն է դառնում գլխավոր նպատակ։

Մարքսն առաջինն էր, որ բացահայտելով գիտության սոցիալական էությունը՝ որպես իրականությունը ճանաչող, վերափոխող և մարդուն ու հասարակությանը ծառայող հզոր ուժ, մարդուն դիտեց իբրև հասարակական զարգացման ինքնանպատակ և մեծագույն արժույթ։ Այդպիսի մոտեցմամբ արդեն գիտությունը ոչ թե հակադրվում է բարոյականությանը կամ հումանիզմին, այլ վերածվում է դրանց զարգացման համար պայմաններ ստեղծող կարևորագույն սոցիալական միջոցի։ Սոցիալիստական արտադրաեղանակի հիմնական նպատակը ժողովրդի հարաճուն պահանջմունքների բավարարումն է և անհատի հոգևոր ու մարմնական զարգացման համար պայմաններ ու միջոցներ ստեղծելը, այն դեպքում, երբ կապիտալիստական արտադրությունն ամբողջապես ուղղված է աշխատավորության գիշատիչ շահագործման միջոցով հավելյալ շահույթի կորզմանը։

Բուրժուական աշխարհում գիտությունը և բարոյականությունը հակադրվում են միմյանց՝ որպես կուլտուրայի իրարամերժ տարրեր։ Եվ աստվածաբանների ու բուրժուական սոցիոլոգների հիմնական սխալն էլ այն է, որ նույնացնելով կապիտալիստական հասարակություն և մարդկություն հասկացությունները, հակամարտ ֆորմացիային հատուկ երևույթը ընդհանրացնում և տարածում են ողջ մարդկային քաղաքակրթության վրա։ Հակառակ հումանիզմի կրոնական և բուրժուական այդ վերացական ու սահմանափակ ըմբռնումների, մարքսիզմն այն դրեց գիտական հիմքերի վրա և հիմնավորեց մարդու համակողմանի, ազատ զարգացման, այն է՝ կոմունիստական հասարակարգի առաջացման ու զարգացման պատմական անհրաժեշտությունը, որը լինելու է մարդկանց այնպիսի ասոցիացիա, «որտեղ յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972 թ., էջ 164)։

Սոցիալիզմը, իբրև ռեալ հումանիզմի հաստատման առաջին փուլ, վերացնելով նախորդ ֆորմացիային հատուկ «մարդ—տեխնիկա» հակադրության սոցիալական հիմքը և մերժելով կրոնական իդեալը, օբյեկտիվ պայմաններ է ստեղծում կոմունիստական իդեալի իրականացման, դրանով իսկ և ճշմարիտ, պրակտիկ հումանիզմի զարգացման համար։

«...Աթեիզմը,— գրում է Մարքսը,— որպես աստծո բացասում, նշանակում է տեսական հումանիզմի հաստատում, իսկ կոմունիզմը, որպես մասնավոր սեփականատիրության բացասում, նշանակում է իրոք մարդկային կյանքի... պահանջ, նշանակում է գործնական հումանիզմի հաստատում» (К. Маркс, Ф. Энгельс. Из ранних произведений. М., 1956 г., стр. 637)։

Այսպիսով, մարքսիզմ-լենինիզմը, որպես հումանիզմի գիտական տեսություն, ներդաշնակորեն զուգակցում է գիտականությունը, հումանիզմը և հեղափոխականությունը՝ կազմելով մի ամբողջական աշխարհայացք։ Նրանում գիտականության ելակետն ու նպատակը մարդն է, նրա համակողմանի զարգացումը, իսկ հումանիզմը, կառուցված լինելով գիտական հիմքերի վրա, նպատակաուղղվում է բնության և հասարակության զարգացման օրենքների ճանաչման միջոցով աշխարհի կոմունիստական վերափոխմանը, մարդու պահանջմունքների առավել լիովին բավարարմանն ու հոգևոր-մարմնական ուժերի ծաղկմանը։

Ժամանակակից աստվածաբանական ուսմունքներում տեխնիկական առաջընթացը կտրվում է նրա իրականացման հասարակական պայմաններից և վերածվում հասարակական զարգացումից անկախ և ընդդեմ նրա գործող արտապատմական ուժի։ Իհարկե, օտարված հասարակական հարաբերությունների աշխարհում, ինչպիսին է կապիտալիզմը, անպայմանորեն օտարվում են նաև գիտության արդյունքները, որոնք դուրս գալով մարդու հսկողությունից, հակադրվում են և սպառնում նրան որպես թշնամի ուժ։ Կապիտալիստական հասարակարգում գիտատեխնիկական զարգացումը, սրելով նրան բնորոշ հին հակասությունները և դրանց ավելացնելով նորերը, ավելի հստակորեն է բացահայտում կապիտալիզմի հակամարդկային և ռեակցիոն էությունը։

Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիստական արտադրահարաբերությունները հնարավորություն են ընձեռում գիտության ու տեխնիկայի զարգացումը տանելու մարդասիրական հունով և գիտակցորեն կառավարելու այն, որի շնորհիվ և վերացվում են շահագործողական հասարակարգին հատկանշական բոլոր կործանարար հետևանքները։

Սակայն ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը մարդկությանն առաջադրել է նաև այնպիսի պրոբլեմներ, որոնք հավասարապես շոշափում են բոլոր ժողովուրդների և երկրների շահերը։ Այդ պրոբլեմներից են, օրինակ, բնական ռեսուրսների սպառման սպառնալիքը, շրջապատի աղտոտման, մթնոլորտի թունավորման, սոցիալ-տնտեսական, բարոյահոգեբանական, աշխարհայացքային բնույթի բազմաթիվ այլ հարցեր։ Այդ հարցերը պահանջում են իրենց հրատապ լուծումը։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVI համագումարն արդի փուլում մարքսիստական գիտությանն առաջադրվող հարցերի թվում նշեց նաև գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքների ուսումնասիրության կարևորությունը (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 128)։

ԳՏՀ-ի հարուցած սոցիալական պրոբլեմներն այսօր դարձել են կրոնական սպեկուլյացիայի օբյեկտ։ Կրոնն ու եկեղեցին, շեշտը դնելով ԳՏՀ-ի իրականացման բարոյահոգեբանական և աշխարհայացքային կողմի վրա, փորձում են այն վարկաբեկել ժողովրդական զանգվածների աչքում, ուստի խիստ անհրաժեշտ է այդ պրոբլեմների կրոնական մեկնաբանությունների քննադատությունը։

Այսօր, հասարակության արտադրաուժերի զարգացման աննախադեպ չափերը և բարձր մակարդակը, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև խորացող կոնֆլիկտը կապիտալիզմի պայմաններում հասել են ծայ-



րահեղ սրման։ Այդ հիմնական հակասությունն ամենատարբեր ձևերով է դրսևորվում հասարակական կյանքի զանազան ոլորտներում՝ սոցիալ-տնտեսական կյանքում, քաղաքականության մեջ, բարոյական և աշխարհայացքային ըմբռնումներում։ Անցումային փուլի համար նման բարդ և հակասական վիճակը միանգամայն օրինաչափ է և բնական։

Կապիտալի աշխարհում մարդու համար սոցիալ-հոգեբանական առումով ստեղծվել է բավականին բարդ վիճակ, երբ նա հիմնականում հրաժարվել է հին չափանիշներից, սակայն դեռևս ամբողջապես չի յուրացրել նորը, պրոգրեսիվը։ Անշուշտ, հոգեբանական այդ իրողությունը այն օբյեկտիվ հիմքն է, որը ծնում է գիտական մտածելակերպին անցնելու զանազան ձևեր, սինկրետիկ ուսմունքներ։

Հին աշխարհըմբռնումից նորին անցնելու այդ հակասական պրոցեսում այսօր որոշակի դեր են խաղում գիտությունն ու տեխնիկան։ Բայց, քանի որ վերջիններս իրենց հումանիստական զարգացման և ծավալման համար անհրաժեշտ հիմք չեն գտնում, ապա թվում է, թե բուն գիտությունն ու տեխնիկան են ծնում հակասություններ, և կասկածի տակ է դրվում դրանց հումանիստական բնույթը։ Այդ բարդ ու հակասական իրադրության վրա էլ ճարպկորեն լարախաղացություն են անում կրոնի և կապիտալիզմի գաղափարախոսները։

Այսպես, աստվածաբանները և բուրժուական գաղափարախոսները քարոզում են, թե մարդը կորցրել է իր հանգստությունը, բարոյական հավասարակշռությունը, խոսում են հոգևոր դատարկության և աշխարհայացքային վակուումի մասին։ Եվ բանն այն է, որ այդ բոլորի պատճառը համարվում են գիտությունն ու տեխնիկան, աթեիզմի և անհավատության տարածումը։

Դեռևս անցյալ դարում, պատասխանելով աթեիզմի և առաջընթացի հասցեին արվող նման բնույթի մեղադրանքներին և հարձակումներին, Ֆ. Էնգելսը գրել է. «Դատարկությունը գոյություն է ունեցել արդեն վաղուց, քանի որ կրոնը մարդու ինքնաամայացման մի ակտ է, իսկ այժմ, երբ խամրեց այդ դատարկությունը ծածկած ծիրանին, երբ ցրվեց այն պատած մշուշը, դուք զարմանում եք, որ այժմ, ի սարսափ ձեզ, լույս աշխարհ եկավ այդ դատարկությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, Կրոնի մասին, էջ 431)։

Եվ այսօր հին համոզմունքների և հայացքների ժխտման, գիտամատերիալիստական աշխարհայացքի տարածման ու հաստատման ընդհանուր պրոցեսում կրոնական իդեալի և պատկերացումների փլուզումը, կրոնական արժույթների և հին հասարակության բացասումը կրոնի պաշտպաններն ու հին աշխարհի ջատագովները ներկայացնում են որպես մարդկային քաղաքակրթության և մարդու «մերժում» ընդհանրապես։ Իսկ իրականում դա նորին անցնելու բնորոշ հակասություններն են, որ հաճախ չի գիտակցվում առօրեական ողջախոհության մեջ։

Արդի դարաշրջանի յուրահատկություններից մեկն էլ գիտության՝ հասարակական կյանքը կարգավորելու և հասարակական զարգացման շարժիչ ուժ լինելու ֆունկցիան, շնորհիվ գիտության անմիջական արտադրաուժի վերածվելու, ստացել է անմիջական և համընդհանուր կիրառում։ Ավելին, գիտությունն ու տեխնիկան այսօր դարձել են հասարակության զարգացումն ու նրա գոյությունը որոշող կարևորագույն գործոններ։ Մյուս կողմից, ավելի ու ավելի է խորանում գիտության կապը քաղաքականության հետ։ Գիտության սոցիալ-քաղաքական դերի աննախադեպ աճը, նրա զարգացման ներկա տեմպերը և ուղղվածությունն անհրաժեշտ են դարձնում գիտության ու տեխնիկայի զարգացման պլանավորումը, վերահսկումը և խելամիտ կարգավորումը։ Այս առումով խիստ մեծանում է գիտնականների, պետական և քաղաքական գործիչների պատասխանատվությունը ինչպես գիտական հետազոտության պրոցեսի պլանավորման ու իրականացման, այնպես էլ ստացված արդյունքների կիրառման և օգտագործման ուղիների ու ձևերի հանդեպ։

Քանի որ գիտության հարաբերական ինքնուրույնության աճին զուգընթաց մեծանում է նրա հակադարձ ազդեցությունը հասարակության զարգացման վրա, ապա նայած թե հասարակական ու քաղաքական ինչ ուժեր են տնօրինում

գիտության արդյունքները, ըստ այդմ էլ վերջինիս կիրառումը կարող է ընթանալ դրական կամ բացասական, մարդասիրական կամ հակամարդկային ուղիով։

Սոցիալիզմի պայմաններում գիտության արդյունքներն ի սպաս են դրվում աշխատավորության, ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը։ Հասարակական արտադրության պրոցեսում գիտության և տեխնիկայի կապիտալիստական կիրառումը դառնում է սոցիալական չարիք, ծնունդ տալով միլիտարիզմին, ֆաշիզմին և ուղղվում է աշխատավորության, ընդհանրապես մարդկության դեմ։ Ջրմբռնելով հասարակական կյանքում գիտության ու տեխնիկայի խաղացած հակասական դերի իրական պատճառները և չուզենալով տեսնել նրանց զարգացման որակական տարբերությունները հասարակական տարբեր համակարգերում, կղերականները չարիքի պատճառ համարում են գիտությունը և աթեիզմը, դրանով իսկ սքողում սոցիալական չարիքների ու բարոյական հակասությունների իրական պատճառները, շեղում ժողովրդական զանգվածներին պայքարի ճշմարիտ ուղուց։ Մինչդեռ «...գիտության «վտանգի» դեմ միջոց,— գրում է ակադեմիկոս Ա. Դ. Ալեքսանդրովը,— կարող է լինել միայն ավելի կատարյալ գիտելիքը և այդ հիմքի վրա պայքարը հասարակական այն ուժերի դեմ, որոնք այնպես շահագործում են գիտությունը» (տե՛ս Наука и нравственность. М., 1971 г., стр. 32)։

Այսօր, հասարակական պրակտիկան համոզիչ ցույց է տալիս, որ սոցիալիզմը, վերացնելով «մարդ—տեխնիկա» հակադրության սոցիալ-տնտեսական հիմքը՝ մասնավոր սեփականատիրությունը, և հասարակական կյանքը կառուցելով մարդասիրական հարաբերությունների վրա, մեծ հնարավորություն է ընձեռում զուգակցելու գիտատեխնիկական զարգացումը և հասարակական առաջընթացը։ Այո, «...մարդկությունը միշտ իրեն առաջադրում է լոկ այնպիսի խնդիրներ,— գրում է Կ. Մարքսը,— որոնք ինքը կարող է լուծել, որովհետև մոտիկից քննելիս միշտ պարզվում է, որ բուն խնդիրը ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն առկա են կամ ծայրահեղ դեպքում գտնվում են լինելիության պրոցեսում» (Կ Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 690)։

Այսպիսով, հակառակ բանականությունն ու գիտությունը վարկաբեկելու և դրանց գործունեության ոլորտը սահմանափակելու ֆիդեիստական փորձերին, գիտությունը, մարդկային բանականությունը ի վիճակի են լուծելու ԳՏՀ-ի կողմից մարդկությանն առաջադրած սոցիալ-տնտեսական, բարոյաքաղաքական խնդիրները, որովհետև արդեն առկա են դրանց լուծման օբյեկտիվ նախադրյալները։ Արդի հասարակությունը, որպեսզի կարողանա վճռել իր առջև ծառացած պրոբլեմները, հիմնականում պետք է հենվի սոցիալիզմի՝ իբրև հասարակական անհրաժեշտ հիմքի և մարքս-լենինյան գիտության՝ իբրև մարդու մասին միասնական ուսմունքի վրա։

Մարքսիստական փիլիսոփայության մեջ հիմնավորվեց գիտության, գիտական գիտելիքի միասնության դրույթը։ Կ. Մարքսն առաջինն էր, որ բնական և հասարակական գիտությունների դիալեկտիկական միասնության անհրաժեշտության դրույթի հիմնավորումով մշակեց հասարակության, մարդու և գիտության զարգացման ընդհանուր մեթոդոլոգիա՝ գիտական աշխարհայացք, որը պահանջում է գիտական բոլոր հետազոտությունների, հասարակական կյանքի կազմակերպման պրոցեսում միշտ նկատի ունենալ մարդուն՝ որպես մեծագույն արժույթի և պատմության ինքնանպատակի։

Մարքս-լենինյան տեսությունը հասարակության պատմությունը դիտում է որպես բնապատմական պրոցես, այսինքն՝ մարդու և բնության պատմությունը ներկայացվում է միասնության մեջ։ Այս մոտեցմամբ բնագիտությունը ձեռք է բերում պրակտիկ արժեք, բարոյական բովանդակություն և միաժամանակ սկիզբ է դրվում մարդու մասին բնական գիտությանը։ «Ինքը, պատմությունը,— գրում է Կ. Մարքսը,— բնության պատմության իրական մասն է, մարդու բնության լինելիությունը։ Հետագայում բնագիտությունը կներառի մարդու մասին գիտությունն այն չափով, ինչ չափով, որ մարդու մասին գիտությունը կներառի բնագիտությունը։ Դա կլինի մեկ գիտություն» (К. Маркс, Ф. Энгельс. Из ранних произведений. М., 1956 г., стр. 596)։



Այսպիսով, գիտությունը՝ հումանիզմին, տեխնիկան՝ մարդուն, քաղաքակրթությունը՝ բնությանը հակադրելու աստվածաբանական փորձերը սնանկ են ու անհիմն։ Մարդը կարող է և պետք է լուծի իր գոյության հետ կապված ամենաբարդ պրոբլեմները, առանց դիմելու կամ սպասելու գերբնական ուժերի «օգնությանը»։ Եթե այսօր գիտությունն ու տեխնիկան չեն զարգանում միայն հումանիստական ուղիով, ավելին, կարող են ուղղվել և ուղղվում են մարդու և մարդկության դեմ, դա ոչ թե մարդու և նրա բանականության անզորության ու սահմանափակության, այլ հասարակական հարաբերությունների այն համակարգի հակամարդկային էության մասին է վկայում, որտեղ գիտությունը դառնում է չարիք, ուր գիշատչորեն շահագործվում են մարդկային բանականության հնարավորությունները։ Նման մթնոլորտի ստեղծողն ու վերարտադրողը արդի կապիտալիստական հասարակարգն է, որը ռազմական մրցավազքի, միլիտարիզացիայի, առճակատման իր քաղաքականությամբ հարկադրում է մարդկությանն իր բանականության աղյուծի բաժինը հատկացնել ոչ թե սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծմանը, այլ ռազմական ծախսերի մեծացմանը, մասսայական ոչնչացման նորանոր զենքերի ստեղծմանը։

Ժամանակակից ֆիդեիզմը փորձում է կրոնական հավատի օգտին «ապացույցներ» կորզել ընդհանուր առաջընթացից, լայնորեն սպեկուլյացիա անելով հասարակական զարգացման ներկա փուլի հակասականության և բարդության վրա։ Կրոնն այսօր պայքարում է գիտության և առաջընթացի դեմ նրբին, միջնորդավորված ձևերով, որն ավելի վտանգավոր է, քան նրանց ուղղակի և բացահայտ մերժումը։ «Միլիոնավոր մեղքեր, ստորություններ, բռնություններ ու ֆիզիկական վարակներ անհամեմատ հեշտ են բացահայտվում բազմության կողմից,— գրում է Վ. Ի. Լենինը,— ուստի և համեմատաբար պակաս վտանգավոր են, քան նուրբ, հոգևոր, ամենաշքեղ «իդեական» կոստյումներով զգեստավորված աստվածիկի իդեան» (Երկեր, հ. 35, էջ 119)։

## Սոցիալիստական աշխատանքի հերոսները

# ԳԼԽԱՎՈՐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԸ



ԾՐՋԵԼ ԷՐ ԴԱՇՏԵՐՈՒՄ ու այգիներում, ուրախ տուն դարձել: Լավ բերք էր աճել: Աշխատանքային քառասուն տարիներին և՛ շարքային է եղել, և՛ օղակավարունի ու բրիգադավար: Հիմա էլ ահա վեց տարի գլխավոր գյուղատնտես է, ու բարձր բերքը երբեք նրան չի զարմացրել: Իմանում էր նախօրոք՝ հիմնվելով ճիշտ հաշվարկների վրա, ապա նվիրվում գործին: Ահա թե ինչու Աղավնատուն գյուղի և Էջմիածնի շրջանի ղեկավարները ամենառեկորդային բերքն անգամ համարում են կոմունիստ Ռոզա Ավագյանի և նրա ընկերների աշխատանքի արժանի հատուցումը: Ամենաարժանին, սակայն, պետք է հատուցեր 1982-ը...

Սոցիալիստական աշխատանքի հերոս է, մասնակցել է ՀԿԿ և ՍՄԿԿ համագումարների, ընտրվել ՀԿԿ Կենտկոմի անդամ, ու հիմա էլ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ է: Գուցե այսպիսի դեպքերո՞ւմ է, որ ասում են՝ երջանիկ աստղի տակ է ծնվել: Ինչպե՞ս չէ: Գուցե՞ հերոսի ոսկե աստղն էլ ի սկզբանե կանխորոշված է եղել նրա համար: Բայց համագյուղացիներն այլ կարծիքի են: Նրանք լավ գիտեն, որ գրեթե ամեն ինչ Ռոզա Ավագյանին դժվարությամբ է տրվել: Դժվար էր հենց սկզբից: Դեռևս 1944-ին, հրաժեշտ տալով դպրոցական նստարանին, կապվեց հողին: Ամեն մի բույր մի որբի կյանք էր փրկում: Բայց հողն էլ բուռ-բուռ էր տալիս ծով քրտնքի դիմաց: Հողը երես չավեց նրան, հենց սկզբից հասկանալ տվեց, որ իր հետ գործ բռնելը հանաք բան չէ: Ռոզան համառ էր, և հողին ստիպեց տալ այն ամենը, ինչի ընդունակ է: Դրա համար պահանջվեց 40 տարի: Ու նա միշտ համոզված էր իր հաղթանակի մեջ, բայց և անհանգիստ՝ մինչև բերքահավաքը:

Այդ օրն էլ տուն դարձավ մեծ հույսերով: 1982-ի հունիսի տասնինն էր: Կոլտնտեսության վարչության նախագահ Սուրեն Պարսամյանը ծանրութեթև էր անում պոմիդորները, դիտում խաղողի այգիները, գոհունակությամբ ժպտում: Ուրախ էր նաև Ռոզան, բայց կասկած կար սրտում. բնությունը երբեմն չար խաղ է խաղում: Տագնապած տուն դարձավ ու չհեռացավ պատուհանից: Նայեց երկնքին, դիտեց բոլորը՝ ամպերի կուտակումները, անձրևը, հեղեղը և ապա՝ կարկուտը: Անցավ երկու շաբաթ: Դեռ չէին հաշվել տարածն ու թողածը, երբ կարկուտը կրկնվեց ավելի ուժգին: Ռոզա Ավագյանը, տնտեսության մյուս ղեկավարները շրջեցին դաշտերը, այգիները և լուռումունջ դարձան տուն: Մարգերը ծածկվել էին կիսակարմիր պոմիդորներով, ջարդոտվել էին բույսերի թփերը, խաղողի վազերը: Թվում էր՝ այլևս ելք չկա, միակ անելիքը՝ ակտավորելն է...

Ամբողջ գիշեր փակված սենյակում՝ վերհիշեց անցած չորս տասնամյակը. և՛ կարկուտ է եղել, և՛ հեղեղ ու երաշտ, բայց տնտեսության մարդիկ փորձությունից դուրս են եկել բաց ճակատով: Հիշեց. քսան տարի առաջ էր, գարնանը, նոր սածիլած մարգերը դարձյալ կարկտահարվեցին, աղջիկները հուսահատ գնացին, ինքը մնաց դաշտում, ջերմոցներում հաշվեց սածիլների մնացորդը: Առավոտյան հավաքեց բրիգադի մարդկանց ու նորից սածիլեցին: Եվ այդ նույն տարում հեկտարից ստացվեց 650 ցենտներ պոմիդոր: Ադեռը գարնանն էր, և՛ սածիլներ կային, և՛ ժամանակ՝ դրանց աճի ու հասունացման համար: Իսկ հիմա հունիսն էր, պետք է շուտով ժողովեին առաջին բերքը:

— Առավոտյան հավաքվել էին գրասենյակում և իրար երես նայում,— պատմում է կոմունիստ բրիգադավար Բեգլար Գրիգորյանը:— Ռոզան եկավ՝ հոգնած դեմքով, հավանաբար գիշերը չէր քնել: Ասաց, որ բույսերի արմատներն ու ցողունները հիմնականում պահպանվում են, իսկ խաղողի վազերի վրա, թեկուզ ջարդոտված, բայց ողկույզներ դեռ մընում են, և առաջարկեց ուժեղացնել սնուցումը, բուժումը, ամբողջ մշակությունը և... չհուսահատվել:

Այդ ամռանը Աղավնատան դաշտերում, ինչպես ասում են, արտակարգ դրություն էր հայտարարված, իսկ, երբ ուշ աշնանը սկըսվեց բերքահավաքը, առևտրական կազմակերպությունները արդեն պահեստավորել էին տարաները, պահածոների գործարանները՝ փակել ընդունման կետերը: Վերակսե՞լ գործը: Հանձնաժողով եկավ, նայեց դաշտերը՝ բերքը ծովացել էր: Վերջում պարզվեց, որ տընտեսությունը հեկտարից ստացել է 500 ցենտներ պոմիդոր: Իսկ Դ. Զոհրաբյանի բրիգադը, պլանավորված 5.930-ի փոխարեն, ստացել էր 11 հազար 566 ցենտներ բանջարեղեն, խաղողի արտադրության պլանը կատարել է 170 տոկոսով:

Ռոզան սկսել էր հեկտարից հիսուն ցենտներից, մեկուկես տասնամյակ հետո միջին բերքատվությունը հասցրեց երեք հարյուրի և արժանացավ ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի արծաթե մեդալի: Թվում էր՝ դա հողի կարողության վերջին սահմանն էր, բայց ինքը սովոր է աններհատ վերելքի: Պետք էր դիմել գիտությանը: Արմատավորեց անվանի սելեկցիոներ Անահիտ Անանյանի ստեղծած պոմիդորի սորտերը: Գիտնականը բարձր բերք ստացել էր լաբորատորիաներում ու փոքրիկ հողակտորներում: Ռոզա Ավագյանը տասնհինգ հեկտարի վրա գերազանցեց նրա ցուցանիշները. հեկտարից ստացավ 700 ցենտներ բերք: Այդ բարձր արդյունքի համար ինչպես նա, այնպես էլ անվանի գիտնականն արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Հետո սկե աստղի ու Լենինի շքանշանի կողքին ավելացավ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանը: Շքանշաններ ու ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի ոսկե մեդալներ ստացան բրիգադի անդամները:

Նա համոզվել էր, որ հողի կարողությունը սահման չունի, եթե դիմես գիտությանը, բայց դրան պետք է տիրապետել հիմնավորապես: Գոնե սովորեր հեռակա: Ու քայլերը նորից բռնեցին ծանոթ ճանապարհը... Կոշտացած մատներով քաշեց հարցաթերթիկը, նայեց հանձնաժողովի անդամներին: Ծանոթ դեմքեր են: Ինչ-որ տեղ, անցյալի հեռուներում, ասես, տեսել է նրանց: Գուցե իր հետ ինստիտուտ դիմողներից են... քառասունհինգին, քառասունյոթին, հիսունին: Ինքը քննությունների էր գալիս դաշտից, իսկ նրանք պարապում էին գրադարաններում...

Հիմա կարդում է հարցաթերթիկը՝ հարցերն էլ ծանոթ են, քսան տարվա ծանոթ հարցեր: Քննող դասախոսը նայում է ոսկե աստղին, դեպուտատի կրծքանշանին, կարդում թերթերից վաղուց ծանոթ անուն-ազգանունը, հիշում նրա ցուցանիշները, ուշադիր լսում հըստակ պատասխանը, ապա վերցնում հարցաթերթիկը և սեղմում ձեռքը.

— Դուք վաղուց հանձնել եք ձեր քննությունը... դուք ընդունված եք:

Հեռակա բաժնում բարձրագույնն ավարտելուց հետո նշանակվեց գլխավոր գյուղատընտես: Դա վեց տարի առաջ էր:

...Տնտեսության հողերը 450 հեկտար են, ընդարձակվելու տեղ չկա Արարատյան դաշտում, բոլոր սահմանները մեկընդմիշտ որոշված են: Իսկ իրենք տասնյակ տարիներ մեծացնում են համախառն բերքի ծավալը, այդպես էլ ուզում են շարունակել: Գուցե՞ կանգ առնեն վերջին մակարդակին: Թե չէ՝ աններհատ վերելք: Ինչպե՞ս: Ռոզային նշանակելով գլխավոր գյուղատնտես՝ աղավնատունցիները, ասես, գտան այդ հարցի պատասխանը: Համագյուղացիները հավատում են նրան: Մինչդեռ ինքը մտածում է. կարդարացնի՞, արդյոք, նրանց վստահությունը: Մեկ բրիգադում կարողացել է, առատ բերք է աճեցրել: Իսկ հի-

մա ամբողջ տնտեսությունն է իրենը, բոլոր կուլտուրաները:

Նորից պետք է դիմել գիտությանը:

Վերջին անգամ հերոսուհուն հանդիպել էի 1979-ի գարնանը: Երկրորդ տարին էր, որ Աղավնատան կոլտնտեսության գլխավոր գյուղատնտեսն էր: Ինձ ներկայացրեց մի փոքրիկ ու պարզ, կարելի է ասել, աշակերտական թվաբանություն, որը, սակայն, վճռական նշանակություն կարող է ունենալ տնտեսության ապագայի համար: Ունեին 120 հեկտար խաղողի այգի: 1978-ին 115 հեկտար հին այգիների ամենալավ հատվածներից ստացվել է 70 ցենտներ միջին բերք, իսկ 5 հեկտար նոր այգիներից, որտեղ արմատավորել էին Լենինի անվան ՍՍՀՄ գյուղատնտեսական գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, սելեկցիոներ Սուրեն Պողոսյանի «Տոկուն», «Ազատենի», «Շահումյան» և «Հրուշակի» սորտերը, միջին բերքը կազմել է 220 ցենտներ: Ինչ կստացվի, եթե բոլորը նոր սորտեր լինեն:

Ինչպես միշտ, նրա մտահղացումերն ու ծրագրերը թղթի վրա չմնացին: Հենց նույն տարում պրոֆեսոր Պետրոս Այվազյանի սորտերից քսան հազար արմատակալ է բերել, գյուղ է հրավիրել նաև գիտնականին, հանդիպում կազմակերպել խաղողագործների հետ:

Սելեկցիոներ, սոցիալիստական աշխատանքի հերոս Անահիտ Անանյանի սորտերի արմատավորումով բեկում էր սկսվել պոմիդորի արտադրության գործում: Իսկ ի՞նչ փոփոխություններ ե կատարվել խաղողագործության բնագավառում, ի՞նչ է տվել գիտությունն այդ ճյուղին: Խաղողի այգիները հասցվել են 160 հեկտարի, որից ութսունը Այվազյանի «Հաղթանակ» և «Կանգուն» սորտերն են: Մնացած հին այգիներն աստիճանաբար փոխարինում են նորերով, արդեն իրենք են նոր սորտերի արմատակալներ տալիս հարևան տնտեսություններին: Դեռևս լրիվ կարողության չհասած՝ երեք տարեկան այգին հեկտարից 260 ցենտներ բերք է պարգևել: Դիտում ենք երիտասարդ այգիները. վազերը հազիվ կես մետր բարձրություն ունեն:

— Ես մանկությունից խաղողի հետ եմ, բայց այսպիսի բան չեմ տեսել,— ասում է բրիգադավար Բեգլար Գրիգորյանը,— երկրորդ տարում արդեն լավ բերք ենք վերցրել: Նույնիսկ «հոռամատերը», որոնք մյուս այգիներում սովորաբար հեռացնում ենք, ինչպես տեսնում եք, այստեղ ծանրաբեռնված են ողկույզներով:

— Այվազյանի հետ հանդիպումը շեշտակի շրջադարձ է առաջացրել մեր խաղողագործության մեջ,— ասում է Ռոզա Ավագյանը,— դրանից առաջ էտի ժամանակ ավանդական սորտերի վազերի վրա չորսից վեց աչք էինք թողնում: Այվազյանն առաջարկեց իր սորտերի վրա թողնել տասներկուսից տասնհինգ աչք: Ահա թե ինչու, 1982-ը թեև անբարենպաստ տարի էր խաղողագործության համար,— այգիները կարկտահարվեցին, ու նոր սորտերն էլ դեռ երիտասարդ էին,— միջին բերքը հասավ 220 ցենտների, իսկ առանձին հեկտարներից՝ 300-ի:

Գլխավոր գյուղատնտեսը պատմում է իր պլանների ու մտահղացումների մասին: Լսում ես, ու թվում է՝ դրանք երազանքներ են: Բայց ահա կանգ է առնում մի նոր այգում, ուր արդեն իրականացվում են հենց այդ «երազանքները»: Դա Այվազյանի ցրտադիմացկուն սորտերով հիմնված չորս հեկտարանոց այգին է: Այն երեք տարեկան է: Այս տարվա ցրտաշունչ ձմեռը վազերն անցկացրել են բաց երկնքի տակ և հիմա առատորեն բեռնավորվել են:

Վերհիշում եմ նրանց չգրված օրենքը՝ մըշտական վերելք: Ինչպե՞ս... Վերստին պարզվում է, թե ինչու աղավնատունցիներն Ավագյանին նշանակեցին գլխավոր գյուղատնտես: Պոմիդորից իր ռեկորդը 700 ցենտներ էր: Իսկ ահա չորրորդ տարին է, ինչ ներդրել են «Նըվեր» սորտը, որից ստացվում է 600, առանձին հեկտարներից՝ 800 ցենտներ: Կոմունիստ բրիգադավար Հռիփսիկ Միսակյանը որոշել է այն հասցնել հազարի:

— Որոշել ենք ցանել «Մաշինա—3» սորտը,— ասում է Ավագյանը:

— Դա ի՞նչ առավելություններ ունի:

— Բարձր բերքատու է և քիչ աշխատատար: Ձեռք սածիլում, բնացան է, պտուղները հասունանում են միաժամանակ, մեքենան էլ միանգամից հավաքում է բերքը մի կողմ, թփերը՝ մի կողմ:

— Եվ սորտերի ընտրությամբ էլ լուծվո՞ւմ են բոլոր հարցերը:

— Ո՛չ,— ցույց է տալիս ձեռքերը,— բոլոր հարցերը լուծում են սրանք:

Դիտում է ցանքերը, կանգ առնում, հաշվումներ անում:

— Տասը սածիլից մեկը չի կպել, զարմանալու բան չկա, իսկ եթե դրանք չլրացվեն, ահա թե ինչ կստացվի, հեկտարի վրա քառասուն հազար սածիլ պետք է լինի: Ուրեմն այս դեպքում մեկ հեկտարում պակաս կլինի չորս հազար թուփ, բազմապատկենք, ասենք, երեք կիլոգրամով, հեկտարից 120 ցենտներ պակաս: Իսկ տնտեսության, ասենք, հիսուն հեկտարի՞ց... պետք է ապահովել և՛ դաշտերի, և՛ այգիների լիարժեքությունը, կանխել նոսրությունը ու նաև՝ բոլոր աշխատանքները կատարել ժամանակին և բարձր որակով:

Այդ հաշվարկները լավ գիտեն կոմունիստ բանջարաբույծներն ու այգեգործները՝ Լիդա Հարությունյանը, Աիդա Ալավերդյանը, Սարիբեկ Խաչատրյանը, Վանի Գևորգյանը, Ռաֆիկ Գրիգորյանը: Տասնյակ տարիներ շարունակ աշխատել են Ռոզայի հետ, յուրացրել նրա փորձը և այն ավանդում են նորեկներին:

Տասը տարուց ավելի է, ինչ տնտեսությունում կիրառվում է անհատական-բրիգադային եղանակը: ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումները կուսակցական ժողովներում քննարկելուց հետո այդ եղանակը սկսեցին ավելի կատարելագործել: Այդ առումով Աղավնատան կոլտնտեսությունը շրջանում համարվում է «փորձարարական-ցուցադրական»: Դա ձեռնտու է և՛ տնտեսությանը, և՛ կոլտնտեսականներին:

— Անցյալ տարի,— ասում է Ավագյանը,— Ալմաստ Սմբատյանի, Ելենա Մկրտչյանի, Հեղուշ Մուրադյանի, Թամարա Սիմոնյանի ընտանիքներն իրենց հատկացված սոխի տարածությունից, նախատեսված 200-ի փոխարեն, հեկտարից ապահովեցին 500—600 ցենտներ միջին բերք, դրան էլ համապատասխան ստացան հավելյալ վարձատրություն: Այս եղանակն աստիճանաբար արմատավորվում է այգեգործության և մյուս բնագավառներում:

— Ի՞նչ է արել Ռ. Ավագյանը որպես դեպուտատ,— հարցնում եմ կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Պարսամյանին:

— Ով ինչում դժվարանում է, դիմում է Ավագյանին, և բոլորին էլ օգնում է:

— Իսկ գյուղի, կոլտնտեսության համա՞ր:

— Գյուղում բացել է տվել երաժշտական դպրոց: Հեշտ գործ չէր, բոլոր հարցերը ժողկրթբաժնի և մինիստրության հետ լուծել է ինքը: Գյուղում կար 220 համարով ավտոմատ հեռախոսակայան, բայց չէր հերիքում, պահանջեց ու կառուցել տվեց 500 համարով, այս տարի է սկսել գործել: Գյուղատնտեսի օրվա աշխատանքից հետո միշտ գալիս է կառույց, իմանում շինարարների պահանջները: Երեք տարի շարունակ հետևել է գործերի ընթացքին, բազմաթիվ արգելքներ հաղթահարել կապի մինիստրության և «Հայկապշին» տրեստի ղեկավարների օգնությամբ, և ահա բոլոր բնակարաններում հեռախոսներ են տեղադրվել.

— Անսպառ եռանդի տեր է, բայց...,— խոսքը կիսատ է թողնում նախագահը, սկսում մեկ ուրիշ ծայրից,— ֆերմային համակցված կեր է պետք, չի ստացվում՝ դիմում ենք Ավագյանին, տրակտորի, կոմբայնի պահեստամասեր չեն ստացվում՝ նորից նրան, իսկ ղեկավարները միշտ ընդառաջում են: Նրան մերժել հնարավոր չէ, որովհետև հետևողական է:

— Իսկ «բայցը»— ինչի՞ համար էր,— հիշեցնում եմ ես,— գուցե թերանո՞ւմ է որևէ գործում:

— Չի թերանում,— նախագահը հարմար բառեր է որոնում,— շատ բարի է, շատ է մարդկային:

— Մի՞թե դա թերություն է:

— Ամեն ինչ իր չափն ունի, եթե պահանջվածից շատ է, ուրեմն, թերություն է: Մարդը աշխատանքում սխալ է գործել, որոշում են տույժի ենթարկել, իսկ ինքը ինչ-որ պատճառներ է պարզում, արդարացնող հանգամանքներ որոնում: Այդ տեսակետից մեր բընավորությունները մի քիչ չեն բռնում, բայց ի վերջո միմյանց հասկանում ենք:

Ամենամեծ բարիությունը, սակայն, ընդհանուր գործի համար ցավելն է, դրա համար պայքարելը: Կոլտնտեսության վարչության և կուսբյուրոյի համատեղ նիստում այս ամռանը լսվում էր Ռ. Ավագյանի զեկուցումը այգիների մշակության և ոռոգման ընթացքի մասին: Մեծ խախտում չէր եղել. պարզապես դաշտում ավելորդ հոսող ջուր էր նկատել, երկու հեկտարի վրա № 2 բրիգադը երկու օրով ուշացրել է միջվազային տարածությունների վարը: Գուցե այլ տնտեսություններում բավարարվեին բանավոր զգուշացումով, բայց այստեղ դրանք քննարկման նյութ են դարձել:

— Պետք է միշտ հիշել,— ասում է Ռ. Ավագյանը,— թե ինչպիսի միջոցների գնով է ջուրը հասցվում Արարատյան դաշտ, հաշված է ամեն մի լիտրը: Եթե բարեխղճորեն չի կատարվել գիշերային ոռոգումը, մի տեղ ջուրը շռայլվել և ավելորդ հոսել է, նշանակում է մի այլ տեղ անբավարար են ոռոգել, և տեղի կունենա պտղավիժում:

Գլխավոր գյուղատնտեսը պահանջում է, որ բոլորն արտահայտեն իրենց կարծիքը: Տվյալ տեղամասի ղեկավար կոմունիստը, իհարկե, արժանի տույժ ստանում է, բայց, ամենակարևորը, բրիգադավարների, օղակավարների զգոնության բարձրացումն է, կարգապահության ամրապնդումը:

**Մ. Ս. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

# ՌԵԱԿՑԻԱՅԻ ՆԵՑՈՒԿԸ

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ

«Իմպերիալիստական ճնտաղեմ ուժերը, ամենից առաջ ԱՄՆ-ի կառավարող վերնախավը, նյութելով համաշխարհային տիրապետության զառանցական պլաններ, իրենց ագրեսիվ քաղաքականությամբ մարդկությանը հրում են դեպի միջուկային աղետի եզրը»։

*(ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի «Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը» որոշումից)*

Իմպերիալիստական տերությունների ռազմաարդյունաբերական կոմպլեքսները արդի միլիտարիզմի միջուկն են, սպառազինությունների մրցավազքի գլխավոր ոգեշնչողները։ Դրանք ներթափանցել են քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր կարևոր ոլորտները, վճռական դիրքեր գրավել պառլամենտներում և գործարար շրջաններում, գիտական կենտրոններում ու պետական մարմիններում։

«Ռազմաարդյունաբերական կոմպլեքս» տերմինն առաջինն օգտագործեց ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Դ. Էյզենհաուերը 1961 թ. հունվարին արտասանած ճառում, երբ նորընտիր պրեզիդենտին էր հանձնում գործերը։ Նա ուղղակի խոստովանեց, որ II համաշխարհային պատերազմի ընթացքում և դրանից հետո Միացյալ Նահանգներն ստեղծեցին վիթխարի ռազմական արդյունաբերություն, որը միախառնվելով նույնպիսի վիթխարի ռազմական մեքենայի հետ, ստեղծեց ռազմաարդյունաբերական կոմպլեքս։ «Զինվորական վիթխարի ծառայության միացումը հսկայական ռազմական արդյունաբերության հետ,— նշեց նա,— նոր երևույթ է ամերիկյան պատմության մեջ։ Մենք պարտավոր ենք խորապես գիտակցել դրա աճեղ հետևանքները և միջոցներ ձեռնարկել այն բանի դեմ, որպեսզի ռազմաարդյունաբերական կոմպլեքսը, միտումնավոր կամ ոչ կանխամտածված, չկարողանա ձեռք բերել անթույլատրելի մասշտաբի ազդեցություն»։

Այժմ արդեն քաջ հայտնի է, որ ռազմաարդյունաբերական կոմպլեքսը (ՌԱԿ) ոչ միայն ԱՄՆ-ում, այլ նաև կապիտալիզմի առաջատար մյուս երկրներում, ձեռք է բերել այնպիսի հզորություն և անսահմանափակ իշխանություն, որոնցից կգուշանում էր Էյզենհաուերը։ Բուն Միացյալ Նահանգներում ՌԱԿ-ը վճռական դիրքեր է ձեռք բերել երկրի էկոնոմիկայում։ Ինչպես քաղցկեղի ուռուցք, այն մահացու կերպով ախտահարել է ԱՄՆ-ի պետական օրգանիզմը։ Այժմ արդեն գործնականում չկա քաղաքական, սոցիալական կամ տնտեսական կյանքի այնպիսի ոլորտ, որի վրա վճռական ազդեցություն չունենա ռազմաարդյունաբերական կոմպլեքսը։ ՌԱԿ-ի ազդեցությունը երկրի



քաղաքականության և ողջ կյանքի վրա վիթխարի է, քանզի նրա շահերը և նպատակներն ամբողջովին համընկնում և միահյուսվում են պետական ապարատի վերնախավի շահերին։ ՌԱԿ-ը կապիտալիզմի երկրների էկոնոմիկայի հետագա ռազմականացման հզոր լծակն է։ Այն ոչինչ չի խնայում «սառը պատերազմի» վերակենդանացման համար։

ՌԱԿ-ի ռեակցիոն էությունն առավել ցայտուն արտահայտվում է ԱՄՆ-ում՝ կապիտալիզմի այդ միջնաբերդում, որտեղ առաջին անգամ ձևավորվեց արկածախնդիր զինվորականության, խոշորագույն մոնոպոլիստների և ռեակցիոն պոլիտիկանների սերտ դաշինքը։ Այն անսահման հզոր է, ունակ իր ձեռքում պահելու ողջ իշխանությունը։ Ագրեսիվորեն տրամադրված քաղաքագետները և զինվորական վերնախավը իրենց զավթողական պլանների իրականացման համար միշտ էլ զգացել են դրամական միջոցների և զենքի կարիքը։ Զենք արտադրող ձեռնարկատերերը, որոնք միշտ էլ ձգտել են գերշահույթների, կարիք էին զգում այնպիսի քաղաքականության, որն ամբողջովին համապատասխաներ իրենց շահերին։ Նպատակների ու խնդիրների ընդհանրությունը, վերջ ի վերջո, հասցրեց այդ ուժերի քաղաքական սերտ միաձուլմանը։ Դա ակնհայտ դրսևորվեց II համաշխարհային պատերազմից հետո։ Զենքի խոշորագույն մոնոպոլիստները, ավելի շուտ նրանց դրածոները, սկսեցին ազդեցիկ դիրքեր գրավել կառավարական ապարատում և պետական հաստատություններում։ Իսկ պաշտոնաթող բարձրաստիճան զինվորականները և նախկին քաղաքացիական ծառայողները տաքուկ «ապաստան» են գտնում կորպորացիաների ղեկավար մարմիններում։

Իմպերիալիստական տերությունների ռազմական ծախսերի մակարդակը խաղաղ ժամանակների համար չտեսնված չափերի է հասել։ Ռազմական ծախսերի էսկալացիան հատկապես ուժեղացավ 80-ական թվականների սկզբներին, երբ Վաշինգտոնի գլխավորած՝ ՆԱՏՕ-ի ագրեսիվ շրջանները սկսեցին իրականացնել Արևելքի ու Արևմուտքի միջև ստեղծված հավասարակշռությունը խախտելու կուրս, փորձեր ձեռնարկելով իրենց օգտին փոխելու ուժերի հարաբերակցությունը։ Սպառազինությունների մրցավազքի հրահրողը ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսն է, որն իրականացնում է ստրատեգիական միջուկային սպառազինությունների հսկայական կուտակում։ Նախատեսվում է վեց տարում՝ 1983—1988 թթ. ռազմական նպատակներին հատկացնել 2,3 տրիլիոն դոլար։ Այսպես, եթե 1983 թ. ԱՄՆ-ի ռազմական բյուջեն հասնում է 250 մլրդ դոլարի, ապա 1984 թ. այն կկազմի 280, 1985-ին՝ 323, 1986-ին՝ 357, 1987-ին՝ 388, իսկ 1988 թվականին՝ 425 մլրդ դոլար։

Վաշինգտոնի նավարկուղով են ընթանում նաև ՆԱՏՕ-ի մյուս մասնակիցները։ Խմբավորման եվրոպական մասնակից երկրների թվում ռազմական ծախսերի առավել բարձր մակարդակ ունի ԳՖՀ-ն. այդ ծախսերը 1970 թ. 20 մլրդ մարկից 1982 թ. հասան 44 միլիարդի։ Եթե դրան ավելացնենք բյուջեի այլ հոդվածների տակ քողարկվող միլիտարիստական հատկացումները, ապա Բոննի ռազմական ծախսերի ընդհանուր գումարը կանցնի 60 մլրդ մարկից։

Վաշինգտոնի միլիտարիստական կուրսն ամբողջովին պաշտպանում է նաև Մ. Թետչերի պահպանողական կառավարությունը։ Լոնդոնի ռազմական հատկացումներն անընդհատ աճում են։ Եթե 1979—80 թթ. դրանք կազմում էին 7 մլրդ ֆունտ ստեռլինգ, ապա 1982—1983 թթ. դրանք գերազանցեցին 14 միլիարդից։ Միլիտարիզմի վերականգնման ուղին ընտրեցին նաև Ճապոնիայի կառավարող շրջանները։ Վաշինգտոնի ազդեցությամբ, որը ձգտում է «արևածագի երկիրը» Հեռավոր Արևելքում և Հարավ-Արևելյան Ասիայում իր զավթողական նպատակների գլխավոր հենարանը դարձնել, վերջին տարիներին ռազմական ծախսերի կորագիծը շեշտակի վեր սլացավ։ 1983 թվականի համար նախատեսված է 2,8 տրիլիոն իենա կազմող ռազմական բյուջե։

Սպառազինությունների մրցավազքը ամենաեկամտաբեր բիզնես է դարձել Արևմուտքի ռազմաարդյունաբերական կոմպլեքսների համար։ Արդի զենքի կնի հսկայական աճը ամբողջովին փոխեց զինամթերք արտադրող ընկերու-

թյունների գործունեության մասշտաբները: Զենքի արտադրությունն ԱՄՆ-ում ամբողջովին իր ձեռքում է կենտրոնացրել ռազմաարդյունաբերական կոմպլեքսը: Այսպես, 1965—1982 թթ. Պենտագոնի մի քանի տասնյակ հազար կապալառուներից հարյուր խոշորագույններին հասել է ռազմական պատվերների ամբողջ արժեքի 85 տոկոսը, այդ թվում 25 հզորագույն ֆիրմաներին՝ մոտ 70 տոկոսը: Տասնյակ միլիարդների արժողությամբ ամենախոշոր պատվերները հասնում է 8 ֆիրմաներին, որոնց «երկաթյա ությակ» են անվանում: Վաշինգտոնյան ներկայիս վարչակազմի ռազմատենչ հեգեմոնիզմի դոկտրինան կոնկրետ մարմնավորվում է ռազմական պսիխոզի, «սառը պատերազմի» վերակենդանացման մեջ: Համաշխարհային ժանդարմի դերի ստանձնումը Սպիտակ տանը մղել է գրեթե ամբողջ աշխարհը դիտելու որպես սեփական շահերի ոլորտ: ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսը երկրագնդի վրա տեղի ունեցող ամեն մի փոփոխություն ընկալում է և հրամցնում որպես «սպառնալիք ԱՄՆ-ի ազգային շահերին», «կոմունիստների մեքենայություններ», «Մոսկվայի ձեռքեր» կամ «սովետական սպառնալիք» և այլն: Միանգամայն կեղծ և մտացածին պատրվակները բազմաթիվ անգամ օգտագործվել են որպես շանտաժի և սպառնալիքների, ուրիշ երկրների գործերին միջամտելու առիթ, երկրներ, որոնք ԱՄՆ-ի ափերից տասնյակ հազարավոր մղոն հեռու են:

ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսի թելադրած ագրեսիվ քաղաքականությունը, որը կիրառվում է նաև Անգլիայի, Արևմտյան Գերմանիայի և այլ կապիտալիստական երկրների կառավարող շրջանների աջակցությամբ, ամերիկյան իմպերիալիզմի ողջ նախորդ ուղու անմիջական շարունակությունն է, իմպերիալիզմ, որի պատմությունը Լենինը բնութագրել է որպես արյունարբու իմպերիալիզմի արյունալի պատմություն:

Բուրժուական պրոպագանդան ճգնում է ապացուցել, որ արդի կապիտալիզմին տված մարքսիստական գնահատականը, իբր թե, հնացել է, որ այսօրվա կապիտալիզմը բոլորովին նոր է, «դեմոկրատական», «ժողովրդական», ազատ և այլն, որ այն վերածվել է «ընդհանուր բարօրության» հասարակարգի: Սակայն փաստերը վկայում են, որ իմպերիալիզմի գիշատչական էությունը II համաշխարհային պատերազմից հետո առավել ակնհայտորեն դրսևորվեց: Միջազգային ռեակցիայի կրած պարտությունը, դեմոկրատիայի և պրոգրեսիվ ուժերի համաշխարհային-պատմական հաղթանակը իմպերիալիստների շրջանում առաջացնում են գազանային ատելություն սոցիալիզմի նկատմամբ: Համաշխարհային տիրապետության հասնելու իրենց խելացնոր քաղաքականությունն իրագործելու նպատակով Վաշինգտոնի, Լոնդոնի և արևմտյան մյուս կառավարող շրջանները օգտագործում են բոլոր միջոցներն ու հնարավորությունները, այդ թվում՝ զինված ուժերը, հետախուզությունը, դեզինֆորմացիան, զրպարտությունը և բուրժուազիայի զինանոցում եղած քաղաքական պայքարի մյուս ձևերն ու մեթոդները:

Հարավ-Արևելյան Ասիայում ԱՄՆ-ի մղած կեղտոտ պատերազմը, իսրայելական զավթիչներին պաշտպանելը, կենտրոնական հետախուզական վարչության քայքայիչ գործունեությունը Աֆրիկայի երկրներում, Իրանում, Աֆղանստանում, Արաբական Արևելքում, Կուբայի, Նիկարագուայի, Սալվադորի և Լատինական Ամերիկայի ուրիշ ժողովուրդների դեմ, ամբողջ աշխարհով մեկ սփռված մի քանի հազար ռազմական բազաները՝ այս և բազմաթիվ այլ փաստեր հաստատում են ամերիկյան իմպերիալիզմին տված լենինյան գնահատականը:

Ներկայումս վիթխարի մասշտաբների է հասել մոնոպոլիստների հետ զինվորական վերնախավի միաձուլման պրոցեսը: Հարյուրավոր գեներալներ ու ծովակալներ պրեզիդենտական ու դիրեկտորական տեղեր են զբաղեցնում զանազան ֆիրմաներում: Մյուս կողմից, կապիտալի ներկայացուցիչները վերջին տարիներս ավելի ու ավելի հաճախ են առաջ քաշվում զինվորական գերատեսչությունների ղեկավար պոստերում: Ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ոգեշնչողները, Պենտագոնի հետ միասին ծավալելով սպառազինությունների չտեսնված մրցավազք, աշխատավորների ուսերին դրել են հարկերի լուծը:



Սպառազինությունների մրցավազքը ամենաեկամտաբեր բիզնեսն է դարձել ԱՄՆ-ում: Ընթացիկ ֆինանսական տարում, օրինակ, նախատեսված 250 մլրդ դոլար ուղղակի ռազմական ծախսերից ավելի քան 130 միլիարդը հատկացվում է ռազմական պատվերներին: «Յուրաքանչյուր դոլարի վրա արյան հետքեր կան» լենինյան հայտնի գնահատականը վերաբերում է նաև այսօրվա իմպերիալիստական մագնատներին:

Չնայած իմպերիալիզմի բնույթը մնացել է առաջվանը, սակայն նրա տակտիկան սոցիալիզմի, ժողովուրդների առաջընթացի, խաղաղության դեմ մղվող պայքարում դարձել է ավելի ճկուն ու խարդախ, հատկապես գաղափարախոսական ճակատում: Ժամանակակից պայմաններում սոցիալիստական երկրների նկատմամբ գաղափարախոսական պայքարի ասպարեզում իմպերիալիզմի գլխավոր տակտիկական գծի նպատակն է դրսից ներգործելու միջոցով փորձել հասնելու ներքին քայքայման: Իմպերիալիստները ուժ և միջոցներ չեն խնայում, որպեսզի իրենց դրոշի ներքո համախմբեն միջազգային ռեակցիայի բոլոր գաղափարախոսներին: Դեռևս 1953 թ. ստեղծվեց ամերիկյան «Յուսիա» ինֆորմացիոն գործակալությունը, որը ներկայումս ունի 280 բաժանմունք՝ ավելի քան 130 երկրներում: Դրան ֆինանսավորում և ուղղություն է տալիս Վաշինգտոնը: Գործակալությունում ղեկավար պոստեր են զբաղեցնում ռազմաարդյունաբերական կոմպլեքսին հլու-հնազանդ՝ պետդեպարտամենտի, Պենտագոնի և Կենտրոնական հետախուզական վարչության հետ կապված մարդիկ: Նրա տնօրինության տակ են մասնավորապես «Ամերիկայի ձայն», «Ազատություն», «Ազատ Եվրոպա» և այլ ռադիոկայաններ, որոնք հաղորդումներ են վարում ավելի քան 50 լեզուներով: Գործակալությունն արտասահմանում հրատարակում է մի քանի տասնյակ թերթեր ու ամսագրեր:

ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Ռիչարդ Նիքսոնը իր առաջին ելույթներից մեկում խոստովանեց, որ ԱՄՆ-ը «հարուստ է ապրանքներով, սակայն աղքատ՝ հոգով»: Եվ, իսկապես, Վաշինգտոնը տարված է տխուր մտատանջություններով: Հակակոմունիզմի խոշոր մասնագետներից մեկը՝ պրոֆեսոր Ջ. Մանսեն վերջերս գրել է. «Թեև Ամերիկան ունի պրոպագանդիստների ամենամեծ բանակը, որ երբևէ իմացել է աշխարհը, այդուհանդերձ բոլորը գանգատվում են, թե այդ բանակն անհրաժեշտ զինամթերքի զգալի պակաս է զգում: Այո՛, դա, իսկապես, այդպես է կոմունիզմի համեմատությամբ»:

Վերջերս իմպերիալիզմի ջանքերով նորից ուժեղացավ «սառը պատերազմի» քամին: Վաշինգտոնի կառավարող շրջանները ամեն կերպ փորձում են միջամտել Աֆղանստանի, Լեհաստանի, Սալվադորի և այլ երկրների իրադարձություններին: Նրանք սուտ լուրեր են կուտակում, նպատակ ունենալով քողարկելու իրենց պատասխանատվությունը միջազգային իրադրության նկատելի սրման համար: Պենտագոնն այսօր ներթափանցել է երկրագնդի բոլոր մայրցամաքները: 1933 թվականին ամերիկյան զորքերը գտնվում էին երեք օտարերկրյա պետությունների տերիտորիայում: 1949 թ., երբ ստեղծվեց Հյուսիս-Ատլանտյան խմբավորումը, նրանք արդեն տեղադրվեցին 39, իսկ ներկայումս՝ ավելի քան 110 երկրներում: Այժմ արտասահմանում է գտնվում զինվորական զգեստ հագած յուրաքանչյուր չորրորդ ամերիկացին:

Ընդհանուր խաղաղությանը սպառնացող, միջազգային լարվածությանը նպաստող, զինաթափման պրոբլեմի լուծմանը և սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ապահովմանը խոչընդոտող գլխավոր գործոններից մեկը, որը ծառայում է ռազմաարդյունաբերական կոմպլեքսին, Ամերիկայի Միացյալ Նահանգների բազմաթիվ այն ռազմական բազաներն են, որ ստեղծված են երկրագնդի տարբեր կետերում: Գտնվելով ԱՄՆ-ի սահմաններից հազարավոր կիլոմետրեր հեռու, այդ բազաները ոչ մի ընդհանուր բան չունեն պաշտպանական նպատակների հետ և վառ արտահայտված ագրեսիվ, հարձակողական բնույթ ունեն: Դրանք ուղղված են սոցիալիստական պետությունների, Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների, խաղաղասեր ուժերի դեմ: Այդ բազաները մշտական սպառնալիք են ստեղծում

նաև այն երկրների ու ժողովուրդների անվտանգության համար, որոնց տերիտորիաներում տեղաբաշխված են դրանք։

ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսի դրածո՝ պաշտպանության մինիստր Կ. Ուայնբերգերը վերջերս պարծենում էր՝ հաղորդելով թղթակիցներին, որ ամերիկյան զինված ուժերն ընդհանուր առմամբ ունեն մոտ վեց հազար ռազմական բազա և հենակետ, որոնցից ավելի քան 2.500-ը գտնվում է Միացյալ Նահանգների մայրցամաքային մասի սահմաններից դուրս, 100 երկրներում ու տերիտորիաներում։ Ամերիկյան մասնագետների կարծիքով, օտարերկրյա տերիտորիաներում գտնվող ԱՄՆ-ի 160 խոշոր բազաները նրանց զինված ուժերի հիմնական հենակետերն են։ Այդ բազաներում և անմիջականորեն դրանց մոտակայքում տեղաբաշխված է ավելի քան կես մլն ամերիկյան զինվոր ու սպա։

ԱՄՆ-ի բանակի, նավատորմի և ավիացիայի հենակետերն առաջին հերթին շրջապատում են սոցիալիստական երկրները, ինչպես նաև աշխարհի այն շրջանները, որտեղ պայքար է մղվում հանուն ազատության և ազգային անկախության։ Պենտագոնը Կարիբյան ծովում գտնվող բազաները լայնորեն օգտագործում է Կուբայի, Նիկարագուայի, Սալվադորի, Գրենադայի, Պանամայի և լատինաամերիկյան այլ երկրների դեմ տնտեսական ու քաղաքական ուժեղ ճնշում գործադրելու և կեղտոտ պատերազմ վարելու համար։ Ամերիկյան իմպերիալիստներն իրենց հենակետերի սիստեմում հիմնական շեշտը դնում են ռազմաօդային բազաների վրա, իսկ վերջերս սկսել են մեծ ուշադրություն դարձնել հրթիռամիջուկային միջոցներին։

Միացյալ Նահանգների ցամաքային և ռազմաօդային ուժերի, պոլիգոնների, զենքի պահեստների և ռազմական այլ կառուցվածքների տեղաբաշխման կարևորագույն կենտրոն է Արևմտյան Եվրոպան։ Այստեղ մշտապես տեղադրված է ԱՄՆ-ի սահմաններից դուրս գտնվող ամերիկյան բանակի զինված ուժերի առավել մեծ մասը։ Արևմտյան Եվրոպայում և Միջերկրական ծովի ավազանում ամերիկյան զորքերի ընդհանուր թիվն անցնում է 320 հազարից։ Նրանցից ավելի քան 20 հազարը գտնվում է Անգլիայում, 250 հազարը՝ Արևմտյան Գերմանիայում, մոտ 15 հազարը՝ Արևմտյան Բեռլինում, 9 հազարը՝ Իսպանիայում, մոտ 5 հազարը՝ Թուրքիայում և այլն։ Միջերկրական ծովի արևելյան մասում ամերիկյան ռազմական բազաները տեղաբաշխված են Հունաստանի և Թուրքիայի տերիտորիաներում։ ԱՄՆ-ը Թուրքիայի տերիտորիայում ունի ռազմաօդային բազմաթիվ միավորումներ, որոնցից խոշորներն են Դիարբեքիրի, Իզմիրի և Ադանայի մոտ գտնվող Ինջիրլիկի ավիաբազաները։

Պենտագոնը մոտ 40 հազար զորք է պահում Խաղաղ օվկիանոսի կղզիներում և 25 հազար զորք՝ Կարիբյան ծովի ավազանում։ Ճապոնիայում տեղաբաշխված են մոտ 50 հազար ամերիկյան զինվոր ու սպա։ Այստեղ ստեղծված են 20 խոշոր ռազմաօդային բազա և ավելի քան 100 օդանավակայան։ Օկինավա կղզում, որն ամերիկյան մամուլի գնահատմամբ «ԱՄՆ-ի սահմաններից դուրս կառուցված ամենահզոր ամրոցն է», գտնվում է ամերիկյան 20 հազար զինվորական ծառայող։ Այստեղ կան մոտ 30 օդանավակայան։ Պենտագոնը Հարավային Կորեայում ստեղծել է 11 խոշոր ծովային ու օդային բազա։ Այստեղ ներկայումս տեղակայված է 40 հազար ամերիկյան զինվոր ու սպա։ Մի քանի տասնյակ օդանավակայան է կառուցվել Տայվան կղզում։ Պենտագոնը 7-րդ նավատորմի գործողության ոլորտն ընդգրկեց նաև Հնդկական օվկիանոսը։ Այստեղ գտնվող Դիեգո-Գարսիա կղզում վերջերս կառուցվեց խոշոր բազա։

ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսը ամեն կերպ ձգտում է իր տիրապետությունը հաստատել ամբողջ աշխարհում։ Ինչպես վերջերս հաշվարկել է «Յունայտեդ Ստեյտս Նյուս էնդ Ուորլդ ռիպորտ» հանդեսը, Պենտագոնը հանուն այդ նպատակի իրականացման ծախսել է ավելի քան երեք տրիլիոն դոլար, բացի այդ, իր ենթակա երկրներին ռազմական «օգնություն» ցույց տալու վրա՝ մոտ 700 մլրդ դոլար։ ԱՄՆ-ը փոխադարձ օգնության պայմանագրեր է կնքել 46 երկրների հետ։ Վաշինգտոնը ուրիշի տերիտորիաներում գտ-



նվող ամերիկյան ռազմական բազաներն օգտագործում է նաև կապիտալիստական մյուս երկրները մշտական ստրատեգիական աքցանի մեջ պահելու համար։ Միացյալ Նահանգները Արևմտյան Գերմանիայի իր ռազմական բազաների միջոցով անմիջականորեն ճնշում են գործադրում Ֆրանսիայի, Ֆիլիպիններում գտնվող բազաների օգնությամբ՝ Ճապոնիայի վրա։ Ռազմաարդյունաբերական կոմպլեքսները, հենվելով իմպերիալիստական պետությունների ռազմական ուժերի վրա, ամեն կերպ ձգտում էին արյան մեջ խեղդել Անգոլայի, Մոզամբիկի, Զիմբաբվեի, Նամիբիայի և ազգային անկախության համար պայքարող աֆրիկյան ուրիշ երկրների ժողովուրդներին։

Ռազմական հենակետեր ստեղծելով ուրիշի տերիտորիաներում՝ Պենտագոնը կոպիտ կերպով խախտում է այդ երկրների օրենքները։ Հաճախ այդտեղ տեղաբաշխված զինծառայողները կողոպտում են տեղական բնակիչներին, կատարում սպանություն և բռնություն։ Միայն 1981 թվականին ամերիկյան զինվորականները «ծառայությունից ազատ ժամանակ» կատարել են ավելի քան 55 հազար ոճրագործություն։ Բազմաթիվ երկրների տերիտորիաներում ամերիկյան զորքերի համար սահմանված է առանձնահատուկ, ըստ էության արտատերիտորիալ ռեժիմ։ Թե՛ խաղաղությանն սպառնացող վտանգը, թե՛ ամերիկյան զինվորականների խժդժությունները բնակչության լայն զանգվածներին մղում են ակտիվ պայքարի՝ օտարերկրյա ռազմական բազաների անհապաղ վերացման և օտարերկրյա զորքերը երկրից դուրս բերելու համար։ Այդպիսի շարժում լայնորեն ծավալվել է Անգլիայում, ԳՖՀ-ում, Իտալիայում, Ճապոնիայում և բազմաթիվ այլ երկրներում։ Ամերիկյան ռազմական բազաներն ամենուրեք գնահատվում են որպես նեոգաղութատիրության զենք։

ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսի վտանգավոր քայքայիչ գործունեությունը Սովետական Միության նկատմամբ մեկ անգամ ևս անհերքելիորեն բացահայտվեց վերջերս։ Կենտրոնական հետախուզական վարչության հրամանով հարավկորեական ինքնաթիռը լույս սեպտեմբերի 1-ի գիշերը ներխուժեց ՍՍՀՄ-ի օդային տարածությունը և երկու ժամից ավելի թռչում էր Կամչատկա թերակղզու, Օխոտի ծովի և Սախալին կղզու վրայով։ Դա այն շրջանն է, որտեղ տեղաբաշխված է ՍՍՀՄ ստրատեգիական միջուկային ուժերի կարևորագույն բազան։ Միաժամանակ սովետական սահմանի մոտակայքում, այդ նույն բարձրության վրա գտնվելիս է եղել ԱՄՆ-ի ռազմաօդային ուժերի «ՌՍ—135» տիպի հետախույզ ինքնաթիռը։

Քանի որ խախտող ինքնաթիռը չենթարկվեց սովետական օդանավակայան հետևելու պահանջին և փորձեց հեռանալ, հակաօդային պաշտպանության կալանիչ կործանիչը կատարեց թռիչքը կասեցնելու հրամանատարական կետի հրամանը։ Նման գործողությունները լիովին համապատասխանում են ՍՍՀՄ-ի պետական սահմանի մասին օրենքին, որը հայտնի է ամբողջ աշխարհին։

Այդ վտանգավոր պրովոկացիան հարկավոր էր ամերիկյան վարչակազմին միջազգային լարվածությունը սրելու, սպառազինությունների մրցավազքը ուժեղացնելու, զանգվածային ոչնչացման զենքի նորանոր համակարգեր ստեղծելու, սպառազինությունների սահմանափակման միջոցառումները վիժեցնելու նպատակով։

ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերողները ամեն կերպ ձգտում են ներթափանցել զարգացող երկրների էկոնոմիկան՝ կորզելով հսկայական գերշահույթներ։ Կարիբյան ծովի ավազանում և նրա շրջակայքում (հիմնականում Վենեսուելայում և Մեքսիկայում), Հյուսիսային ու Հասարակածային Աֆրիկայում (Ալժիր, Լիբիա և Նիգերիա), Մերձավոր և Միջին Արևելքում (Իրաք, Իրան, Քուվեյթ, Սաուդյան Արաբիա և այլ երկրներ), ինչպես նաև Հարավ-Արևելյան Ասիայում (Ինդոնեզիա, Մալայզիա և Բրունեյ) հետախուզված է մոտ 70 մլրդ տոննա նավթ։ Դա ոչ սոցիալիստական աշխարհում հայտնաբերված նավթային պաշարների համարյա 90 տոկոսն է կազմում։

Սպիտակ տունը որոշում ընդունեց ուրիշ երկրներից, նախ և առաջ՝ Մերձավոր ու Միջին Արևելքից, Վենեսուելայից, Մեքսիկայից, Նիգերիայից և Ինդո-

նեզիայից նավթի ներմուծումն ավելացնելու մասին։ Ըստ այդ որոշման, Միացյալ Նահանգները 1980 թ. ներմուծեցին 420 մլն տոննա նավթ։ Սև ոսկու ներմուծման այդպիսի տեմպերը Վաշինգտոնը շարունակում է մինչև օրս։ Նա ձըգտում է ոչ միայն նավթով ապահովել իր երկիրը մոտակա ժամանակաշրջանում, այլև հուսալի և հեռանկարային պաշարներ ստեղծել ապագայի համար։ ԱՄՆ-ը մասնավորապես իր առջև խնդիր է դրել մինչև 1985 թ. 140 մլն տոննա նավթ լցնել Տեխասի և Լուիզիանայի նահանգների ստորգետնյա բնական տարողությունները։

Նշված երկրներից ավելի շատ նավթ ներմուծելու իմպերիալիստական մոնոպոլիաների ցանկությունը բացատրվում է նրանով, որ այստեղ նավթի հանույթն ու փոխադրումը շարունակում են մնալ էժան ու շահութաբեր։ Եթե ԱՄՆ-ում նավթի արդյունահանման մեջ ներդրված կապիտալը տարեկան տալիս է 10—15 տոկոս շահույթ, իսկ Վենեսուելայում՝ 70—75, Նիգերիայում՝ 100, Ինդոնեզիայում՝ 125 տոկոս, ապա Պարսից ծոցի շրջանում այդ շահույթը հասնում է 300—400 տոկոսի։ Պաշտոնական տվյալներով, ԱՄՆ-ի խոշորագույն նավթային ընկերություններն իրենց շահույթները 1978 թ. 9 մլրդ դոլարից 1982-ին հասցրին 45 մլրդ դոլարի։ Այդ գերշահույթի հիմնական մասը ստացվել է Պարսից ծոցի և Արաբական թերակղզու շրջանի նավթի հաշվին։

ԱՄՆ-ի պետական պարտքն արդեն անցել է մեկ տրիլիոն դոլարից։ Այդ պարտքն առաջանում է երեք տեսակի ծախսերից՝ ֆեդերալ կառավարության պարտքից, առանձին կառավարական գերատեսչությունների, ինչպես նաև նահանգների և իշխանության տեղական մարմինների պարտքերից։

ԱՄՆ-ի պետական պարտքը 1914 թ կազմում էր մեկ մլրդ 200 մլն դոլար, իսկ 1940 թ.՝ 45 միլիարդ դոլար։ 1982 թ. այն հասավ մեկ տրիլիոն 57,7 մլրդ դոլարի։ Իր ծախսերը ծածկելու համար ԱՄՆ-ի ֆեդերալ կառավարությունը ստիպված է փոխառություններ թողարկել, քանի որ ծախսերը գերազանցում են եկամուտներին։ 1981 թ. ֆինանսական տարում, որն ավարտվեց 1981 թ. սեպտեմբերի 30-ին, դեֆիցիտը 58 մլրդ դոլար կազմեց։ Համեմատության համար նշենք, որ 1970 թ. ԱՄՆ-ի պետական բյուջեի դեֆիցիտը հավասար էր 12,9 մլրդ դոլարի։ ԱՄՆ-ի ֆինանսական «դժվարությունների» գլխավոր պատճառը Ռեյգանի վարչակազմի ձեռնարկած ռազմական ծախսերն են։ Հասկանալի է, որ ԱՄՆ-ի պետական պարտքերը մարում է հարկատուն։ Պետական պարտքի աճը համապատասխանաբար մեծացնում է հարկերը, որը ֆեդերալ կառավարության եկամտի գլխավոր աղբյուրն է։ 1940 թ. ԱՄՆ-ի պետական պարտքի ընդհանուր գումարից բնակչության մեկ շնչին ընկնում էր 325 դոլար, 1982 թ. այն հասավ 4.631 դոլարի։

Բոլորովին այլ կերպ են իրենց զգում խոշոր արդյունաբերողներն ու բանկիրները։ Նրանց համար միանգամայն ձեռնտու է Ռեյգանի քաղաքականությունը։ Բացի փոխառություններից ստացվող հսկայական տոկոսներից, նրանց ձեռքն են ընկնում սպառազինությունների հետագա մրցավազքի հետ կապված շահավետ կառավարական պատվերներ։ Ֆեդերալ բյուջեի խրոնիկական դեֆիցիտը ինքնաբերաբար անհրաժեշտ է դարձնում պետական պարտքի գումարի ամենամյա աճը։ Ճիշտ է, ԱՄՆ-ում գոյություն ունի հատուկ օրենք, ըստ որի պետական պարտքը չպետք է անցնի սահմանված չափից, սակայն, իրականում, այդ «առաստաղը» պարբերաբար բարձրացվում է, քանի որ այդպիսի հարցադրումով կոնգրեսին է դիմում ֆեդերալ վարչակազմը, որն ստիպված է հաշվի առնել համապատասխան ֆինանսական տարվա բյուջետային դեֆիցիտը։

Անվիճելի է, որ անընդհատ ուռճացող ռազմական ծախսերի թեկուզ մասնակի կրճատումը հնարավորություն կընձեռեր զգալիորեն բարելավելու ԱՄՆ-ի պետական ֆինանսների վիճակը։ Սակայն ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ազդեսիվ էքսպանսիոնիստական ձգտումները անհնարին են դարձնում երկրի ֆինանսական սիստեմի կարգավորումը։ Ռազմական ծախսերի աճի տեմպերը գերազանցում են բյուջետային մյուս կատեգորիաների ծախսերը։



Դա ակնհայտ դարձավ պրեզիդենտ Ռեյգանի տնտեսական ծրագրից, որտեղ կրճատված են սոցիալական նպատակների համար նախատեսված ծախսերը։

ԱՄՆ-ի էկոնոմիկայում ճգնաժամային իրադրությունների հետագա սրումը, հաճախակի դարձած տնտեսական անկումները ակնհայտորեն վկայում են, որ ֆեդերալ պարտքի՝ որպես պետական-մոնոպոլիստական կարգավորման գործիք կիրառելը երկրի տնտեսության կայունացման համար անհնարին է դառնում։ Ընդհակառակը, պետական պարտքի աճի չտեսնված տեմպերը ԱՄՆ-ի վալյուտաֆինանսական ճգնաժամի ավելի խորացման պատճառ են դառնում։ Պետական վիթխարի փոխառությունների թողարկումը նպաստում է ինֆլյացիայի ուժեղացմանը, գների բարձրացմանը և լրացուցիչ ծանր բեռ է դառնում ֆեդերալ կառավարության բյուջեի վրա, արգելակում երկրի տնտեսական աճը, իջեցնում շարքային ամերիկացիների կենսամակարդակը։

«Իմպերիալիզմը,— նշեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— խճճվել է ներքին ու միջպետական հակամարտությունների, ցնցումների, բախումների մեջ։ Դա խորապես, բայց տարբեր կերպ է անդրադառնում կապիտալիստական երկրների քաղաքականության վրա... Խիստ մեծացել է ԱՄՆ-ի իմպերիալիզմի գլխավորությամբ ծայրահեղ հետադիմական ուժերի ագրեսիվությունը։ Փորձեր են արվում, ինչ գնով էլ լինի, ետ շրջելու զարգացումը։ Իհարկե, նման քաղաքականությունը իմպերիալիստներին հաջողություն չի բերում, բայց իր արկածախնդրությամբ այն չափազանց վտանգավոր է մարդկության համար։ Ուստի այդ քաղաքականությունը հանդիպում է ժողովուրդների հզոր հակազդեցությանը, որը, անկասկած, կմեծանա»։

Աշխարհում խաղաղության ապահովումը թե՛ այսօր և թե տեսանելի ապագայում կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքականության առանցքային պրոբլեմն է։

# ԱՐԺԵՔԱՎՈՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ*

ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ գիտությունների դոկտոր Լևոն Կիրակոսյանի ռուսերեն այս մենագրությունը նվիրված է սոցիալիստական ռեալիզմի ամենաբարդ ու հրատապ հարցերից մեկին: Հեղինակն իրավամբ գրում է, որ վերջին երկու տասնամյակներում գրականության ու արվեստի առավել մեծ ուշադրությունը մարդուն իր ողջ անձնական փոխհարաբերություններով ու բարդությամբ, հոգևոր համակողմանի հարստությամբ պատկերելն է: Այն սոցիալիստական արվեստի գեղագիտական նոր հասումների անհերքելի վկայությունն է: Մեր ժամանակակից արվեստի լավագույն ստեղծագործություններում կերտված են սովետական մարդու բնավորության լավագույն հատկանիշները, երկրի հոգևոր և հասարակական կյանքի առավել կարևոր կողմերը մարմնավորող գեղարվեստական կերպարներ: Գրքում արտահայտված այս միտքը համոզիչ բացահայտվում է 60—70-ական թվականների հայ գրականության արձակի նյութերի հիման վրա և, որ շատ կարևոր է, համամիութենական բազմազգ գրականության կոնտեքստում: Այստեղ արծարծվում են անձի՝ իբրև սոցիալիստական ռեալիզմի գեղարվեստագեղագիտական կոնցեպցիայի սակավ ուսումնասիրված պրոբլեմները, ցույց է տրվում դրա դերը գրական ստեղծագործության կերպարային սիստեմի ու կառուցվածքի ձևավորման ոլորտում:

Չնայած այս պրոբլեմն ուսումնասիրվել է այլ գրականագետների աշխատություններում (Ս. Աղաբաբյան, Ս. Սարինյան, Հ. Թամրազյան, Ս. Արզումանյան և ուրիշներ), սակայն հայ գրականագիտության մեջ իր ողջ ծավալով առաջին անգամ այն արծարծվում է Լ. Կիրակոսյանի տվյալ մենագրությունում:

Լ. Կիրակոսյանի դիրքորոշման մեթոդաբանական ելակետը անձի կոնցեպցիայի քննությունն է իբրև գեղարվեստագեղագիտական կատեգորիա: Ընդ որում հեղինակը հենվում է փիլիսոփայական կատեգորիաների ճանաչողական կարևոր դերի վերաբերյալ լենինյան հետևյալ դրույթի վրա. «...կատեգորիաները առանձնացման, այսինքն՝ աշխարհի ճանաչողության աստիճաններն են, ցանցի հանգուցակետերը, որոնք օգնում են ճանաչելու այդ ցանցը և տիրապետելու դրան» (**ԵԼԺ**, հ. 29, էջ 102): Ինչպես իրավամբ շեշտում է Կիրակոսյանը, գեղարվեստական երևույթների ուսումնասիրման մեթոդիկայում կատեգորիաների վճռական նշանակությունը հաստատող մարքսիստական գեղագիտության այս դրույթը հակադրվում է ժամանակակից բուրժուական գեղագիտությանը, որը հրաժարվում է գեղագիտական կատեգորիաներից, ժխտում դրանց ճանաչողական էությունը, առաջին պլան է մղում ներըմբռնողական (ինտուիտիվ) մոտեցումը, ձևական-կառուցվածքային վերլուծությունը, որն իբրև ուսումնասիրողի համար ուղիներ է բացում դեպի գեղարվեստական տեքստի, ստեղծարար գործունեության խորագույն խորքերը: «Այդպիսով,— եզրակացնում է Լ. Կիրակոսյանը,— անձի կոնցեպցիայի կատեգորիան դառնում է ոչ միայն գաղափարախոսական, աշխարհայացքային, գեղագիտական սուր պայքարի, այլև նեղ մեթոդաբանական բնագավառի պայքարի առարկա»:

Արևմտյան գեղագիտության իդեալիստական հոսանքներին Կիրակոսյանը հակադրում է փիլիսոփայական և գեղագիտական կատեգորիաների մասին մարքս-լենինյան ուսմունքը, կատեգորիաներ, որոնք «ինչպես արվեստի ու գրականության, նույնպես և գրականագիտության ու արվեստաբանության առջև բացում են մարդու և իրականության, պատմության ու արդիականության իմացության լայն հնարավորություններ»:

Արծարծված խնդիրը հեղինակը քննարկում է տարբեր կողմերով, որը և բնորոշում է մենագրության կառուցվածքը, դրա ներքին պրոբլեմատիկան: Գիրքը բաղկացած է երկու մասից, որոնցից յուրաքանչյուրը բաժանված է առանձին գլուխների: Առաջին բաժնում (**Անձի կոնցեպցիան. ստեղծագործական մեթոդ, արվեստ, իրականություն**) ուշադրավ են անձի կոնցեպցիայի՝ հեղինակի առաջադրած չորս կատեգորիաները— ընդհանուր-գեղագիտական, ընդհանուր գրական, գերակշռող (դոմինանտ) և կոնկրետ-գեղարվեստական:

Կիրակոսյանը հանգամանորեն բնութագրում է այս կատեգորիաները՝ պայմանավորված գեղարվեստական նյութի ուսումնասիրման և ընդհանրացման նպատակներով: Հետազոտողի ուշադրության կենտրոնում է անձի կոնկրետ-գեղարվեստական կոնցեպցիան: «Եթե ընդհանուր գեղագիտական կոնցեպցիան,— նշում է հեղինակը,— սոցիալիստական անձնավորության իդեալն է, ապա կոնկրետ-գեղարվեստականը հերոսի նորարարական սինթեզն է՝ որոշակի գեղարվեստական կառուցվածքում, ստեղծագործողի անհատական ինքնադրսևորման փաստը» (էջ 33): Սահմանելով անձի արդի գեղարվեստական կոնցեպցիաների բնորոշ հատկանիշները՝ Լ. Կիրակոսյանը իրավամբ շեշտում է, որ սովետական գրականության մեջ անում են կոնֆլիկտի սոցիալ-բարոյական նշանակությունն ու դերը, կոնֆլիկտ, որը կազմում է «անձի կոնցեպցիայի միջուկը»:

Գրականագետի կարծիքով, անձի կոնցեպցիայի գոյավորման խնդրում կարևոր դեր են խաղում ավանդույթները: Մի շարք համոզիչ օրինակների միջոցով նա ցույց է տալիս սոցիալիստական ռեալիզմի և դասական գրականության փոխազդեցությունները սովետահայ խոշորագույն գրողների ստեղծագործություններում:

Գրքում մեծ տեղ է հատկացված անձի կոնցեպցիայի հաստատման վրա ներգործող հրատապ պրոբլեմներից մեկին՝ ՍՍՀՄ ժողովուրդների փոխազդեցության և փոխհարըստացման պրոցեսի խորացմանը: Այս առնչությամբ հեղինակն անդրադառնում է ժամանակակից գրականության հերոսի մեջ ազգայինի ու համամարդկայինի դիալեկտիկային:

Մենագրության մի քանի գլուխները Լ. Կիրակոսյանը նվիրել է անձի հերոսական կոնցեպցիայի գաղափարագեղագիտական էությանը՝ պատմական և արդիականության առումով. հայկական արձակի՝ դասական և սովետական լավագույն ստեղծագործությունները արտացոլում են հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի հերոսականությունը, սխրանքները հեղափոխության, սովետական իշխանության հաստատման տարիներին և Հայրենական մեծ պատերազմի օրերին: «Հերոսականությունը,— շեշտում է հեղինակը,— մարմնավորում է մարդկային կյանքի ու բարոյականության ամենավեհ սկզբունքները: Դրան բնորոշ են սոցիալական մաշտաբայնությունը, գաղափարական նպատակասլացությունը, ներքին հարստությունը» (էջ 105):

Գրքի երկրորդ բաժնում՝ **Անձի կոնցեպցիան արձակի գեղարվեստական կառուցվածքում**, խորապես ու հանգամանալի վերլուծվում է ժամանակակից հայ գրական պրոցեսը: Լ. Կիրակոսյանը մեծ ուշադրություն է նվիրել անձի կոնցեպցիայի քննությանը աշխատանքային թեմային նվիրված ստեղծագործություններում, բացահայտելով մեր ժամանակի հերոսի՝ աշխատավոր մարդու բարոյական իդեալների էությունը (Ս. Խանզադյանի, Մ. Գալշոյանի, Ժ. Ավետիսյանի, Գ. Ջանիկյանի և այլոց ստեղծագործություններում): Հետաքրքրական են գրքի՝ 60—70-ական թվականների հայկական արձակի ժանրային-ոճական որոնումներին նվիրված էջերը, որոնցում հեղինակն անդրադառնում է Հ. Մաթևոսյանի, Վ. Պետրոսյանի, Զ. Խալափյանի, Գ. Արշակյանի, Պ. Զեյթունցյանի, Ս. Ադալյանի, Հ. Մելքոնյանի, Ա. Այվազյանի, Զ. Բալայանի, Ժ. Հարությունյանի և այլոց ստեղծագործություններին: Հերոսի պրոբլեմը համարելով որպես գրականության հիմնական ու ամենաբարդ պրոբլեմներից մեկը՝ հեղինակը վկայակոչում է Զ. Այթմատովի ճշմարտացի խոսքերը. «Յուրաքանչյուր կոնկրետ դեպքում ժամանակակից հերոսը պետք է լինի յուրօրինակ, անսպասելի անձնավորություն, ընթերցողի առաջ պետք է հառնի որպես զարմանալի հայտնություն, որպես ժամանակի հայտնագործություն»:

Ինչպես տեսական խոշոր խնդիրներ արծարծող ամեն մի աշխատության մեջ կարող են լինել վիճելի հարցեր, այս մենագրության մեջ ևս կան այդպիսիք: Կուզեի անդրադառնալ դրանցից մեկին: Խոսքը սոցիալիստական ռեալիզմի՝ որպես «բաց համակարգին» վերաբերող բանավեճի մասին է:

1975 թվականին խոշոր տեսաբան Դ. Մարկովը **Սոցիալիստական ռեալիզմի տեսության պրոբլեմները** մենագրության մեջ ներկայացրեց այսպիսի մի սահմանում. «Սոցիալիստական ռեալիզմը— գեղարվեստական ձևերի պատմականորեն բաց համակարգ է»: Սակայն մեկ տարի անց, սովետական գրողների VI համագումարում այդ սահմանումը վիճարկեց ակադեմիկոս Մ. Խրապչենկոն: Առարկելով սոցիալիստական ռեալիզմի «բաց» լինելուն, այսինքն՝ դրսից գեղագիտական ներգործության ընկալունակությանը, նա ասել է. «...գեղագիտական համակարգ հասկացությունն ինքը ենթադրում է ո՛չ միայն ստեղծագործական սկզբունքների, այլև գեղարվեստական արտահայտման «իր» եղանակների, միջոցների, անընդհատ փոփոխվող ու հարըստացող եղանակների ու միջոցների միագումար, որոնք միաժամանակ որոշակի միասնության մեջ են համակարգի այլ կարևորագույն սկզբունքների հետ: Ուզած գեղարվեստական միջոցներին հանիրավի դիմելը ունակ է հանգեցնելու այն բանին, որ գեղագիտական համակարգը կարող է վերածվել այլա-

* Левон Киракосян. Концепция личности и герой литературы. Ер., изд. «Советакан грох», 1982.

սեռ, իրար հետ չկապված երևույթների կոնգլոմերատի: Այդպիսով իսկ սոցիալիստական ռեալիզմը կկորցնի իր ներգործուն ուժը, նպատակաուղղվածությունը» (**ՍՍՀՄ գրողների VI համագումարի սղագրական հաշվետվությունից**, Մ., 1978, էջ 160): Այս սկզբունքային դրույթն իր ելույթում պաշտպանեց քննադատ Պ. Պալիևսկին՝ ասելով. «Ռեալիզմը, իբրև գեղարվեստական հոսանք, միշտ հաղորդակցման համար բաց է եղել, սակայն դրանում մշտապես առկա են եղել որոշակիությունը՝ միավորող, առինքնող, համակարգող որոշակիությունը, իր ուղղությունն ու սկզբունքները, որոնցով և ռեալիզմը ձեռք է բերել իր նշանակությունը գեղարվեստի աշխարհում: Հրաժարվել դրանից անհնար է»:

«Բաց համակարգի» վճռական քննադատությունից հետո Դ. Մարկովը իր մենագրության երկրորդ հրատարակության մեջ (1978 թ.) սահմանեց հետևյալ դրույթը. «Սոցիալիստական ռեալիզմը կյանքի ճշմարտացի արտացոլման պատմականորեն բաց համակարգ է»: Կիրակոսյանը համամիտ է Դ. Մարկովի այս ձևակերպմանը, գրելով. «Սոցիալիստական ռեալիզմը որպես «կյանքի ճշմարտացի արտացոլման բաց համակարգ» բնութագրելը բավականին ճշգրիտ է արտացոլում գեղարվեստական նոր մեթոդի արդի հասունները և գեղարվեստական պրակտիկայի վիճակը»:

Սակայն սոցիալիստական ռեալիզմի մարկովյան և այլոց կողմից պաշտպանվող այս բնորոշումը ևս չի արտահայտում այդ մեթոդի յուրահատկությունը: Այդ մասին հանգամանորեն նշել է լենինգրադցի քննադատ Յու. Անդրեևը: Իր **Կենդանի, զարգացող մեթոդ (սոցիալիստական ռեալիզմի ուսումնասիրման մեթոդաբանության մասին)** հոդվածում նա իրավամբ հարցնում է. «Մի՞թե ողջ ռեալիզմի յուրահատկությունն արվեստի ստեղծագործական մեթոդը չէ, այն, որ դրա նպատակն է (իրոք դրանով էլ այն զորեղ է) առավել խոր ու լայն, այսինքն՝ ճշմարտացի արտացոլումը»: Եվ իր միտքը հաստատելու համար Յու. Անդրեևը վկայակոչում է ակադեմիկոս Դ. Լիխաչովի՝ **Ռուս հին գրականության պոետիկան (1971)** աշխատության հետևյալ խոսքերը. «Ռեալիզմը... մշտապես նոր է: Այն նոր է, որովհետև գտնվում է իրականությանը մոտենալու, այդ իրականությունն արտացոլելու մշտական որոնումների վիճակում: Քանի որ իրականությունը շարժվում է, փոփոխվում, փոփոխվում է ռեալիզմը: Փոխվում են նրա ձևերը, տեսակները: Ռեալիզմը հար շարժման մեջ է» «Русская литература», 1982, № 1, էջ 125):

Սոցիալիստական ռեալիզմի համակարգի կարևորագույն առանձնահատկություններից մեկը անձի՝ բոլորովին նոր կոնցեպցիան է, և այն համոզիչ, փաստական ծավալուն նյութի հիման վրա բացահայտել է Լևոն Կիրակոսյանն իր մենագրության մեջ, որը հարստացնում է սոցիալիստական ռեալիզմի տեսությունը: Այս է նրա աշխատության հիմնական արժանիքը:

**Ս. Կ. ԴԱՐՈՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների**
**դոկտոր, պրոֆեսոր**



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 19.09.83 թ.: Ստորագրված է տպագրության 18.10.83 թ.: ՎՖ՝ 06967: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15432: Պատվեր՝ 2246:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.